ԲԱՒԱԿԱՆԱԲՈՒԽ, ա. Առատաբուղխ, լիաբուղխ:
ԲԱՒԱԿԱՆԱԶՕՐ, ա. Ամենազօր, ամենակարող:
ԲԱՒԱԿԱՆԱՆԱԼ, չբ. 1. Հերիքանալ, բաւել (բաւական՝ հերիք լինել): 2. Գոհանալ (բաւական համարել): 3. Կարել, ատակել, ձեռնհաս լինել, զօրել:
ԲԱՒԱԿԱՆԱՊԷՍ, տե՛ս ԲԱՒԱԿԱՆ (8):
ԲԱՒԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Զափաւորութիւն, չատութիւն, առատութիւն: 2. Ձեռնհասութիւն, կարողութիւն:
ԲԱՒԱՆԴԱԿ, տե՛ս ԲՈՎԱՆԴԱԿ:
ԲԱՒԱՆԴԱԿԵԼ, տե՛ս ԲՈՎԱՆԴԱԿԵԼ:
ԲԱՒԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ, տե՛ս ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ:
ԲԱՒԵԼ, չբ. 1. Բաւականանալ: 2. Կարել, կարողանալ, զօրել, ձեռնհաս լինել: 3. Տոկալ, սպասել, համբերել, ժուժել, կալ մնալ: 4. Յերկարել, տեւել, հասանել մինչեւ:
ԲԱՒԻՂ, գ. Լաբիւրինթոս, լամբիւրինթոս:
ԲԲԻՒՆ կամ ԲԸԲԻՒՆ, գ. Գոչիւն (յաղթական աղաղակ):
ԲԲՋԵԼ (իմ), չբ. Յառել (աչքերը յառած նայել):
ԲԴԵԴ, գ. Ծրար:
ԲԴԵԱՇԽ կամ ԲԴԵՇԽ, գ. 1. Կուսակալ, կողմնապետ, կողմնակալ: 2. Հիւպատոս: – ՓՈԽԱՆԱԿ ԲԴԵՇԽԻ. Անթիհիւպատոս, անթիպատոս:
ԲԴԵՇԽՈՒԹԻՒՆ, գ. Կուսակալութիւն, կողմնակալութիւն, հիւպատոսութիւն, հիւպատութիւն:
ԲԵԶԱԿ, ԲԵԶԵԿ, գ. 1. Փայլատակումն: 2. Արեգակն:
ԲԵԶԵԿԵԱՆ, ա. Արեգակնափայլ, արեգակնային:
ԲԵԼԻԱՐ, գ. Սատանայ:
ԲԵԿ, ա. 1. Բեկեալ, խորտակեալ: 2. Խեղանդամ: 3. փխբ. Զղջացեալ, լքեալ, վհատեալ, սրտակոտոր, սրտակտուր: 4. փխբ. Խոնարհ, հեզ:
ԲԵԿԱՆԵԼ, նբ. 1. Կոտորել, կտրել, բրդել: 2. Խորտակել, ջարդել, փշրել, մանրել: 3. Պատառել, գիչատել, յօշատել: 4. Հարկանել, հարուածել, մաչել: 5. Վատթարել, տկարացուցանել: 6. Պակուցանել, զարհուրեցուցանել, ահաբեկ առնել, ահաբեկել:
ԲԵԿԲԵԿԵԼ, նբ. 1. Ծեքել, աղաւաղել, աղճատել: 2. Տկարացուցանել:
ԲԵԿՈՐ, գ. Կոտոր, հատոր:
ԲԵԿՈՒԹԻՒՆ, տե՛ս ԲԵԿՈՒՄՆ:
ԲԵԿՈՒՄՆ, գ. 1. Կոտորումն, խորտակումն, ջախջախումն, փշրումն, քակտումն: 2. Կոտրած, ջարդոց: 3. Հարուած, կործանումն, կորուստ: 4. Լքումըն, կսկիծ: 5. Յաւ, զղջումն:
ԲԵԿՏԵԼ, նբ. Կոտորոտել, քշտել, ջարդել, փշրել:
ԲԵԿՏՈՒ, ա. Դիւրաբեկ:
ԲԵԿՏՈՒՄՆ, գ. նման. Թուլամորթութիւն, մեղկութիւն:
ԲԵՀԵԶ կամ ԲԵՀԷԶ, գ. Կտաւ, կերպաս:
ԲԵՀԵԶԱԶԱՆԳՈՒԱԾ, տե՛ս ԲԵՀԵԶԵԱՑ:
ԲԵՀԵԶԱՏԻՊ, տե՛ս ԲԵՀԵԶԵԱՑ:
ԲԵՀԵԶԵԱՑ, ա. Բեհեզեղէն, բեհեզազանգուած, բեհեզատիպ, կտաւի:
ԲԵՀԵԶԵՂԷՆ, տե՛ս ԲԵՀԵԶԵԱՑ:
ԲԵՂՄՆ, գ. (կենսբ.) Սերմն:
ԲԵՂՄՆԱԲԵՐ, ա. Պտղաբեր, առատաբեր:
ԲԵՂՄՆԱՒՈՐ, տե՛ս ԲԵՂՆԱՒՈՐ:
ԲԵՂՄՆԱՒՈՐԵԼ, տե՛ս ԲԵՂՆԱՒՈՐԵԼ:
ԲԵՂՆԱՒՈՐ, ա. 1. Բերրի, բարեբեր, բազմապտուղ: 2. Բազմածին, ծննդական, մարդասեր:
ԲԵՂՆԱՒՈՐԵԼ, նբ. Բեղմնաւորել, բուսուցանել, պտղաբերել:
ԲԵՂՆԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. Արգասաւորութիւն, քաջապտղութիւն, քաջածնութիւն:

ԲԵՂՈՒՆ, գ. 1. (կենսբ.) Սերմն: 2. Բեր(ք), պտուղ, արգասիք, արդիւնք:
ԲԵՄ, գ. 1. Ատեան (բարձր տեղ ատեանում, դատաւորական աթոռ): 2. (եկեղց.) Ամբոն, լայնաբար՝ խորան, սեղան: 3. Գահոյք, բազմոց, նստարան:
ԲԵՄԱԿԱՆ, ա. գ. Եկեղեցական, պաշտօնեայ, սարկաւագ, քահանայ:
ԲԵՄԱՍԱՑՈՒԹԻՒՆ, գ. Ատենախօսութիւն, քարոզ:
ԲԵՄԲ, տե՛ս ԲԵՄ:
ԲԵՄԲԱԿԱՆ, տե՛ս ԲԵՄԱԿԱՆ:
ԲԵՌՆ, գ. 1. Ծանրութիւն (փոխադրելի): 2. Վաճառ, աղխամաղխ: 3. փխբ. Ծանրութիւն, հոգ, վիշտ: 4. փխբ. Պատուիրան, օրէնք, պարտիք:
ԲԵՌՆԱԲԱՐՁ, ա. Բեռնակիր:
ԲԵՌՆԱԿԱՆ, ա. Ծանր, դժուարալուր (խօսք):
ԲԵՌՆԱԿԱՐ, ա. Համբերատար (բեռ կրելու կարող):
ԲԵՌՆԱԿԻՐ, ա. գ. Բեռնաբարձ, կահավար, կարասէկիր:
ԲԵՌՆԱՌՈՒ, ա. Բեռնակար (բեռ կրելու ընդունակ):
ԲԵՌՆԱՒՈՐ, ա. Բեռնաւորեալ, ծանրաբեռնի:
ԲԵՌՆԱՒՈՐԵԼ, նբ. Ծանրաբեռնել:
ԲԵՐ[1], գ. 1. Բերումն: 2. Արդիւնք, պտուղ, բեղուն, արգասիք: 3. Արգասաւորութիւն, պտղաբերութիւն: 4. Ծնունդ:
ԲԵՐ[2], եղբ. Աղէ՛, օ՛ն, հա՛պա:
- ԲԵ՛Ր ԱՍԵԼ կամ ԲԵՐՁԻ՛Ր ԱՍԵԼ. Օրինակ իմն, զոր օրինակ:
ԲԵՐԱՆ, գ. 1. Խօսարան, երախ: 2. նման. Ծակ, ծերպ, անցք, դուռն, մուտք: 3. Սայր (սրի հատող սուր կողմը): 4. Անձն, դէմք, մարդ, ինքն: 5. Ճիւղ (լճի ճիւղաւորում): 6. Հրաման, պատգամ, վկայութիւն: 7. Սկիզբն:
- ԲԵՐԱՆ Ի ԲԵՐԱՆ. 1. Դէմ յանդիման: 2. (յունական ոճով) Ծայր ի ծայր:
- Ի ԲԵՐԱՆՈՅ. Անգիր:
- Ի ԲԵՐԱՆՍ ԼԻՆԵԼ. Ափիբերան լինել, լռել, պապանձել:
- Ի ՄԻ՝ ԸՆԴ ՄԻ ԲԵՐԱՆ. Միաձայն, միաբերան:
ԲԵՐԱՆԱԲԱՑԵԱԼ, տե՛ս ԲԱՑԱԲԵՐԱՆԵԱԼ:
ԲԵՐԱՆԱԼԻՐ, տե՛ս ԼԻԱԲԵՐԱՆ:
ԲԵՐԱՆԱԼՈՒԾՈՒԹԻՒՆ, գ. Լուծումն (պասը կամ ծոմը խախտելը):
ԲԵՐԱՆԱԿԱՊ, գ. 1. Դանդանաւանդ, ցուկակապ, փարապան: 2. ա. մ. Ափիբերան (բերանը կապած, պապանձուած):
ԲԵՐԱՆԱՑԱՒ, տե՛ս ԲԵՐԱՆԱՑԱՒՈՒԹԻՒՆ:
ԲԵՐԱՆԱՑԱՒՈՒԹԻՒՆ, գ. Բերանացաւ:
ԲԵՐԱՆԱՑԻ, մ. Բերանով:
ԲԵՐԱՆՍԵԼ, տե՛ս ԱՓԻԲԵՐԱՆԵԼ:
ԲԵՐԴ, գ. Դղեակ, ամրոց, ակառն, ամուր:
ԲԵՐԴԱԿԱԼ, գ. Բերդապահ:
- ԲԵՐԴԱԿԱԼՔ, գ. Բերդակալեանք (բերդապահ զօրք):
- ԲԵՐԴԱԿԱԼԵԱՆՔ, տե՛ս ԲԵՐԴԱԿԱԼՔ:
ԲԵՐԴԱՄԱՐՏՈՒԹԻՒՆ, գ. Մարտկոց:
ԲԵՐԴԱՅԻՆՔ, գ. յոգն. Ամրականք, բերդեցիք, ակառանք (բերդի մէջ եղողները):
ԲԵՐԴԱՊԱՀ, ա. գ. Բերդակալ, ամրապահ (բերդը պահպանող՝ պաշտպանող):
ԲԵՐԴԱՏԵՂԻ, գ. Ամրակողմն:
ԲԵՐԴԱՔԱՂԱՔ, գ. Քաղաքաբերդ, քաղաքամուր:
ԲԵՐԴԵԱՆ, գ. յոգն. Բերդք, ամրոցք:
ԲԵՐԴԵՑԻՔ, տե՛ս ԲԵՐԴԱՅԻՆՔ:
ԲԵՐԴՁԵՂ, ա. Հերարձակ:
ԲԵՐԵԼ, նբ. 1. Ածել, մատուցանել, մերձեցուցանել: 2. Ունել, կրել, բառնալ, ստանձնել: 3. Երևեցուցանել, յայտ առնել, հանդիսացուցանել: 4. Պտղաբերել, բուսուցանել, արտադրել, տալ: 5. Պատճառել, առթել, առնել: 6. Համբերել,

հանդուրժել, տանել, տոկալ: 7. Վարել, ձգել, ստիպել:
- ԲԵՐԵԼ Ի ՀԱՄԱՐ կամ ԶՀԱՄԱՐ. Համարել, հաշուել:
- Ի ՄԻՏՍ ԲԵՐԵԼ. Յիշել:
ԲԵՐԵԼԻ, ա. Բերող:
ԲԵՐ Ի ՄԷՋ, ա. գ. Բանսարկու:
ԲԵՐԻԻՂ, տե՛ս ԲԻԻՐԵՂ:
ԲԵՐԻԻՐ կամ ԲԵՐՐԻԻՐ, տե՛ս ԲԵՐՐԻ:
ԲԵՐԿՐԱԲԵՐ, ա. Ուրախաբեր (բերկրութիւն բերող):
ԲԵՐԿՐԱԲԵՐՁ, ա. Վսամ (շատ բերկրալի):
ԲԵՐԿՐԱԼԻՐ, տե՛ս ԲԵՐԿՐԱԼԻՑ:
ԲԵՐԿՐԱԼԻՑ, ա. Բերկրալի, բերկրապատար, խնդալից, ուրախալի, ուրախալից:
ԲԵՐԿՐԱԿԱՆ, ա. 1. Ուրախական, բերկրելի: 2. Ուրախարար:
ԲԵՐԿՐԱՄԻՏ, տե՛ս ԽՆԴԱՄԻՏ:
ԲԵՐԿՐԱՆՔ, տե՛ս ԲԵՐԿՐՈՒԹԻՒՆ:
ԲԵՐԿՐԱՍԻՐԵԼ, չբ. Զուարճանալ, ուրախանալ (սիրով բերկրել):
ԲԵՐԿՐԱՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԲԵՐԿՐԵԼ[1]:
ԲԵՐԿՐԵԼ[1], նբ. Բերկրացուցանել, բերկրեցուցանել, ուրախ առնել, ուրախացուցանել, զուարճացուցանել, զուարթացուցանել:
ԲԵՐԿՐԵԼ[2] (իմ), չբ. Ուրախ լինել, ուրախանալ, խնդալ, ցնծալ, հրճուել, խայտալ, զուարթանալ:
ԲԵՐԿՐԵԼԻ, տե՛ս ԲԵՐԿՐԱԿԱՆ (1):
ԲԵՐԿՐԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԲԵՐԿՐԵԼ[1]:
ԲԵՐԿՐԵՑՈՒՑԻՉ, ա. Բերկրիչ, զուարթարար, ուրախարար:
ԲԵՐԿՐԻՉ, տե՛ս ԲԵՐԿՐԵՑՈՒՑԻՉ:
ԲԵՐԿՐՈՒԹԻՒՆ, գ. Բերկրանք, բերկրումն, բարեկրութիւն, հրճուանք, ցնծութիւն, ուրախութիւն, խնդութիւն, զուարթութիւն:
ԲԵՐԿՐՈՒՄՆ, տե՛ս ԲԵՐԿՐՈՒԹԻՒՆ:
ԲԵՐՁԱԿԱՏԱՐ, տե՛ս ԲԱՐՁՐԱԿԱՏԱՐ:
ԲԵՐՁՐՈՒԹԻՒՆ, տե՛ս ԲԱՐՁՐՈՒԹԻՒՆ:
ԲԵՐՈՒՄՆ, գ. 1. Ածումն (բերելը, բերուելը): 2. Տարումն, ընթացք, դեգերանք: 3. Անցք, դէպք: 4. Յօժարութիւն, ձգտումն:
ԲԵՐՐԻ, ա. Բարեբեր, արգասաւոր, արգաւանդ, առատաբեր, պտղատու, բազմապտուղ:
ԲԵԻԵԿՆ, տե՛ս ԲԵԻԵԿՆԻ:
ԲԵԻԵԿՆԻ, գ. (բսբ.) Բևեկն:
ԲԵԻԵՌ[1], գ. Հեղոյս, սևեռ:
ԲԵԻԵՌ[2], գ. 1. Բոլոր (երկնքի առանցք): 2. Կեդրովն (շրջանի):
ԲԵԻԵՌԱԿԱՊ, ա. մ. Բևեռապինդ, երկաթագամ, երկաթակապ:
ԲԵԻԵՌԱՊԻՆԴ, տե՛ս ԲԵԻԵՌԱԿԱՊ:
ԲԵԻԵՌԱՊՆԴԵԼ, տե՛ս ԲԵԻԵՌԵԼ (1):
ԲԵԻԵՌԵԼ, նբ. 1. Սևեռել, հեղուսել: 2. փխբ. Հաստատել, յարել, կցել (անշարժ պահել մի տեղում՝ մի կէտի վրայ):
ԲԵԻԵՌՈՒՄՆ, գ. Սևեռութիւն (բևեռելը):
ԲԵԻՐ, տե՛ս ԲԻԻՐ:
ԲԶԱՆՔ, տե՛ս ԱՅԾ:
ԲԶԶԱԼ, չբ. Բզզել, տզզալ, ճենճերել:
ԲԶԶԵԼ, տե՛ս ԲԶԶԱԼ:
ԲԶԷԶ, գ. (կենդբ.) Բզիզ, ընդեռն:
ԲԶԻԶ, տե՛ս ԲԶԷԶ:
ԲԷԵՂԶԵԲՈՒՂ, գ. Սատանայ (դևերի իշխան):
ԲԷԺ, գ. Վարագոյր:
ԲԹԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Բթեցուցանել, բթել (բութ դարձնել), փխբ. անպիտանացուցանել, աւերել, խափանել:
ԲԹԵԼ, տե՛ս ԲԹԱՑՈՒՑԱՆԵԼ:
ԲԹԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԲԹԱՑՈՒՑԱՆԵԼ:
ԲԺԱԲԵՐ, ա. Գիջակն:
ԲԺԺԱՆՔ, գ. Բժիժ, յուռութ(ք), հմայեակ, պահպանակ:
ԲԺԻԺ, տե՛ս ԲԺԺԱՆՔ:
ԲԺՇԿԱԿԱՆ, ա. 1. Բժշկային: 2. Բուժիչ, առողջացուցիչ:
- ԲԺՇԿԱԿԱՆՆ, տե՛ս ԲԺՇԿԱԿԱՆՈՒԹԻՒՆ:

ԲԺՇԿԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Բժշկականն, բժշկութիւն:
ԲԺՇԿԱՅԻՆ, տե՛ս ԲԺՇԿԱԿԱՆ (1):
ԲԺՇԿԱՆՈՑ, տե՛ս ԲԺՇԿԱՐԱՆ:
ԲԺՇԿԱՊԵՏ, գ. ա. Նախաբժիշկ:
ԲԺՇԿԱՐԱՆ, գ. Բժշկանոց:
ԲԺՇԿԵԼ, նբ. 1. Բուժել, ապաքինել, ապաքել, առողջացուցանել: 2. նման. Ամոքել, սփոփել, փարատել: 3. (յունաբանութեամբ) Պաշտել:
ԲԺՇԿԻՉ, ա. Բուժիչ, առողջացուցիչ:
ԲԺՇԿՈՒԹԻՒՆ, գ. 1. Բուժկութիւն, բուժումն: 2. Բժկականութիւն:
ԲԻԲ, գ. (կզմխս.) Պտուղ աչաց:
ԲԻԲՂՈՍ, գ. 1. (բսբ.) Պրտու: 2. լայնաբար՝ Գիրք, մատեան, մագաղաթ, թուղթ:
ԲԻԺ, գ. 1. Ճիպռ, մթար: 2. լայնաբար՝ Աղտ (արծաթի խարամ):
ԲԻԾ, գ. 1. Նիշ, կէտ, հետք, նշան, սպի, աղտ, կեղտ: 2. փխբ. Ախտ, արատ, թերութիւն, պակասութիւն: 3. (բժշկ.) Կայծակն (կայծուռուցք): 4. Խծբիծ, խնդիր: 5. ա. Բծաւոր, պիղծ, արատաւոր:
- ԲԻԾ ԴՆԵԼ. Բիծս կարկատել, ի բիծ տանել, բծել, ըստգտանել, մեղադրել:
- ԲԻԾՍ ԿԱՐԿԱՏԵԼ, տե՛ս ԲԻԾ ԴՆԵԼ:
- Ի ԲԻԾ ՏԱՆԵԼ, տե՛ս ԲԻԾ ԴՆԵԼ:
ԲԻՏ, գ. Ճանկ, կարթ:
ԲԻՏՈՆ, տե՛ս ՍՂՈՑԱՁՈՒԿՆ:
ԲԻՐ, գ. Մահակ (հաստ գաւազան):
ԲԻՐՏ, ա. 1. Զոր, կարծր, ամուր, պինդ (փայտ): 2. Տմարդի, խստապարանոց, խիստ, սէգ:
ԲԻՒՐ, 1. թ. Տասն հազար: 2. ա. Անչափ, անթիւ, անհամար: 3. մ. Բիւրապատիկ, բազմապատիկ, յանչափս:
- ԲԻՒՐԻՒ, ԲԻՒՐՍ, տե՛ս ԲԻՒՐ (3):
ԲԻՒՐԱԲԵՂՈՒՆ, ա. Բազմառատ:
ԲԻՒՐԱԳԼԽԻ, ա. Բազմագլուխ:
ԲԻՒՐԱԳՈՅՆ, ա. մ. Բազմագոյն, բազմապատիկ:
ԲԻՒՐԱԶԳԻ, ա. 1. Բազմակերպ, ազգի ազգի, բազմապատիկ: 2. մ. Բազմապատկապէս (բազմապատիկ կերպով):
ԲԻՒՐԱԿ, տե՛ս ԲԻՒՐԵԱԿ:
ԲԻՒՐԱԿԱՃԱՌ, ա. Բազմաժողով, բազմամբոխ:
ԲԻՒՐԱԿԵՐՊ, ա. Բիւրակերպեան, բազմակերպ, բազմադիմի:
ԲԻՒՐԱԿԵՐՊԵԱՆ, տե՛ս ԲԻՒՐԱԿԵՐՊ:
ԲԻՒՐԱՀՈՍ, ա. Առատահոս (շատ հոսեցնող):
ԲԻՒՐԱՄԱՍՆԵԱՅ, տե՛ս ԲԱԶՄԱՄԱՍՆԵԱՅ:
ԲԻՒՐԱՄԵԱՆ, ա. Բազմամեայ (շատ հին):
ԲԻՒՐԱՊԱՏԻԿ, ա. մ. Բազմապատիկ, բազմաթիւ, բազմադիմի, յոյժ յոյժ:
ԲԻՒՐԱՊԱՏԿԵԱՆ, տե՛ս ԲԻՒՐԱՊԱՏԻԿ:
ԲԻՒՐԱՍՏԵՂՆ, տե՛ս ԲԱԶՄԱՍՏԵՂՆ:
ԲԻՒՐԱՏԵՍԱԿ, ա. Բազմատեսակ:
ԲԻՒՐԱՒՈՐ, ա. Անթիւ, անհամար, բիւրին, բիւրեակ (բիւրից կամ բիւրերից բաղկացած):
ԲԻՒՐԵԱԿ, գ. 1. Բիւր (բիւրը իբրև մի ամբողջութիւն): 2. ա. Բիւրաւոր, անթիւ, անհամար:
ԲԻՒՐԵՂ, գ. (հնք.) Բերիւղ, վանակն, պաղպաղակ:
ԲԻՒՐԻՆ, տե՛ս ԲԻՒՐԱՒՈՐ:
ԲԻՒՐՈՍՏԵԱՆ, տե՛ս ԲԱԶՄԱՍՏԵՂՆ:
ԲԼԹԱԿ, գ. (կզմխս.) 1. Անկանաբոյթ (ականջաբլթակ): 2. Լերդաբոյթ:
ԲԼԻԹ, գ. Նկան, նկանակ, պան, պլակինդի, չօթ:
ԲԼՇԱԿ, տե՛ս ԽՈՒՓՆ:
ԲԼՇԱԿՆԵԼ (իմ), չբ. Բլշանալ, շլանալ:
ԲԼՇԱԿՆՈՒԹԻՒՆ, գ. Շլութիւն, շլացութիւն, շլացումն, պայղակումն, ճայրոտութիւն:
ԲԼՇԱՆԱԼ, տե՛ս ԲԼՇԱԿՆԵԼ:
ԲԼՇԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Բլշեցուցանել, շլացուցանել, ճայրոտել, ճայրոտեցուցանել:

ԲԼՇԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԲԼՇԱՑՈՒՑԱՆԵԼ:
ԲԼՈՒՐ, գ. Լեռնակ, թումբ, ոստ:
ԲԼՐԱԿ, գ. Բլրիկ, սարակ, դարակ, ոստ:
ԲԼՐԻԿ, տե՛ս ԲԼՐԱԿ:
ԲԽԵԼ, տե՛ս ԲՂԽԵԼ:
ԲԾԱՄԻՏ, ա. Չարամիտ, չարախորհուրդ:
ԲԾԱՒՈՐ, ա. Բծաւորական, արատաւոր:
ԲԾԱՒՈՐԱԿԱՆ, տե՛ս ԲԾԱՒՈՐ:
ԲԾԱՒՈՐԵԼ, նբ. Արատել, ապականել, աղտեղել, պղծել:
ԲԾԱՒՈՐՈՒԹԻՒՆ, տե՛ս ԲԾԿԱՆՈՒԹԻՒՆ:
ԲԾԵԼ, նբ. Բիծ դնել, ըստգտանել, մեղադրել:
ԲԾԻԾ, տե՛ս ՈՋԻԼ:
ԲԾԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Բծաւորութիւն (բծաւոր՝ արատաւոր լինելը):
ԲՂԽԵԼ, չբ. նբ. 1. Հոսել, յառաջգայել, արտահոսել, ծորել, յորդել, ցայտել, աղբիւրանալ: 2. Բուսանել, ընձիւղել, բողբոջել: 3. Հոտ հարկանել, բուրել: 4. Հոսեցուցանել, բղխեցուցանել, բուսուցանել, զեղուլ, կաթեցուցանել, աղբիւրացուցանել: 5. Յառաջ ածել, ի դուրս բերել:
ԲՂԽԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԲՂԽԵԼ (4):
ԲՂՋԱԽՈՀ, ա. 1. Ցանկասէր: 2. Չարախորհ, չարամիտ:
ԲՄԲԻՒՆ, տե՛ս ԲՈՄԲԻՒՆ:
ԲՆԱԲԱՆ, գ. Դիր (բուն խօսք):
ԲՆԱԲԱՆԱԿԱՆ, ա. գ. Բնախօս:
- ԲՆԱԲԱՆԱԿԱՆՆ, տե՛ս ԲՆԱԲԱՆՈՒԹԻՒՆ:
ԲՆԱԲԱՆԵԼ, տե՛ս ԲՆԱԽՕՍԵԼ:
ԲՆԱԲԱՆՈՒԹԻՒՆ, գ. Բնախօսութիւն:
ԲՆԱԲԱՐ, մ. ա. Ի բնէ, բնականաբար, բնաւորապէս, բնաւորական, բնական, բուն, հարազատ, ընդաբոյս, սովորական:
ԲՆԱԲԱՐՁ, տե՛ս ԲՆԱՋԻՆՋ:
- ԲՆԱԲԱՐՁ ԱՌՆԵԼ՝ ԼԻՆԵԼ, տե՛ս ԲՆԱՋԻՆՋ ԱՌՆԵԼ՝ ԼԻՆԵԼ:
ԲՆԱԲՆԱԿ, ա. Հայրենի, բնիկ, բուն, սեպհական:
ԲՆԱԲՈՒՆ, ա. Բնածին, ընդաբոյս:
ԲՆԱԳԱՒԱՌ, գ. Հայրենիք (բնիկ՝ հայրենի գաւառ):
ԲՆԱԴԻՐ, տե՛ս ԲԱՆԱԿ[1] (2):
ԲՆԱԽՕՍ, ա. գ. 1. Բարոյախօս, փիլիսոփայ: 2. Ճշմարտախօս:
ԲՆԱԽՕՍԵԼ, նբ. չբ. 1. Բարոյախօսել: 2. Ճշմարտախօսել, ճշգրտաբանել:
ԲՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ, գ. Բարեգիտութիւն, բնաբանութիւն, քննախօսութիւն:
ԲՆԱԾԻՆ, ա. Բարոյածին, բնական, բնակակիր, ընդաբոյս:
ԲՆԱԿ, ա. 1. Բուն, հարազատ, իսկական: 2. Տեւական, մնացական: 3. գ. Բնիկ (բուն բնակիչ): 4. Բնակարան, յարկ:
- ԲՆԱԿՔ, գ. յոգն. Գերեզման, շիրիմ:
ԲՆԱԿԱԿԻՐ, տե՛ս ԲՆԱԾԻՆ:
ԲՆԱԿԱԿԻՑ, ա. 1. Համաբնակ, համաբնակից, յարկակից, կենակից: 2. Բնակից, ազգակից, համաբուն, տնկակից, ընդաբոյս, նման:
ԲՆԱԿԱՆ, ա. 1. Բնաւորական, բնութենական, բնածին: 2. Բնիկ, բնաւոր, իւրական, սեպհական, հարազատ: 3. Բնախօս:
ԲՆԱԿԱՆԱԲԱՐ, մ. 1. Բնականապէս, բնաւորապէս, ի բնէ: 2. Ի դէպ, յարմարապէս: 3. Ընտանեբար:
ԲՆԱԿԱՆԱԼ, չբ. 1. Բնակել: 2. Ընտանենալ, բնաւորել:
ԲՆԱԿԱՆԱՊԷՍ, տե՛ս ԲՆԱԿԱՆԱԲԱՐ:
ԲՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Ազգականութիւն, ազգակցութիւն (բնական հարազատութիւն):
ԲՆԱԿԱՍՆՈՒՆԴ, ա. Սնուցող:
ԲՆԱԿԱՐԱՆ, գ. 1. Բնակետղ, բնակութիւն, օթարան: 2. Ընդունարան:
ԲՆԱԿԱՐԾԻՔ, գ. Կանխակալութիւն, կանխամուտ սովորութիւն:
ԲՆԱԿԱՒՈՐ, ա. 1. Մնացական (հաստատապէս բնակուած): 2. Բնիկ, բնական:

ԲՆԱԿԱՓՈԽՈՒԹԻՒՆ, գ. Տեղափոխութիւն, վտարանդութիւն, պանդխտութիւն, գաղթականութիւն:
ԲՆԱԿԵԼ, չբ. Բնականալ, բունել, որջանալ, տաղաւարել, դադարել, զետեղել, հանգչել, օթեւանել, կալ մնալ (ուրեք):
ԲՆԱԿԵՏՂ, տե՛ս ԲՆԱԿԱՐԱՆ:
ԲՆԱԿԵՑՈՒՑԻՉ, ա. Բնակեցուցող, հիմնադիր:
ԲՆԱԿԵՑՈՒՑՈՂ, տե՛ս ԲՆԱԿԵՑՈՒՑԻՉ:
ԲՆԱԿԷՏ, տե՛ս ԱՒԱՐՏԱԿԷՏ:
ԲՆԱԿԻՉ, ա. գ. 1. Բնակ: 2. տե՛ս ԲՆԱԿԵՑՈՒՑԻՉ:
ԲՆԱԿԻՑ, ա. 1. Ընդակից, ընդաբոյս, բնաւոր, համաբնակ, տնկակից: 2. (կրօն.) Բնութենակից, համաբնակից, էակից, համագոյակից:
ԲՆԱԿՈՒԹԻՒՆ, գ. Բնակետղ, բնակարան (բուն կայանը):
ԲՆԱԿՈՒՆԱԿ ԿԱՑԱՆՔ. Գերեզման, շիրիմ, բնակք:
ԲՆԱԿՑԱԲԱՐ, մ. 1. Բնականաբար, բնաւորապէս: 2. Ազգակցապէս (բնակակից լինելով): 3. Ի դէպ, յարմարապէս:
ԲՆԱԿՑԱՊԷՍ, տե՛ս ԲՆԱԿՑԱԲԱՐ:
ԲՆԱԿՑԵԼ (իմ), չբ. Բնաւորել, ընտանենալ (բնաւորապէս կցուել՝ միանալ):
ԲՆԱԿՑՈՒԹԻՒՆ, գ. 1. Բնութիւնակցութիւն, համագոյութիւն, միասնականութիւն: 2. Ազգակցութիւն (ըստ բնութեան), ընտանութիւն:
ԲՆԱՆԱԼ, տե՛ս ԲՆԱՒՈՐԵԼ (իմ):
ԲՆԱՇԽԱՐՀ, գ. Հայրենիք (հայրենի երկիր):
ԲՆԱՇԽԱՐՀԻԿ, ա. Հայրենի, հայրենական (բուն՝ հայրենի երկրին յատուկ՝ վերաբերող):
ԲՆԱՋԻՆՋ, ա. Բնաբարձ:
- ԲՆԱՋԻՆՋ ԱՌՆԵԼ. Բնաբարձ առնել, անմի առնել, լիզաջինջ առնել:
- ԲՆԱՋԻՆՋ ԼԻՆԵԼ. Բնաբարձ լինել:
ԲՆԱՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՇՈՒՐՋԲՆԱՑՈՒՑԱՆԵԼ:
ԲՆԱՒ, ա. 1. Բոլոր, ամէն, բովանդակ, ամենայն, համայն, հանուր, համօրէն: 2. մ. Բոլորովին, ամենեւին, ամենեւիմբ, բնաւիմբ, ամենայնիւ, իսպառ, գլխովին: 3. Ապաքէն, արդեօք, իսկ, մի՛թէ, իւիք, անգամ:
- ԲՆԱՒ ԻՍԿ, տե՛ս ԲՆԱՒ (2):
- ԲՆԱՒ ՈՉ, մ. Ոչ բնաւ, բնաւ իսկ ոչ, ոչ երբէք, ամենեւին ոչ, ոչ իսկ, ոչ իւիք:
- ՈՉ ԲՆԱՒ, ԲՆԱՒ ԻՍԿ ՈՉ, տե՛ս ԲՆԱՒ ՈՉ:
- ԸՆԴ ԲՆԱՒ, մ. 1. Ընդ ամենայն տեղիս: 2. Համանգամայն:
ԲՆԱՒԱՊԷՍ, տե՛ս ԲՆԱՒ (2):
ԲՆԱՒԻՄԲ, տե՛ս ԲՆԱՒ (2):
ԲՆԱՒԻՆ, տե՛ս ԲՆԱՒ:
ԲՆԱՒՈՐ, ա. Բնական, բնիկ, ընդաբոյս, սեպհական, տնկակից:
ԲՆԱՒՈՐԱԲԱՐ, տե՛ս ԲՆԱՒՈՐԱՊԷՍ:
ԲՆԱՒՈՐԱԿԱՆ, տե՛ս ԲՆԱԿԱՆ:
ԲՆԱՒՈՐԱԿԱՆԱՊԷՍ, տե՛ս ԲՆԱՒՈՐԱՊԷՍ:
ԲՆԱՒՈՐԱԿԻՑ, տե՛ս ԲՆԱԿԻՑ:
ԲՆԱՒՈՐԱՊԷՍ, մ. 1. Բնաւորաբար, բնականաբար, էապէս, իսկապէս: 2. Յարմարապէս, ի դէպ:
ԲՆԱՒՈՐԵԼ[1], նբ. Բնաւորեցուցանել, բուսուցանել, արմատացուցանել, պտղաբերել, արտադրել:
ԲՆԱՒՈՐԵԼ[2] (իմ), չբ. Բուսանել, ծնանել, գոյանալ, հնարել, հաստել, եղանել, ծագել, գտանել:
ԲՆԱՒՈՐԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԲՆԱՒՈՐԵԼ[1]:
ԲՆԴԵՌՆ գ. (կենդբ.) Բնդիռն, փնդեռն, կոյադնդիռ:
ԲՆԴԻՌՆ, տե՛ս ԲՆԴԵՌՆ:
ԲՆԻ, ա. Բնիկ, բուն, հարազատ, նոյն ինքն:
ԲՆԻԿ, ա. գ. 1. Բնի, բուն, բնաւոր, հարազատ, սեպհական, հայրենի, վաղեմի: 2. Նահապետ, ցեղապետ:

ԲՆԻՈՆ, տե՛ս ԼՈՒՄԱՑ:
ԲՆՈՒԹԵՆԱԿԻՑ, տե՛ս ԲՆԻՒԹԻՒՆԱԿԻՑ:
ԲՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Էութիւն, գոյացութիւն, խկութիւն: 2. Էակ, արարած, գոյակ: 3. Տարր: 4. Բարք, սովորութիւն: 5. Դիտաւորութիւն, նպատակ: 6. Ենթակայութիւն, ինքնութիւն, անձնաւորութիւն, անձն, դէմ: 7. Ամօթոյք:
- ԲՆՈՒԹԵԱՄԲ, մ. Ի բնութենէ, ըստ բնութեան, բնութիւնաբար, ի բնէ, ի ծնէ, էապէս, գոյացաբար, խկապէս:
ԲՆՈՒԹԻՒՆԱԲԱՐ, տե՛ս ԲՆՈՒԹԵԱՄԲ:
ԲՆՈՒԹԻՒՆԱԿԱՆ, տե՛ս ԲՆԱԿԱՆ (1):
ԲՆՈՒԹԻՒՆԱԿԻՑ, ա. (կրօն.) Բնութենակից, համաբնակից, համագոյ, համագոյակից, էակից:
ԲՆՈՒԹԻՒՆԱԿՑՈՒԹԻՒՆ, տե՛ս ՀԱՄԱԳՈՅՈՒԹԻՒՆ:
ԲՆՈՒՍՏ, Ի ԲՆՈՒՍՏ, մ. Ի բնէ, բնութեամբ, անդստին, ինքնին:
ԲՆՋԵԼ, տե՛ս ԲԱՌԱՋԵԼ:
ԲՈԲՈՂՈՆ, տե՛ս ԳՈՄԷՇ:
ԲՈՋ, գ. Պոռնիկ, վարձկան, վարձակ:
ԲՈՋԱԲԱՐ, մ. Պոռնկապէս:
ԲՈՋԱԲՈՅԾ, ա. Բոզահոմանի, բոզանոց, սեղեխ:
ԲՈՋԱՀՈՄԱՆԻ, տե՛ս ԲՈՋԱԲՈՅԾ:
ԲՈՋԱՆՈՑ, գ. 1. Պոռնկանոց, պոռնկատուն: 2. տե՛ս ԲՈՋԱԲՈՅԾ:
ԲՈՋՈՐԴԻ, գ. Պոռնկորդի:
ԲՈՋՈՒԹԻՒՆ, գ. Պոռնկութիւն:
ԲՈԼՈՐ, ա. 1. Ամբողջ, բովանդակ, համօրէն, հանուր, համակ, ամենայն: 2. Բոլորակ, բոլորչի, գնդաձև: 3. գ. Ամէն (ամբողջը, բոլորը, ամեն ինչը): 4. Շրջան (պտոյտը): 5. Բևեռ (երկնքի առանցքը): 6. Կոկոն:
- ԲՈԼՈՐ, ԲՈԼՈՐԻ, ԲՈԼՈՐՈՎ, ԲՈԼՈՐ ԲՈԼՈՐՈՎԻՆ, մ. Ամենայնիւ, բոլորապէս, բովանդակապէս, իսպառ:
ԲՈԼՈՐԱԲՈՒԽ, ա. Յորդաբուղխ, առատաբուղխ, բազմապտուղ:

ԲՈԼՈՐԱԳՈՅՆ, ա. Միագոյն (բոլորը մի գոյնի):
ԲՈԼՈՐԱԳՈՒՂ, ա. Բոլորաձև:
ԲՈԼՈՐԱԼՈՅՍ, տե՛ս ԲՈԼՈՐԱՓԱՅԼ:
ԲՈԼՈՐԱԾԻՐ, գ. Ծիր, շրջանակ:
ԲՈԼՈՐԱԿ, ա. 1. Բոլորաձև, բոլորչի, գնդաձև: 2. Բոլոր, ամբողջ, ողջ: 3. գ. Գունդ, շրջանակ: 4. Շրջան:
ԲՈԼՈՐԱԿԱԲԱՐ, մ. Շուրջանակի, շուրջանակաւ, բոլորակապէս:
ԲՈԼՈՐԱԿԱԾԻՐ, ա. Բոլորաձև, բոլորչի (բոլորակ՝ կլոր ծիր ունեցող):
ԲՈԼՈՐԱԿԱՄ, ա. մ. Միակամ, համակամ (բոլորը մի կամքով միացած):
ԲՈԼՈՐԱԿԱՆԱԳՈՅՆ, ա. Ընդհանրականագոյն:
ԲՈԼՈՐԱԿԱՊԷՍ, տե՛ս ԲՈԼՈՐԱԿԱԲԱՐ:
ԲՈԼՈՐԱԿԱՏԱՐ, ա. 1. Անթերի, ողջ, ամբողջ, բոլոր, բովանդակ: 2. մ. Բոլորովին, ամենայնիւ, ամբողջապէս:
ԲՈԼՈՐԱԿԱՏԵՍԱԿՈՒԹԻՒՆ, գ. Բոլորակութիւն (բոլորակաձև տեսք ունենալը):
ԲՈԼՈՐԱԿԵՐՊ, ա. Ամենատեսակ, համօրէն:
ԲՈԼՈՐԱԿԵՐՏ, ա. 1. Բոլորաշէն (բոլորակաձև կերտուած՝ շինուած): 2. Համօրէն:
ԲՈԼՈՐԱԿԵՐՏԵԼ, նբ. Ստեղծանել, յօրինել (բոլորովին ստեղծել՝ յարմարել):
ԲՈԼՈՐԱԿԻ, մ. Շուրջանակի:
ԲՈԼՈՐԱԿՈՒԹԻՒՆ, գ. 1. Շրջարկութիւն: 2. Բոլորութիւն, բոլորումն, շրջան:
ԲՈԼՈՐԱԿՑՈՒԹԻՒՆ, գ. Բոլորումն, լրումն, բովանդակութիւն:
ԲՈԼՈՐԱՀԵՇՏ, տե՛ս ԱՄԵՆԱՀԵՇՏ:
ԲՈԼՈՐԱՀՈՎԻՏ, ա. Համատարած (լայնատարած հովտի նման):
ԲՈԼՈՐԱՋԵԻ, ա. Բոլորչի, բոլորատես, բոլորատեսակ:
ԲՈԼՈՐԱՋՈՅԼ, ա. Միաձոյլ, բոլորաձև:
ԲՈԼՈՐԱՄԱՍՆ, ա. Կատարեալ, բոլորակատար (ամբողջ և անթերի մասերով):
ԲՈԼՈՐԱՄԻՏ, ա. Ողջամիտ, կատարեալ:

ԲՈԼՈՐԱՅԱՐՄԱՐ, տե՛ս ԱՄԵՆԱՅԱՐՄԱՐ:
ԲՈԼՈՐԱՇԷՆ, տե՛ս ԲՈԼՈՐԱԿԵՐՏ:
ԲՈԼՈՐԱՊԷՍ, մ. 1. Բոլորովին, բովանդակապէս, ամբողջապէս: 2. Ընդհանրականապէս: 3. Բոլորակապէս: 4. Շուրջանակաւ:
ԲՈԼՈՐԱՊՏՈՒՂ, ա. Ողջակէզ:
ԲՈԼՈՐԱՍԵՐ, ա. Անխառն, անարատ (մարգարիտ):
ԲՈԼՈՐԱՎԻՃԱԿ (յունական ոճով), տե՛ս ԲՈԼՈՐԱԿԱՏԱՐ (1):
ԲՈԼՈՐԱՏԵՍ, ԲՈԼՈՐԱՏԵՍԱԿ, տե՛ս ԲՈԼՈՐԱՁԵՒ:
ԲՈԼՈՐԱՒԷՏ, ա. Համայն, բովանդակ, լիուլի, անթերի, բոլորամասն:
ԲՈԼՈՐԱՓԱՅԼ, ա. Բոլորալոյս, ամենապայծառ, մշտափայլ, մշտապայծառ:
ԲՈԼՈՐԵԱԿ, գ. Տիեզերք:
ԲՈԼՈՐԵԼ, նբ. 1. Հիւսել (ոլորելով բոլորակի ձև տալ): 2. Շուրջ պատել: 3. Հաւաքել, խմբել, ամփոփել, բովանդակել: 4. Շրջան առնուլ:
ԲՈԼՈՐԵՔԵԱՆ, ԲՈԼՈՐԵՔԻՆ, գ. Ամենեքեան, ամենեքին (բոլորն էլ):
ԲՈԼՈՐԻՄԲ, տե՛ս ԲՈԼՈՐՈՎԻՄԲ:
ԲՈԼՈՐՇԻ, ա. Բոլորաձև, բոլորակ:
ԲՈԼՈՐՈՎԻՄԲ, ԲՈԼՈՐՈՎԻՆ, մ. 1. Ամենայնիւ, ամենևիմբ, ամենևին, ամբողջապէս, բովանդակապէս, ընաւ, ընաւիմբ, պարունակաբար, գլխովին, գլխովիմբ, խսպառ: 2. ա. Համօրէն, բոլոր, ամբողջ, ամենայն, բովանդակ:
ԲՈԼՈՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Բովանդակութիւն, լրութիւն: 2. Բոլորակութիւն, բոլորումն, շրջան:
ԲՈԼՈՐՈՒՄՆ, գ. 1. Շրջան, դարձուած, շրջադարձ: 2. Բոլորութիւն, բովանդակութիւն, լրութիւն:
ԲՈԿ, ա. մ. Բոկոտն, մերկոտն, բոկանի, բոկ և հետի:
– ԲՈԿ ԵՒ ՀԵՏԻ, տե՛ս ԲՈԿ:
ԲՈԿԱՆԻ, տե՛ս ԲՈԿ:
ԲՈԿՈՏՆ, տե՛ս ԲՈԿ:
ԲՈՀՄՈՒՆՔ, գ. Սպառնալիք, երկիւղ, սոսկումն, ահ:
ԲՈՂԲՈՋ, գ. 1. Ընձիւղ, ծիլ, բուղխ, պտուկ, կոկոն: 2. փխբ. Ծնունդ, զարմ, սերունդ, շառաւիղ:
ԲՈՂԲՈՋԱԶԱՐԴ, ա. Բողբոջախիտ:
ԲՈՂԲՈՋԱԽԻՏ, տե՛ս ԲՈՂԲՈՋԱԶԱՐԴ:
ԲՈՂԲՈՋԱՆԱԼ, տե՛ս ԲՈՂԲՈՋԵԼ:
ԲՈՂԲՈՋԵԼ, չբ. 1. Բողբոջանալ, պտկել, շաքլել, ցցուել: 2. փխբ. Ծաղկել, փթթել: 3. Ջուարճանալ:
ԲՈՂԿՈՒԿ, գ. Եղջիւր (նոր դուրս ցցուող):
ԲՈՂՈՆ, տե՛ս ԱՂԱԲՈՂՈՆ:
ԲՈՂՈՔ, գ. Գանգատ, բողոքումն, դատախազութիւն:
– ԲՈՂՈՔ ԱՐԿԱՆԵԼ՝ ԲԱՌՆԱԼ՝ ԿԱՐԴԱԼ՝ ՀԱՐԿԱՆԵԼ՝ ՈՒՆԵԼ, տե՛ս ԲՈՂՈՔԵԼ:
ԲՈՂՈՔԵԼ, չբ. Գանգատել, դատախազել, դատախազ լինել:
ԲՈՂՈՔԻՉ, ա. գ. Դատախազ (բողոքող):
ԲՈՂՈՔՈՒՄՆ, գ. Բողոք (բողոքելը):
ԲՈՂՋԱԽՈՀՈՒԹԻՒՆ, գ. Զարախոհութիւն:
ԲՈՄԲԻՒԼՈՍ, տե՛ս ՇԵՐԱՍ:
ԲՈՄԲԻՒՆ, գ. 1. Թնդիւն, դղրդիւն, դղորդ: 2. Հնչիւն, ձայն (թմբուկի կամ քնարի):
ԲՈՅԹ, տե՛ս ԲՈՅԹՆ:
ԲՈՅԹՆ, գ. Բոյթ (ձեռքի և ոտքի առաջին մատը):
ԲՈՅԺ, գ. Բուժումն, բուժանք, դեղ:
ԲՈՅԼ, գ. Հոյլք, խումբ, ժողով, երամ, ջոկ, գունդ:
ԲՈՅՆ, գ. 1. Դադարք (թռչունների օթեւան): 2. Դադարք (այլ կենդանիների), որջ, բայոց: 3. Խրճիթ: 4. Նման. Խորշ, ծակ:

ԲՈՅՍ, գ. 1. Տունկ: 2. Սերունդ, զարմ (մարդկային ծնունդ):
– ԲՈՅՍ, ԲՈՅՍ ԲԱՐՈՒՑ, ԲՈՅՍՔ ԲՆՈՒԹԵԱՆ. Բարք, բնութիւն, սովորութիւն (բուն և բնածին):
ԲՈՆՈՍՈՍ, գ. Ցուլ (վայրի):
ԲՈՇԽՆԵԼ, տե՛ս ԸՄԲՈՇԽՆԵԼ:
ԲՈՌ, գ. (կենդբ.) Իշամեղու, բրէտ, անգործ մեղու:
ԲՈՍՈՐ, ա. գ. Արիւնագոյն, ծիրանի, ծիրանագոյն, կարմրագոյն, շառագոյն:
ԲՈՍՈՐԱԲՈՒՂԽ, ա. Արիւնաբուղխ:
ԲՈՍՈՐԱՅԻՆ, ա. Բոսորերանգեան, կարմրագոյն, արիւնագոյն:
ԲՈՍՈՐԵՐԱՆԳԵԱՆ, տե՛ս ԲՈՍՈՐԱՅԻՆ:
ԲՈՎ, գ. 1. Հնոց, հալոց, քուրայ: 2. տե՛ս ԲՈՒՐՈՒԱՌ: 3. Հալումն, զտումն, ձուլումն (մետաղի): 4. փխբ. Փորձ, քննութիւն: 5. Բովք, մետաղք (հանքավայր):
ԲՈՎԱԿԱՆ, տե՛ս ԲԱՒԱԿԱՆ:
ԲՈՎԱԿԱՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ԲԱՒԱԿԱՆՈՒԹԻՒՆ:
ԲՈՎԱՆԴԱԿ, ա. 1. Բոլոր, ողջոյն, ամբողջ, ողջ, համայն, կատարեալ, համօրէն: 2. Բաւական, հերիք, բազում, շատ: 3. Կարող, հասու: 4. մ. Բովանդակաբար, բովանդակապէս, ամբողջապէս, կատարելապէս, բոլորովին, ամենևին, բնաւին, լիով, խսպառ, առ հասարակ:
ԲՈՎԱՆԴԱԿԱԲԱՐ, տե՛ս ԲՈՎԱՆԴԱԿ (4):
ԲՈՎԱՆԴԱԿԱՆԱԼ, չբ. Բաւականանալ, հերիքանալ:
ԲՈՎԱՆԴԱԿԱՊԷՍ, տե՛ս ԲՈՎԱՆԴԱԿ (4):
ԲՈՎԱՆԴԱԿԵԼ, նբ. 1. Ամփոփել, պարփակել, պարագրել, պարունակել: 2. Հաւաքել, ժողովել, գումարել, համախմբել: 3. Ի գլուխ հանել, գլխաւորել, յանգել, կատարել, աւարտել: 4. չբ. Բաւականանալ, բաւել, զօրել:
ԲՈՎԱՆԴԱԿԻՉ, ա. Պարառու:
ԲՈՎԱՆԴԱԿՈՒԱԾ, գ. Բովանդակումն, լրումն, աւարտ, վերջ:
ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ, գ. 1. Պարփակումն, պարագրութիւն, պարունակաnութիւն: 2. Կատարելութիւն, ամբողջութիւն, լրութիւն: 3. Սահման, ծայր, աւարտ, վերջ:
ԲՈՎԱՆԴԱԿՈՒՄՆ, գ. Լրումն, կատարումն:
ԲՈՎԵԼ, չբ. 1. Բաւել, ձեռնհաս լինել: 2. Հանդուրժել, տոկալ, համբերել, տանել:
ԲՈՏՈՏ, գ. Որդն, ճճի, ուտիճ, ցեց:
ԲՈՏՈՏԱԿԵՐ, ա. Բոտոտակերեալ, որդնահար, ճճեկեր, ուտճահալ:
ԲՈՏՈՏԱԿԵՐԵԱԼ, տե՛ս ԲՈՏՈՏԱԿԵՐ:
ԲՈՐԱԿ, գ. (քիմ.) Մաքրական տեսակ:
ԲՈՐԲՈՐԻՏ, ա. Բորբորիտոն, վաւաշ, վաւաշոտ, ցանկասէր, անառակ, պիղծ:
ԲՈՐԲՈՐԻՏՈՆ, տե՛ս ԲՈՐԲՈՐԻՏ:
ԲՈՐԲՈՔ, գ. 1. Վառումն, լուցումն, բոց: 2. ա. Վառ, լուցեալ:
ԲՈՐԲՈՔԱԽԱՌՆ, ա. Բոցախառն:
ԲՈՐԲՈՔԵԼ, նբ. 1. Վառել, լուցանել, բոցակիզել, այրել, տոչորել: 2. փխբ. Գրգռել, յուզել:
ԲՈՐԲՈՔԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԲՈՐԲՈՔԵԼ:
ԲՈՐԲՈՔՈՒԹԻՒՆ, տե՛ս ԲՈՐԲՈՔՈՒՄՆ:
ԲՈՐԲՈՔՈՒՄՆ, գ. Բորբոքութիւն (բորբոքելը, բորբոքուելը):
ԲՈՐԵԱՆ, տե՛ս ԲՈՐԵՆԻ:
ԲՈՐԵՆԻ, գ. (կենդբ.) Բորեան, բորէ:
ԲՈՐԷ, տե՛ս ԲՈՐԵՆԻ:
ԲՈՐԿՈՆԻՄ, գ. (բսբ.) Տատասկ:
ԲՈՐՈՏ, ա. Ուրուկ, պիսակոտ, գոդի, քոսոտ:
ԲՈՐՈՏԱՆԱԼ, տե՛ս ԲՈՐՈՏԵԼ:
ԲՈՐՈՏԵԼ (իմ), չբ. Բորոտանալ, ուրկանալ, քոսոտել:
ԲՈՐՈՏՈՒԹԻՒՆ, գ. Ուրկութիւն, պիսակութիւն, գոդութիւն, քոսութիւն:

ԲՈՅ, գ. 1. Կրակ (այրուող նիւթից բարձրացող հրեղէն գոյացութիւն): 2. Պայծառութիւն (լուսաւոր ցոլք): 3. փխբ. Եռանդն, աւիւն: 4. ա. Բոցեղէն (մօրուք):
ԲՈՅԱԳՈՅՆ, ա. Հրագոյն, բոցատեսիլ, բոցակերպ:
ԲՈՅԱԴԷԶ, ա. Բազմաբոց, հրադէզ:
ԲՈՅԱԶԱՐԴ, ա. Բոցափայլ:
ԲՈՅԱԶԳԵՍՏ, ա. Բոցեղէն, հրակերպ:
ԲՈՅԱԼՈՅՍ, ա. Պայծառ (բոցափայլ լոյս ունեցող):
ԲՈՅԱԽԱՌՆ, ա. Հրախառն, փխբ. տոչորիչ, այրիչ:
ԲՈՅԱԾԱԳՈՒՄՆ, գ. Հրափայլութիւն:
ԲՈՅԱԿԵՐՊ, տե՛ս ԲՈՅԱՏԵՍԻԼ:
ԲՈՅԱԿԷԶ, ա. Տապագին, տօթագին:
- ԲՈՅԱԿԷԶ ԱՌՆԵԼ, տե՛ս ԲՈՅԱԿԻԶԵԼ:
ԲՈՅԱԿԻԶԵԼ, նբ. Բոցակէզ առնել, տոչորել, այրել, փաղաղել, խանձողել:
ԲՈՅԱԿԻԾ, ա. Կսկծեցուցանող, կսկծեցուցիչ, մարմաջողական:
ԲՈՅԱԿՆԱԳՈՅՆ, տե՛ս ՀՐԱՋԵԱՅ:
ԲՈՅԱՋԵԻ, տե՛ս ԲՈՅԱՏԵՍԻԼ:
ԲՈՅԱՃԱՃԱՆՉ, ա. Բոցանիշ, բոցանշան, բոցափայլ, լուսաւոր, պայծառ:
ԲՈՅԱՅԻՆ, տե՛ս ԲՈՅԵՂԷՆ:
ԲՈՅԱՆԻՇ, տե՛ս ԲՈՅԱՃԱՃԱՆՉ:
ԲՈՅԱՆԻՒԹ, ա. Բոցեղէն, հրեղէն, հրանիւթ, հրակերպ, լուսեղէն:
ԲՈՅԱՆՇԱՆ, ա. մ. Բոցանիշ, բոցաճաճանչ:
ԲՈՅԱՆՇՈՅԼ, ա. Բոցաճաճանչ, բոցափայլ, փայլակնացայտ:
ԲՈՅԱՇՈՒՆՉ, ա. Հրաշունչ, տօթագին, տապախառն:
ԲՈՅԱՎԱՌԵԱԼ, ա. Հրաբորբոք:
ԲՈՅԱՏԵՍ, ԲՈՅԱՏԵՍԱԿ, տե՛ս ԲՈՅԱՏԵՍԻԼ:
ԲՈՅԱՏԵՍԻԼ, ա. Բոցակերպ, բոցատիպ, բոցաձեւ, բոցեղէն:
ԲՈՅԱՏԻՊ, տե՛ս ԲՈՅԱՏԵՍԻԼ:
ԲՈՅԱՓԱՅԼ, ա. Հրափայլ, բոցաճաճանչ:
ԲՈՅԱՓԱՅԼԵԼ, չբ. Լուսափայլել, պայծառանալ, շողշողել:
ԲՈՅԵՂԷՆ, ա. Բոցանիւթ, բոցային, հրեղէն, լուսեղէն:
ԲՈՒ, գ. (կենդբ.) Բուէճ:
ԲՈՒԷՃ, տե՛ս ԲՈՒ:
ԲՈՒԺԱԿ, ա. Բուժիչ, բժշկիչ:
ԲՈՒԺԱԿԱՆ, ա. 1. Բուժիչ, բժշկիչ, բժշկական: 2. գ. Դեղ:
ԲՈՒԺԱՆՔ, գ. Բուժումն, դեղ, դարման:
ԲՈՒԺԵԼ, նբ. 1. Բժշկել, ապաքինել, առողջացուցանել: 2. Ապրեցուցանել, զերծուցանել, փրկել, ազատել, փրծուցանել:
ԲՈՒԺԻՉ, ա. Բժշկիչ, բուժական, առողջացուցիչ, ապրեցուցիչ, փրկիչ:
ԲՈՒԺԿՈՒԹԻՒՆ, գ. 1. Բժշկութիւն: 2. Ազատութիւն, փրկութիւն:
ԲՈՒԺՈՒՄՆ, գ. Բժշկութիւն (բժշկելը, բժշկուելը), ազատութիւն (ազատուելը, փրկուելը):
ԲՈՒԾ, տե՛ս 1. ԳԱՌՆ: 2. ՈՒԼ:
ԲՈՒԾԱՆԵԼ, նբ. Սնուցել, դարմանել, տածել, պարարել, բտել:
ԲՈՒԾԵԼ, տե՛ս ԲՈՒԾԱՆԵԼ:
ԲՈՒԾԻՆ, տե՛ս ՊԱՏՐՈՅԳ:
ԲՈՒԾՈՒՄՆ, գ. Դարման, սնունդ:
ԲՈՒՂԽ, տե՛ս ԲՈՂԲՈՋ (1):
ԲՈՒՆ, գ. 1. Ստեղն (ծառի վերգետնեայ մասը մինչև ճիւղերը): 2. նման. Ջող, որ ծառայում է իբրև կոթ՝ բռնատեղ են (աշտանակի, նիզակի են), նիզակաբուն, տիգաբուն: 3. Բնութիւն, իսկութիւն: 4. նման. Սկիզբն, արմատ, պատճառ, հիմն, աղբիւր, ծայր, գլուխ: 5. Բանակ: 6. յոգն. Նախնիք: 7. ա. Բնիկ, բնաւոր, բնական, հիմնական, էական, իսկ, իսկական, հաւրազատ, ճշմարիտ, ճշգրիտ:
- Ի ԲՆԷ. Ի բնուստ, յարմատոյ, ի հիմանէ, ի սզգբանէ անտի, յառաջնմէ իսկ, ի վաղուց:
- Ի ԲՆՄԷ, Ի ԲՆՈՋԷ, տե՛ս Ի ԲՆԷ:

- Ի ԲՈՒՆ, ՅԲՈՒՆ. Ի գլուխ, ցաւարտ, ի ծայր, ի սպառ, ցվախճան:
ԲՈՒՆԱՆԱԼ, տե՛ս ԲՈՒՆԵԼ:
ԲՈՒՆԱՒՈՐԵԼ (իմ), տե՛ս ԲՈՒՆԵԼ:
ԲՈՒՆԵԼ, չբ. Բունանալ, բունաւորել, բնանալ, բնակել, որջանալ, բնականալ:
ԲՈՒՆԻԿ, գ. Բոյն (փոքրիկ):
ԲՈՒՇՏ, տե՛ս ՓԱՄՓՈՒՇՏ:
ԲՈՒՌ, գ. 1. Կիր: 2. Նօթ:
ԲՈՒՌԿԱՆԻԱ, գ. Հրաբուղխք:
ԲՈՒՌՆ, գ. 1. Ափ, ագուռ: 2. փխբ. Ձեռն, իշխանութիւն, կարողութիւն: 3. Բռնութիւն, հարստահարութիւն, զրկանք: 4. ա. Ուժգին, սաստիկ, խիստ: 5. Հզօր, զօրեղ, կորովի, ուժեղ: 6. ա. գ. Իշխան, բռնաւոր, բռնակալ, ինքնակալ, թագաւոր: 7. մ. Բռնաբար, ուժգնաբար, դժուարաւ, հազիւ:
- ԲՈՒՌՆ ԼԻՆԵԼ. Բռնանալ, հարստահարել, զրկել:
- ԲՈՒՌՆ ՀԱՐԿԱՆԵԼ. 1. Ձեռն արկանել, ըմբռնել, չօչափել: 2. Ձեռնամուխ լինել, ձեռնարկել, սկսանել, ձեռն ի գործ առնել՝ արկանել:
- Ի ԲՈՒՌՆ ԱՌՆՈՒԼ՝ ԱՐԿԱՆԵԼ, ԶԸՐԲՌԱՄԲ ԱԾԵԼ՝ ԱՐԿԱՆԵԼ. Ըմբռնել, բուռն հարկանել, իշխել, տիրել:
- Ի ԲՌԻՆ ՈՒՆԵԼ ԶՈԳԻ. Դնել զոգի ի բռին (կեանքը մահուան վտանգի ենթարկել):
ԲՈՒՌՆԱԼԻՐ, ա. Լիաբուռն, առատ:
ԲՈՒՍԱԲԵՐ, ա. 1. Բուսարձակ, բուսուցիչ: 2. ա. գ. Բուսածին. ծառ, տունկ:
ԲՈՒՍԱԾԻՆ, ա. Բուսաբեր (իբրև բոյս ծագած):
ԲՈՒՍԱԿ, գ. Բուսուկ (բոյս, ծառ, տունկ են):
ԲՈՒՍԱԿԱՆ, ա. 1. Տնկական (բոյսերին յատուկ): 2. գ. Բոյս (բուսական մարմին):
ԲՈՒՍԱԿԻՑ, ա. Տնկակից, բնակից:
ԲՈՒՍԱՆԵԼ (իմ), չբ. 1. Ընձիւղել, բողբոջել: 2. Յառաջագայել, ծնանել, ծագել, երևել, յերևան գալ, սերել, աճել:
ԲՈՒՍԱՐՁԱԿ, ա. Բուսաբեր, յուռթի, բերրի:
ԲՈՒՍՈՂ, ա. Բուսուցիչ, փխբ. ծնօղ:
ԲՈՒՍՈՒԿ, տե՛ս ԲՈՒՍԱԿ:
ԲՈՒՍՈՒՑԻՉ, ա. Բուսող:
ԲՈՒՏ, գ. Ճարակ, կեր, կերակուր:
ԲՈՒՐԱՆՈՑ, տե՛ս ԲՈՒՐՈՒԱՌ:
ԲՈՒՐԱՍՏԱՆ, գ. 1. Պարտէզ, դրախտ, հոտարան: 2. նման. Մարգ: 3. Արուարձան (քաղաքի):
ԲՈՒՐԱՍՏԱՆԵԱՅՔ, գ. յոգն. Բուրաստանք, պարտէզք:
ԲՈՒՐԱՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԲՈՒՐԵՑՈՒՑԱՆԵԼ:
ԲՈՒՐԳՆ, գ. 1. Աշտարակ: 2. Պիւրամիդ, յօբելիկ (բրգաձև կոթող շինութեան վրայ):
ԲՈՒՐԴ, գ. Գեղմն, ասր, գզաթ, կիզն:
ԲՈՒՐԵԼ, նբ. չբ. Հոտ հարկանել, բուրեցուցանել, հոտել (հոտ արձակել՝ տարածել, հոտ գալ):
ԲՈՒՐԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Բուրացուցանել, բուրել:
ԲՈՒՐԻՉ, ա. Ծխիչ:
ԲՈՒՐՈՒԱՌ, գ. Բուրանոց, բով, ծխանոց, խնկանոց, կրակակալ:
ԲՈՒՔ, գ. Ձիւնաբեր, ձիւնաբերութիւն:
ԲՋԵԼ, տե՛ս ԲԱՌԱՋԵԼ:
ԲՋԻՒՆ, տե՛ս ԲԱՌԱՉ:
ԲՋՈՒՄՆ, տե՛ս ԲԱՌԱՉ:
ԲՋԻՋՔ, գ. յոգն. Գուբք (մեղրահացի վեցանկիւնի փոսերը):
ԲՌԵԼ, տե՛ս ԾԵՓԵԼ:
ԲՌՆԱԲԱՐ, մ. 1. Բռնազբօսաբար, բռնի, բռնիւ: 2. Առ հարկի, ակամայ:
ԲՌՆԱԲԱՐԵԼ, նբ. Հարստահարել, բռնադատել (բռնութիւն՝ ոյժ գործադրել):
ԲՌՆԱԳՈՅՆ, ա. Հզօրագոյն, զօրագոյն:
ԲՌՆԱԴԱՏ, ա. Բռնաւոր, բռնակալ:
ԲՌՆԱԴԱՏԵԼ, նբ. 1. Հարկ առնել, հարկաւորել, հարկեցուցանել, ստիպել: 2. Հարստահարել, բռնաբարել: 3. Լլկել:

ԲՌՆԱԴԱՏԻՉ, ա. Բռնադատու, բռնազբօսիկ:
ԲՌՆԱԴԱՏՈՂԱԿԱՆ, ա. Հարկաւորական, հարկաւորացուցիչ:
ԲՌՆԱԴԱՏՈՒ, տե՛ս ԲՌՆԱԴԱՏԻՉ:
ԲՌՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ, գ. Բռնութիւն, հարկ:
ԲՌՆԱԶԲՕՍԱԲԱՐ, տե՛ս ԲՌՆԱԲԱՐ (1):
ԲՌՆԱԶԲՕՍԵԼ, նբ. Բռնաբարել, բռնադատել:
ԲՌՆԱԶԲՕՍԻԿ, տե՛ս ԲՌՆԱԴԱՏԻՉ:
ԲՌՆԱԶԲՕՍՈՒԹԻՒՆ, գ. Բռնադատութիւն, բռնութիւն, հարստահարութիւն:
ԲՌՆԱԼԻՐ, մ. ա. Լիաբուռն:
ԲՌՆԱԿԱԼ, ա. գ. Բռնաւոր, բռնակալու:
– ԲՌՆԱԿԱԼ ԼԻՆԵԼ, տե՛ս ԲՌՆԱԿԱԼԵԼ:
ԲՌՆԱԿԱԼԵԼ, չբ. նբ. Բռնակալ լինել, բռնանալ, իշխել, տիրել, ունել, նուաճել:
ԲՌՆԱԿԱԼՈՒ, տե՛ս ԲՌՆԱԿԱԼ:
ԲՌՆԱԿԱԼՈՒԹԻՒՆ, գ. Տէրութիւն, բնաւորութիւն, հարստահարութիւն:
ԲՌՆԱԿՌԻՒ, ա. գ. Կռփամարտիկ:
ԲՌՆԱՀԱՐԵԼ, նբ. Ըմբռնել, ունել, բըռնադատել:
ԲՌՆԱՀԱՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Ըմբռնումն: 2. Առիթ:
ԲՌՆԱՁԻԳ, ա. Տառապեցուցիչ, չարչարիչ:
ԲՌՆԱՄԱՀ, ա. 1. Դժուարամահ: 2. Սպանեալ (բռնութեամբ մահացած), անձնասպան:
ԲՌՆԱՄԱՐՏ, ա. գ. Բռնամարտիկ, ըմբիշ:
ԲՌՆԱՄԱՐՏԻԿ, ա. գ. 1. Կռփամարտիկ: 2. Նահատակ (քաջ մարտիկ՝ ախոյեան):
ԲՌՆԱՆԱԼ, չբ. Բռնակալել, գոռոզանալ, հարստահարել, յաղթահարել:
ԲՌՆԱՍԵՂ, գ. Մեղեխ, ունկունք:
ԲՌՆԱՐԿԵԼ, նբ. Բուռն հարկանել, ձեռնարկել, սկսանել:
ԲՌՆԱՒՈՐ, գ. ա. 1. Բռնակալ: 2. Բուռն, սաստիկ, ուժգին, զօրաւոր:
ԲՌՆԱՒՈՐԱԲԱՐ, մ. Բռնաւորութեամբ, բռնաբար:
ԲՌՆԱՒՈՐԵԼ, նբ. 1. Բռնադատել, հարկաւորել, ստիպել: 2. չբ. Բռնակալել, բռնանալ:
ԲՌՆԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. Բռնակալութիւն, բռնութիւն, հարստութիւն:
ԲՌՆԱՔԱՐ, տե՛ս ՎԻՐԳ (1):
ԲՌՆԵԼ, նբ. Ի բուռն առնուլ, ունել, ըմբռնել, արգելուլ:
ԲՌՆԻ, ԲՌՆԻՒ, տե՛ս ԲՌՆԱԲԱՐ:
ԲՌՆԽԷԹՔ, գ. Կռփումն, կռփանք (բըռունցքով խփելը):
ԲՌՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Բռնաւորութիւն, ուժաւորութիւն, բռնադատութիւն, հարըստահարութիւն, հարկ: 2. Սաստկութիւն, ուժգնութիւն:
ԲՌՆՈՒՄՆ, գ. Ըմբռնումն:
ԲՌՆՑԻ, մ. Մուրցացի:
ԲՌՇՈՊ, ա. Խռովայոյզ, խառնակ:
ԲՏԵԼ, նբ. Պարարել, բուծանել:
ԲՐԱԲԻՈՆ, գ. Յաղթանակ, մրցանակ, պսակ (յաղթութեան համար շնորհուած):
ԲՐԱԾԵԾ, ա. Գանածեծ (բրով ծեծուած):
– ԲՐԱԾԵԾ ԱՌՆԵԼ. Գան հարկանել, ճաղկել:
– ԲՐԱԾԵԾ ԼԻՆԵԼ. Գանահարել:
ԲՐԱԾՈՅ, ա. Հաստահիմն:
ԲՐԱՒՈՐ, տե՛ս ՇԵՐՏԱՒՈՐ:
ԲՐԴԱԶԳԵԱՑ, տե՛ս ԱՍՈՒԵՂ:
ԲՐԴԵԱՅ, գ. Ասուի (բրդից հագուստ):
ԲՐԴԵԼ, նբ. 1. Բեկանել, փշրել, մանրել (հացի մասին): 2. չ. Տեղալ (ձեան մասին):
– ԲՐԴԵԼ Ի ԲԱՐԿՈՒԹԻՒՆ. Գրգռել, բորբոքել (բարկութիւնը շարժել):
ԲՐԵԼ, նբ. Փորել, պեղել, քանդել:
ԲՐԷՏ, գ. (կենդ.) Իշամեղու:
ԲՐԻԶ, գ. Հողաբիր, մարկեղ, փայտատ:
ԲՐՈՒՏ, գ. Կաւագործ, խեցագործ:
ԲՐՏԱՆԱԼ, չբ. 1. Խստանալ, կարծրանալ: 2. Պաղել, սառչել, ընդարմանալ, փայտանալ:

ԲՐՏԵԱՅ, ա. Կաւեայ, կաւեղէն, խեցեղէն:
ԲՐՏԵՐԱԽ, տե՛ս ԽՍՏԵՐԱԽ:
ԲՐՏՈՒԹԻՒՆ, գ. Խստութիւն, կարծրութիւն, պնդութիւն:
ԲՔԱԲԵՐ, ա. Բքարար, բքայոյզ:
ԲՔԱԽԵՂԴ, ա. Ձիւնախեղդ:
ԲՔԱՅՈՅԶ, ա. Բքայորդոր:
ԲՔԱՅՈՐԴՈՐ, տե՛ս ԲՔԱՅՈՅԶ:
ԲՔԱՐԱՐ, տե՛ս ԲՔԱԲԵՐ:
ԲՕԹ, գ. Գոյժ, գուժիւն:
ԲՕԹԱԲԵՐ, ա. Գուժաբեր, գուժկան, գուժաւոր:

# Գ

ԳԱԲԵՂԷՆ, գ. Եբիճաղ:
ԳԱԳԱԹՆ, գ. 1. Կատար, գլուխ, ծայր: 2. Գանգ, կառափն:
ԳԱԳԱԹՆԱԴԱՇ(Ն), գ. Սաղաւարտ (գլխի պահպանակ):
ԳԱԳԱԹՆԱՆԱԼ, չբ. Վերանալ (վեր բարձրանալ):
ԳԱԳԱՇԵԼ (իմ), չբ. Գարգաչել, ցնորել, բանդագուշել, աղճատել, ցնդել:
ԳԱԳԱՇՈՏ, ա. Գարգաչեալ, պագշոտ:
ԳԱԴԻՇ, գ. Բարդ (խրձերի դէզ), օրան, կալ:
ԳԱԶԱԽ, ԳԱԶԱՂ, տե՛ս ԱՃԻՒՆ:
ԳԱԶԱՂԱՆԱԼ, չբ. Մոխրել (մոխիր դառնալ), փխբ. պապանձել:
ԳԱԶԱՆ, գ. 1. Երէ (վայրի գիշատիչ կենդանի): 2. Փիղ:
ԳԱԶԱՆԱԲԱՐ, մ. Գազանապէս, վայրենաբար:
ԳԱԶԱՆԱԲԱՐՈՅ, ա. 1. Վայրենի, կատաղի, վայրագ, մոլեգին: 2. Գազանային:
ԳԱԶԱՆԱԲԱՐՈՅՈՒԹԻՒՆ, գ. Անգթութիւն, կատաղութիւն, վայրագութիւն (գազանաբարոյի յատկութիւնը):
ԳԱԶԱՆԱԲԵԿ, ա. Գազանագէշ, գազանածախ, գազանակուր:
ԳԱԶԱՆԱԳԷՇ, տե՛ս ԳԱԶԱՆԱԲԵԿ:
ԳԱԶԱՆԱԳՈՅՆ, ա. 1. Վայրենագոյն, դժնդակագոյն: 2. Սաստկագոյն:
ԳԱԶԱՆԱԴԷՄ, տե՛ս ԳԱԶԱՆԱԿԵՐՊ:
ԳԱԶԱՆԱԽԱՌՆ, ա. Կիսագազան:
ԳԱԶԱՆԱԾԱԽ, տե՛ս ԳԱԶԱՆԱԲԵԿ:
ԳԱԶԱՆԱԿԱՆ, ա. 1. Գազանային, վայրենի, մոլեգին: 2. Գազանանման:
ԳԱԶԱՆԱԿԵՐ, տե՛ս ԳԱԶԱՆԱԿՈՒՐ:
ԳԱԶԱՆԱԿԵՐՊ, ա. Գազանադէմ, գազանանման, գազանաձև, գազանատեսակ, գազանօրէն:
ԳԱԶԱՆԱԿՈՒՏ, տե՛ս ԳԱԶԱՆՈՒՏ:
ԳԱԶԱՆԱԿՈՒՐ, ա. Գազանակեր, գազանաբեկ:
ԳԱԶԱՆԱԿՌԻՒ, տե՛ս ԳԱԶԱՆԱՄԱՐՏԻԿ:
ԳԱԶԱՆԱՁԵՒ, տե՛ս ԳԱԶԱՆԱԿԵՐՊ:
ԳԱԶԱՆԱՄԱՐՏ, գ. 1. Գազանամարտութիւն: 2. տե՛ս ԳԱԶԱՆԱՄԱՐՏԻԿ:
ԳԱԶԱՆԱՄԱՐՏԻԿ, ա. գ. Գազանամարտ, գազանակռիւ:
ԳԱԶԱՆԱՄԱՐՏՈՒԹԻՒՆ, տե՛ս ԳԱԶԱՆԱՄԱՐՏ (1):
ԳԱԶԱՆԱՄԻՏ, ա. Վայրենամիտ, գազանաբարոյ, գազանական, մոլեգին:
ԳԱԶԱՆԱՄՏՈՒԹԻՒՆ, գ. Գազանութիւն, վայրագութիւն, կատաղութիւն:
ԳԱԶԱՆԱՅԻՆ, տե՛ս ԳԱԶԱՆԱԿԱՆ:
ԳԱԶԱՆԱՆԱԼ, չբ. Վայրենանալ, վայրագանալ, կատաղել, մոլեգնել, սրտմտել:
ԳԱԶԱՆԱՆՄԱՆ, տե՛ս ԳԱԶԱՆԱԿԵՐՊ:
ԳԱԶԱՆԱՊԷՍ, տե՛ս ԳԱԶԱՆԱԲԱՐ:
ԳԱԶԱՆԱՍԻՐՏ, ա. Վայրագ, անգութ (գազանի սիրտ ունեցող):
ԳԱԶԱՆԱՏԵՍԱԿ, տե՛ս ԳԱԶԱՆԱԿԵՐՊ:
ԳԱԶԱՆԱՑՈՒՑԱՆԵԼ, ներ. Վայրենացուցանել, կատաղեցուցանել:
ԳԱԶԱՆԵԼ, տե՛ս ԳԱԶԱՆԱՆԱԼ:

ԳԱՋԱՆԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԳԱՋԱՆԱՑՈՒՑԱՆԵԼ:
ԳԱՋԱՆՈՒԹԻՒՆ, գ. Գազանաբարոյութիւն, անգթութիւն, կատաղութիւն, սրտմտութիւն:
ԳԱՋԱՆՈՒՏ, ա. Գազանակուտ:
ԳԱՋԱՆՕՐԷՆ, տե՛ս ԳԱՋԱՆԱԿԵՐՊ:
ԳԱՋԵՐԲՈՒԱԿ, գ. Գոյլբուակ (մշկընկոյզ):
ԳԱՋՊԷՆ կամ ԳԱՋԱՊԷՆ, գ. Մանանայ:
ԳԱԼ, չբ. Եկաւորել:
- ԳԱԼ Ի ՋԱՐՄԱՑՈՒՄՆ. Զարմանալ:
- ԳԱԼ Ի ՋԳԱՍՏՈՒԹԻՒՆ. Զգաստանալ:
- ԳԱԼ Ի ՋՂՋՈՒՄՆ. Զղջալ, զղջանալ:
- ԳԱԼ Ի ԾՆՈՒՆԴ. Ծնանել (ծնուել):
- ԳԱԼ Ի ԿԱՐԾԻՍ ՈՒՐՈՒՔ. Միաբանել, համաձայնել:
- ԳԱԼ Ի ՀԱՐՑՈՒՄՆ. Հարցանել:
- ԳԱԼ Ի ՄԻՏՍ՝ ՅԻՆՔՆ. Ուշաբեր լինել, ուշաբերել, սթափել, զգաստանալ:
- ԳԱԼ ՅԱՂԵՐՍ. Մեղմանալ, զիջանել:
- ԳԱԼ ՅԱՃՈՒՄՆ. Աճել:
- ԳԱԼ ՅՈՂՈՐՄՈՒԹԻՒՆ. Ողորմել:
- ԳԱԼ Ի ՎԱԽՃԱՆ. Վախճանել:
- ԳԱԼ Ի ՔՆԻՆ. Քննել:
- ԳԱԼ ԸՆԴ ԱՐԳԱՆԴ. Ծնանել (ծնուել):
- ՈՐՋԱՓ ԳԱԼ. Ջեռնհաս՝ կարող լինել:
ԳԱԼԱՐԵԼ, նբ. 1. Ոլորել, բոլորել, փաթութել: 2. Գելուլ:
ԳԱԼԱՐԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԳԱԼԱՐԵԼ:
ԳԱԼԱՐՈՒՄՆ, գ. Ոլորումն, ոլոր:
ԳԱԼԼՈՍ, գ. Ներքինի:
ԳԱԼՈՒՍՏ, գ. Եկաւորութիւն, եկելութիւն:
ԳԱԿՆՈՒԼ, չբ. Հպատակել:
ԳԱՀ, գ. 1. Բեմ, բեմբ: 2. Աթոռ, բազմոց: 3. նման. Բարձ, պատիւ, իշխանութիւն: 4. Դար, վախ, գահաւանդ, բարձրաւանդակ:
ԳԱՀԱԳԼԽՈՒԹԻՒՆ, գ. Գահերիցութիւն:
ԳԱՀԱԳԼՈՒԽ, ա. 1. Գահերէց, նախապատիւ: 2. գ. Գահագլխութիւն, գահերիցութիւն:

ԳԱՀԱԿ, գ. Աղխ, օղ, լամբ:
ԳԱՀԱԿԱԼ, գ. 1. Թագաւոր, իշխան, պետ: 2. Փոխանորդ:
ԳԱՀԱԿԱԼԵԼ, չբ. Աթոռանալ, թագաւորել:
ԳԱՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ, գ. Իշխանութիւն (պատուի՝ աւագութեան աստիճան):
ԳԱՀԱԿԱՑՈՒԹԻՒՆ, գ. Գահակալութիւն (գահի վրայ լինելը):
ԳԱՀԱԿԱՐԳԵԼ (իմ), չբ. Գահանստել:
ԳԱՀԱԿԻՑ, տե՛ս ԱԹՈՌԱԿԻՑ:
ԳԱՀԱԿՑՈՒԹԻՒՆ, տե՛ս ԱԹՈՌԱԿՑՈՒԹԻՒՆ:
ԳԱՀԱՄԵԾԱՐ, ա. Պատուաւոր (գահով (3) մեծարուած):
ԳԱՀԱՆՇԱՆ, ա. Թագաւորազն (գահով նշանաւոր):
ԳԱՀԱՆՍՏԵԼ (իմ), տե՛ս ԳԱՀԱԿԱՐԳԵԼ:
ԳԱՀԱՍԻՐՈՒԹԻՒՆ, գ. Իշխանասիրութիւն:
ԳԱՀԱՎԷԺ, ա. Դարահոս, դարավէժ, քարավէժ:
- ԳԱՀԱՎԷԺ ԱՌՆԵԼ. Դարահոս առնել, դարահոսել, քարավէժ առնել:
- ԳԱՀԱՎԷԺ ԼԻՆԵԼ. Գահավիժել, քարավիժել, քարավէժ լինել, խոհամանալ:
ԳԱՀԱՎԻԺԵԼ (իմ), տե՛ս ԳԱՀԱՎԷԺ ԼԻՆԵԼ:
ԳԱՀԱՎԻԺՈՒԹԻՒՆ, գ. 1. Քարավիժութիւն: 2. Գահաւանդ, գահաւանդակ, գահ, դար:
ԳԱՀԱՒԱՆԴ, տե՛ս ԳԱՀԱՒԱՆԴԱԿ:
ԳԱՀԱՒԱՆԴԱԿ, գ. Գահաւանդ (բարձրաւանդակ տեղ), բարձունք, գահ, դար, վախ:
ԳԱՀԱՒՈՐ, գ. Գահաւորակ, դեսպակ:
ԳԱՀԱՒՈՐԱԿ, գ. 1. Գահոյք, դեսպակ: 2. Կասկարայ:
ԳԱՀԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. Գահմունք (գահ և պատիւ ունենալը, պատուի աստիճան):
ԳԱՀԵՂՈՒԹԻՒՆ, գ. Գահաւորութիւն (պատուի բարձրութիւն):

ԳԱՀԵՐԷՑ, գ. ա. 1. Նախագահ: 2. Նախապատիւ:
ԳԱՀԵՐԷՑԱԳՈՅՆ կամ ԳԱՀԻՐԻՑԱԳՈՅՆ, ա. Աւագագոյն, աւագամեծար, նախամեծար:
ԳԱՀԵՐԷՑՈՒԹԻՒՆ, տե՛ս ԳԱՀԵՐԻՑՈՒԹԻՒՆ:
ԳԱՀԵՐԻՑՈՒԹԻՒՆ, գ. 1. Նախագահութիւն, նախապատուութիւն, աւագութիւն: 2. Գահասիրութիւն:
ԳԱՀԻՐԻՑՈՒԹԻՒՆ, տե՛ս ԳԱՀԵՐԻՑՈՒԹԻՒՆ:
ԳԱՀԸՆԿԱԼ, տե՛ս ԳԱՀԱԿԱԼ:
ԳԱՀԸՆԿԱԼԵԼ, տե՛ս ԳԱՀԱԿԱԼԵԼ:
ԳԱՀԻՆՔ, գ. յոգն. Գահաւանդք, անդունդք:
ԳԱՀՄՈՒՆՔ, տե՛ս ԳԱՀԱԽՈՐՈՒԹԻՒՆ:
ԳԱՀՈՂ, գ. Թակարդ:
ԳԱՀՈՅԱՆԻ, տե՛ս ԳԱՀՈՅՔ:
ԳԱՀՈՅՔ, գ. 1. Գահ: 2. Գահաւորակ, տախտ, մահիճք: 2. Դեսպակ, պատգարակ, ժանուար:
ԳԱՂԱՏՈՍ, գ. Քարահատ, քարագործ:
ԳԱՂԱՓԱՐ, գ. 1. Տիպ, նախատիպ: 2. Օրինակ, պատկեր, նմանութիւն, յարացոյց:
ԳԱՂԱՓԱՐԵԼ, նբ. Տպաւորել, օրինակել, նմանեցուցանել, ձևացուցանել:
ԳԱՂԱՓԱՐՈՒԹԻՒՆ, գ. Տպաւորութիւն, նմանութիւն, օրինակ, կերպ:
ԳԱՂԹ, գ. Զու, գաղութ, գաղթականութիւն, վտարանդութիւն, տարաբնակութիւն, բնակափոխութիւն, պանդխտութիւն, փախուստ, գերութիւն, հատուած:
ԳԱՂԹԱԿԱՆ, ա. գ. 1. Վտարանդի, պանդուխտ, բացաբնակ: 2. Գաղթ, հատուած:
ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ԳԱՂԹ:
ԳԱՂԹԵԼ[1], նբ. Վտարել, տարագրել:
ԳԱՂԹԵԼ[2], չբ. Զու առնել, ի չու անկանել, չուել, հատուած գնալ, հատուածել, վտարանդել, մեկնել, խոյս տալ:
ԳԱՂՁՆ, գ. (բսբ.) Քաղ:
ԳԱՂՈՒԹ, տե՛ս ԳԱՂԹ:
ԳԱՂՁ, ա. Եղկ:
ԳԱՂՁԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Եղկացուցանել:
ԳԱՂՏ, մ. 1. Գաղտաբար, գողաբար, ի ծածուկ, ծածկաբար, գաղտուկ, զանխլաբար, լռելեայն: 2. նխդ. Գաղտնի, ծածուկ:
ԳԱՂՏԱԲԱՐ, տե՛ս ԳԱՂՏ (1):
ԳԱՂՏԱԳՆԱՑ ԼԻՆԵԼ. Խոյս տալ (գաղտաբար չուել):
ԳԱՂՏԱԳՈՂԱՑԵԱԼ, տե՛ս ԳԱՂՏԱԳՈՂԻ:
ԳԱՂՏԱԳՈՂԱՑԻ, տե՛ս ԳԱՂՏԱԳՈՂԻ:
ԳԱՂՏԱԳՈՂԻ, մ. Գողաբար, գողօրէն, ծածկաբար, ի թաքուն, լռիկ:
ԳԱՂՏԱԿԵՐ, ա. Գաղտնակուր:
ԳԱՂՏԱԿԾՈՒԹԻՒՆ, գ. Նենգ, դաւ, դաւաճանութիւն, մեքենաւորութիւն:
ԳԱՂՏԱԿՈՒՐ, գ. (կենդբ.) Գաղտակրայ, տիպ (ծովային երկպատեան խեցեմորթ):
ԳԱՂՏԱԿՐԱՑ, տե՛ս ԳԱՂՏԱԿՈՒՐ:
ԳԱՂՏԱՁԻԳ, ա. Գաղտնաձիգ (գաղտնի տեղից արձակուած):
ԳԱՂՏԱՊԷՍ, տե՛ս ԳԱՂՏԱԲԱՐ:
ԳԱՂՏԻԿ, տե՛ս ԳԱՂՏՈՒԿ:
ԳԱՂՏՆԱԳՆԱՑ ԼԻՆԵԼ, տե՛ս ԳԱՂՏԱԳՆԱՑ ԼԻՆԵԼ:
ԳԱՂՏՆԱԾԱԾՈՒԿ, ա. Գողացիկ (գաղտնի և ծածուկ):
ԳԱՂՏՆԱԿՈՒՐ, տե՛ս ԳԱՂՏԱԿԵՐ:
ԳԱՂՏՆԱՁԻԳ, տե՛ս ԳԱՂՏԱՁԻԳ:
ԳԱՂՏՆԱՇՇՈՒՆՋ, ա. Քսու, փսփսու (գաղտնի փսփսացող):
ԳԱՂՏՆԻ, ա. 1. Ծածուկ, թաքուն, անյայտ: 2. մ. Գաղտ, գաղտաբար, գաղտապէս, ի ծածուկ, գաղտուկ:
- ԳԱՂՏՆԵԱՒ, ԳԱՂՏՆԵՕՔ, Ի ԳԱՂՏՆԻՍ, տե՛ս ԳԱՂՏՆԻ (2):
- ԳԱՂՏՆԻՔ, գ. 1. Գաղտնութիւն, ծածկանք: 2. Խորհուրդ, խորք:

ԳԱՂՏՆՈՒԹԻՒՆ, գ. Ծածկութիւն, գաղտնիք:
ԳԱՂՏՈՒԹԻՒՆ, տե՛ս ԳԱՂՏՆՈՒԹԻՒՆ:
– ԳԱՂՏՈՒԹԵԱՄԲ, մ. Գաղտ, ծածկաբար:
ԳԱՂՏՈՒԿ, տե՛ս ԳԱՂՏ:
ԳԱՄ, գ. 1. Ելք, հնարք, հայթայթանք, ճար: 2. Կռուան (ոտք դնելու՝ յենուելու տեղ): 3. Անգամ, նուագ, հաղ:
– ԳԱՄ ՄԻ, ՈՐ ԳԱՄ ՄԻ, ՈՐ ԻՆՉ ԳԱՄ ՄԻ, մ. Երբեմն, երբէք, միանգամ:
– ԳԱՄՈՒ ԳԱՄՈՒ, մ. Բազում անգամ, ստէպ ստէպ, միշտ:
– ԳԱՄ ՔԱՆ ԶԳԱՄ, մ. Տակաւ, տակաւ տակաւ, ոտն առ ոտն, առ փոքր փոքր, հաղ քան զհաղ, հետզհետէ:
ԳԱՄԱԳԻՏ կամ ԳԱՄԱԳԻՒՏ ԼԻՆԵԼ. Ստնանել, զղջմ ունել:
ԳԱՅԹ, գ. Գայթումն, սայթաքումն:
– ԳԱՅԹ Ի ԳԱՅԹ կամ ԳԱՅԹ Ի ԳԱՅԹԻ, մ. ա. Կաղ ի կաղս, անհաստատ:
ԳԱՅԹԱԳՂԱԿԻՑ, տե՛ս ԳԱՅԹԱԳՂԵՑՈՒՑԻՉ:
ԳԱՅԹԱԳՂԱՆՔ, տե՛ս ԳԱՅԹԱԳՂՈՒԹԻՒՆ:
ԳԱՅԹԱԳՂԵԼ[1], տե՛ս 1. ԳԱՅԹԱԳՂԵԼ (իմ): 2. ԳԱՅԹԱԳՂԵՑՈՒՑԱՆԵԼ:
ԳԱՅԹԱԳՂԵԼ[2] (իմ) կամ ԳԱՅԹԱԿՂԵԼ (իմ), չբ. 1. Գայթել, գթել, սայթաքել, լպրծել: 2. փխբ. Մոլորել, սխալել:
ԳԱՅԹԱԳՂԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. 1. Գայթագղել, մոլորեցուցանել, յանցուցանել, սխալեցուցանել (մեղքի՝ փործանքի՝ որոգայթի մէջ գցել): 2. Գթեցուցանել:
ԳԱՅԹԱԳՂԵՑՈՒՑԻՉ, ա. Գայթագղակից, մոլորեցուցիչ (չար օրինակ տուող):
ԳԱՅԹԱԳՂՈՒԹԻՒՆ կամ ԳԱՅԹԱԿՂՈՒԹԻՒՆ, գ. 1. Գայթագղանք, գայթումն, սայթաքումն: 2. Խոչ, արգել, որոգայթ:
ԳԱՅԹԱԳՂՈՒՄՆ, գ. Գայթագղանք, գայթումն, գլորումն, սխալանք:
ԳԱՅԹԱՆՔ, տե՛ս ԳԱՅԹՈՒՄՆ:
ԳԱՅԹԵԼ, տե՛ս ԳԱՅԹԱԳՂԵԼ[2] (իմ):
ԳԱՅԹՈՏ, ա. 1. Դիւրագայթ, սխալական: 2. Լպրծոտ, լպիրծ:
ԳԱՅԹՈՒՄՆ, տե՛ս ԳԱՅԹԱԳՂՈՒՄՆ:
ԳԱՅԻՍՈՆ, գ. Գեղարդն, նիզակ, տէգ, աշտեայ:
ԳԱՅԼ, գ. Գելոց, սանձ (բերանի կապ՝ երկաթից, փայտից, պարանից են):
ԳԱՅԼԻԿՈՆ, գ. Դուր, չաղափ:
ԳԱՅՌ, գ. 1. Շաղախ, ցիխ, տիղմ, միծ, խոհեր: 2. Աղբ, կեղտ:
ԳԱՅՌԱԼ, տե՛ս ԳԱՅՌԵԼ:
ԳԱՅՌԱՆՈՑ, տե՛ս ԳԱՅՌՈՑ:
ԳԱՅՌԵԼ, չբ. Գայռալ, ընկողմանել, ընկողմնել:
ԳԱՅՌՈՑ, գ. (կզմխս.) Գայռանոց, սըրբան:
ԳԱՅՏ, ա. Խիտ, հոծ:
ԳԱՅՏՈՒԹԻՒՆ, գ. Խտութիւն (գայտ լինելը):
ԳԱՆ, գ. Զաղկ, ճաղկանք:
– ԳԱՆ ԸՄՊԵԼ, տե՛ս ԳԱՆԱՀԱՐԵԼ:
– ԳԱՆ ՀԱՐԿԱՆԵԼ. Գանել, ծեծել, ճաղկել:
ԳԱՆԱԲԵԿ, տե՛ս ԳԱՆԱԼԻՑ:
ԳԱՆԱԼԻ, տե՛ս ԳԱՆԱԼԻՑ:
ԳԱՆԱԼԻՑ, ա. Գանաբեկ, գանալի, գանածեծ, գանահար (սաստիկ՝ չարաչար, ծեծուած, ծեծ կերած):
ԳԱՆԱԾԵԾ, տե՛ս ԳԱՆԱԼԻՑ:
ԳԱՆԱՀԱՐ, տե՛ս ԳԱՆԱԼԻՑ:
ԳԱՆԱՀԱՐԵԼ (իմ), չբ. Գան ըմպել (ծեծ ուտել):
ԳԱՆԳ, գ. Գագաթն, կառափն, ճեղուն գլխոյ, սկաւառակ, ուղղաբոյն:
ԳԱՆԳԱՋԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Հնչեցուցանել, բախել:
ԳԱՆԳԱՏ, գ. Քրթմնջիւն, տրտունջ, բողոք:
ԳԱՆԳԱՏԵԼ (իմ), չբ. Քրթմնջել, տրտընջել, բողոքել:

ԳԱՆԳՈՒՐ, ա. Խոպոպի:
– ԳԱՆԳՈՒՐՔ, գ. յոգն. 1. Խոպոպիք: 2. նման. Վէտք (թեթև ալիքներ):
ԳԱՆԳՈՒՐԱԳԵՂ, տե՛ս ԳԱՆԳՐԱԳԵՂ:
ԳԱՆԳՐԱԳԵՂ, ա. Գանգուրագեղ (գեղեցիկ գանգուրներով):
ԳԱՆԳՐԱՀԵՐ, ա. Գանգուր, քաջագանգուր:
ԳԱՆԵԼ, նբ. 1. Գան հարկանել, ծեծել, ճաղկել, խոշտանգել, չարչարել, հարկանել, բախել: 2. Ջաղել, թշնամանել, պատուհասել, նախատել, խայտառակել, յամօթ առնել:
ԳԱՆՁ, գ. 1. Ինչք (պահած թանկագին իրերի ամբողջութիւն): 2. Գանձարան (գանձ պահելու տեղ): 3. Հարկ, տուրք:
ԳԱՆՁԱԿ, գ. Ընդերք, աղիք, որովայն, փոր:
ԳԱՆՁԱԿՈՂՈՊՈՒՏ, տե՛ս ԳԱՆՁԱՀԱՏ:
ԳԱՆՁԱՀԱՏ, ա. գ. Գանձակողոպուտ, քսակահատու, հատու:
ԳԱՆՁԱՆԱԿ, գ. Գանձարան, գանձատուն, արկղ, քսակ:
ԳԱՆՁԱՇԱՏ, ա. Ընչաշատ, ընչաւէտ:
ԳԱՆՁԱՊԱՀ, ա. գ. Գանձաւոր:
ԳԱՆՁԱՍԷՐ, ա. Արծաթասէր, ընչաքաղց, զօշաքաղ:
ԳԱՆՁԱՏՈՒՆ, գ. Գանձարան, տուն գանձուց:
ԳԱՆՁԱՐԱՆ, գ. Գանձատուն, գանձանակ, շտեմարան:
ԳԱՆՁԱՒՈՐ, տե՛ս ԳԱՆՁԱՊԱՀ:
ԳԱՆՁԵԼ, նբ. Մթերել, ժողովել, դիզել:
ԳԱՆՈՒՄՆ, գ. Գան, տանջանք, խոշտանգանք:
ԳԱՆՉԵԼ, չբ. Հնչել, գոչել, կանչել:
ԳԱՆՉՈՒԹԻՒՆ, գ. Հնչումն, գոչումն, գոչիւն, կանչիւն:
ԳԱՌԱԳԻՂ, գ. 1. Վանդակ (գազանների): 2. նման. Բանտ:
ԳԱՌԱՅՈՒՅԱՆԵԼ, պբ. Կողմնեցուցանել (տալ գայռել, պառկեցնել):
ԳԱՌԵԼ, տե՛ս ԳԱՅՌԵԼ:
ԳԱՌՆ, գ. Որոչ, բուծ:
ԳԱՌՆԱՆԱԼ, չբ. Հանդարտել, մեղմանալ:
ԳԱՐ, ա. մ. Ծուռ, կոր:
– Ի ԳԱՐ ՀԱՅԵԼ. Ընդ ակամբ հայել:
ԳԱՐԳԱՇԵԼ (իմ), տե՛ս ԳԱԳԱՇԵԼ (իմ):
ԳԱՐԵԴԻՒԹ, տե՛ս ԳԱՐԸՆԿԷՑ:
ԳԱՐԵԼԻ կամ ԳԱՐՐԵԼԻ, ա. Ցաւագին, ողորմ, աղէտաւոր:
ԳԱՐԵՀԱՏ կամ ԳԱՐԷՀԱՏ, տե՛ս ԳԱՐԻ (3):
ԳԱՐԵՀԱՑ, տե՛ս ԳԱՐԻ (2):
ԳԱՐԵՂԷՆ, տե՛ս ԳԱՐԻ (4):
ԳԱՐԵՋՈՒՐ կամ ԳԱՐԷՋՈՒՐ, գ. Կասկաջուր:
ԳԱՐԸՆԿԷՑ, ա. գ. Գարեդիւթ, հատընկէց:
ԳԱՐԻ, գ. 1. Կասկ (կեղեւած գարի): 2. Գարեհաց, քաշկէն: 3. Գարեհատ (ծանրութեան չափ): 4. ա. Գարեղէն (գարուց պատրաստուած):
ԳԱՐՀԱՅԵԼ (իմ), չբ. Մորմոքել, տոչորել (սիրտը այրուել):
ԳԱՐՆԱՅԻՆ, տե՛ս ԳԱՐՆԱՆԱՅԻՆ:
ԳԱՐՆԱՅՆԻ, ա. 1. Գարնանային: 2. գ. Գարուն: 3. մ. Ի գարնան:
ԳԱՐՆԱՆԱԲԵՐ, ա. Գարունաբեր:
ԳԱՐՆԱՆԱԲՈՅՍ, տե՛ս ԳԱՐՆԱՆԱԲՈՒՂԽ:
ԳԱՐՆԱՆԱԲՈՒՂԽ, ա. Գարնանաբոյս:
ԳԱՐՆԱՆԱԳԵՂ, ա. Կանաչագեղ (գարնան նման կանաչ):
ԳԱՐՆԱՆԱՋԱՅՐ, ա. Գարնանաշարժ (գարնանը յորդացող):
ԳԱՐՆԱՆԱԼ, տե՛ս ԳԱՐՆԱՆԱՆԱԼ:
ԳԱՐՆԱՆԱՅԻՆ, ա. Գարնային, գարնայնի:
ԳԱՐՆԱՆԱՆԱԼ, չբ. Գարնանալ (գարուն լինել, գարնան փոխուել՝ նմանուել):
ԳԱՐՆԱՆԱՇԱՐԺ, տե՛ս ԳԱՐՆԱՆԱՋԱՅՐ:

ԳԱՐՆԱՆԻ, տե՛ս ԳԱՐՆԱՅՆԻ:
ԳԱՐՇ, տե՛ս ԳԱՐՇԵԼԻ:
ԳԱՐՇԱԲԱՆՈՒԹԻՒՆ, գ. Զազրաբանութիւն:
ԳԱՐՇԱԲԱՐ, մ. Անամօթաբար, գարշելապէս (գարշելի կերպով):
ԳԱՐՇԱԽԱՌՆ, ա. Աղտեղասէր (գարշելի գործերի մէջ խառնուող):
ԳԱՐՇԱՀՈՏՈՒԹԻՒՆ, գ. Ժանտահոտութիւն, ժահահոտութիւն, չարահոտութիւն:
ԳԱՐՇԱՆԱԼ, չբ. Պղծել, աղտեղանալ, ապականել, խառնակել:
ԳԱՐՇԱՆՔ, գ. Գարշութիւն, ամօթ (գարշելի՝ ամօթալի բան):
ԳԱՐՇԱՊԱՐ, գ. 1. Կրունկ: 2. Հետք (ոտքի):
ԳԱՐՇԱՍԷՐ, ա. Աղտեղասէր (գարշելի բաներ սիրող):
ԳԱՐՇԱՏԵՍԻԼ, տե՛ս ԶԱԶՐԱՏԵՍԻԼ:
ԳԱՐՇԵԼ (իմ), չբ. Զզուել, խորշել, պղծգալ, զազրանալ, նողկալ, տաղտկանալ, տաղտկալ:
ԳԱՐՇԵԼԱՊԷՍ, տե՛ս ԳԱՐՇԱԲԱՐ:
ԳԱՐՇԵԼԻ, ա. Գարշ, նողկ, տաղտկալի, զազրելի, զազիր, պիղծ:
ԳԱՐՇԵԼՈՒԹԻՒՆ, տե՛ս ԳԱՐՇՈՒԹԻՒՆ:
ԳԱՐՇԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Նողկացուցանել, տաղտկացուցանել, զազրացուցանել, պղծել, աղտեղել:
ԳԱՐՇՈՒԹԻՒՆ, գ. Գարշելութիւն, պղըծութիւն, զազրութիւն, գարշանք, աղտեղութիւն, աղտ:
ԳԱՐՇՈՒՆԱԿ, ա. Գարշելի, գարշ (գարշելի բաներ կրող):
ԳԱՐՈՒՆ, գ. Գարնայնի:
ԳԱՐՈՒՆԱԲԵՐ, տե՛ս ԳԱՐՆԱՆԱԲԵՐ:
ԳԱՒԱԶ, տե՛ս ԲԱԶԷ:
ԳԱՒԱԶԱՆ, գ. 1. Ցուպ, բիր, մահակ, մական: 2. փխբ. Շառաւիղ, զարմ: 3. փխբ. Իշխանութիւն: 4. փխբ. Խրատ, գան:
ԳԱՒԱԶԱՆԱՒՈՐ, ա. Վարոցաւոր, բրաւոր:
ԳԱՒԱԶԱՆԵՐԳՈՒԹԻՒՆ, տե՛ս ՀԱԳՆԵՐԳՈՒԹԻՒՆ:
ԳԱՒԱԹ, տե՛ս ԲԱԺԱԿ:
ԳԱՒԱՌ, գ. 1. Նահանգ, աշխարհ, հայրենիք (հայրենի երկիր): 2. Իշխանութիւն, վիճակ (եպիսկոպոսական թեմ):
ԳԱՒԱՌԱԿԱԼ, ա. գ. Կուսակալ, ոստիկան:
ԳԱՒԱՌԱԿԱՆ, ա. գ. 1. Գաւառային: 2. Գաւառացի:
ԳԱՒԱՌԱԿԻՑ, ա. գ. Գաւառացի, համագաւառ (միեւնոյն գաւառից):
ԳԱՒԱՌԱՅԻՆ, տե՛ս ԳԱՒԱՌԱԿԱՆ:
ԳԱՒԱՌԱՊԵՏ, գ. 1. Վերակացու, գործակալ, հազարապետ, տնտես: 2. Հոգաբարձու, խնամակալ (որբերի):
ԳԱՒԱՌԱՊԵՏԵԼ, նբ. չբ. Խնամարկել, հոգալ:
ԳԱՒԱՌԱՊԵՏՈՒԹԻՒՆ, գ. 1. Գործակալութիւն, տնտեսութիւն: 2. Վերակացութիւն (որբերի):
ԳԱՒԱՌԱՑԻ, գ. Գաւառական, գաւառակից:
ԳԱՒԻԹ, գ. 1. Բակ: 2. Փարախ, մակաղատեղ: 3. փխբ. Արքայութիւն (երկնքի):
ԳԳՈՒԱՂԵԼ, տե՛ս ԳՐԳՈՒԱՂԵԼ:
ԳԳՈՒԱՆՔ, գ. Գրգանք, փայփայանք, փաղաքշանք:
ԳԳՈՒԵԼ, նբ. 1. Ողջագուրել, փայփայել, գրգել, փաղաքշել, յանձանձել: 2. փխբ. Մեծարել, պատուել:
ԳԳՈՒԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԳԳՈՒԵԼ:
ԳԳՈՒՈՂԱԿԱՆ, ա. Փաղաքշական:
ԳԴԱԿ, գ. Գլխադիր (գլխին դնելու ծածկոյթ):
ԳԵԴԴՈՒՐ, գ. Հէն, յելուզակ, աւազակ, ասպատակաւոր, մեկնազէն:
ԳԵԶՈՒԹԻՒՆ, գ. Պատառուած (ճեղքուածքի նշան):
ԳԵԹ, տե՛ս ԳԷԹ:

ԳԵԼ, ա. Պիրկ:
ԳԵԼԱՐԱՆ, գ. Գելոց, պրկոց:
ԳԵԼՈՑ, տե՛ս ԳԵԼԱՐԱՆ:
ԳԵԼՈՒԼ, նբ. Պրկել, ոլորել, ճնշել, ճմլել, գալարել:
ԳԵԼՈՒՄՆ, գ. Պրկումն, ճնշումն:
ԳԵՀ, գ. Վիհ, փոս, գերեզման:
ԳԵՀԵԱՆ, գ. Հնոց (սովորական):
ԳԵՀԵՆ, գ. Դժոխք (անշէջ հնոցը դժոխքում):
ԳԵՀԵՆԱԲՈՐԲՈՔ, ա. Անշէջ, դժոխային:
ԳԵՂ[1], տե՛ս ԳԻՒՂ:
ԳԵՂ[2], գ. Գեղեցկութիւն:
ԳԵՂԱԳՈՅՆ, ա. Գեղեցկագոյն:
ԳԵՂԱԳՈՒՆԱԿ, ա. Գեղազան, գեղեցիկ:
ԳԵՂԱԶԱՆ, ա. Գեղազանակ, պայծառ, վայելուչ:
ԳԵՂԱԶԱՆԱԿ, տե՛ս ԳԵՂԱԶԱՆ:
ԳԵՂԱԶԱՐԴ, ա. Գեղեցկազարդ, վայելչազարդ, չքնաղ, չքեղ:
ԳԵՂԱԶԱՐԴԵԼ, նբ. Գեղեցկազարդել, պաճուճել, պճնել:
ԳԵՂԱԶԱՐԴՈՒԹԻՒՆ, գ. Գեղեցկազարդութիւն, գեղօն, պայծառութիւն, վայելչութիւն:
ԳԵՂԱԾԻԾԱՂ, ա. Ծիծաղախիտ, զուարթ:
ԳԵՂԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Շինականութիւն:
ԳԵՂԱՂԷՇ, ա. Վայելչագեղ, գեղեցկափայլ, պայծառ, չքնաղ:
ԳԵՂԱՂԷՇԱԲԱՐ, մ. Գեղեցկապէս, վայելչաբար:
ԳԵՂԱՂԷՇԱԳՈՅՆ, ա. Գեղեցկագոյն, չքնաղագեղ:
ԳԵՂԱՂԷՇԱԴԻՏԱԿ, ա. Գեղեցկատես, գեղեցկատեսիլ:
ԳԵՂԱՅԱՐՄԱՐ, ա. Գեղեցկայարմար, վայելուչ, վայելչագեղ:
ԳԵՂԱՅՕՐԷՆ, ա. Գեղապատշաճ, գեղազարդ:
ԳԵՂԱՇԻՏԱԿ, ա. Ուղղաբերձ, գեղեցկադիտակ:
ԳԵՂԱՇՈՒՔ, ա. Գեղեցկաշուք, գեղապանծ:
ԳԵՂԱՊԱՃՈՅՃ, ա. Գեղեցկապաճոյճ, պճնապաճոյճ, գեղապճնեալ, գեղազարդ:
ԳԵՂԱՊԱՆԾ, ա. Ջքնաղ, գեղաղէշ, գեղեցկապանծ, պայծառապարծ:
– ԳԵՂԱՊԱՆԾ ԼԻՆԵԼ. Պանծալ, պարծել:
ԳԵՂԱՊԱՆԾՈՒԹԻՒՆ, գ. Շքեղութիւն, փառաւորութիւն:
ԳԵՂԱՊԱՏԻՒ, ա. Գեղեցկայարմար (գեղեցիկ ու պատուական):
ԳԵՂԱՊԱՏՇԱՃ, ա. Վայելչագեղ, բարեյօդ:
ԳԵՂԱՊՃՆԵԱԼ, տե՛ս ԳԵՂԱՊԱՃՈՅՃ:
ԳԵՂԱՍԱՂԱՐԹ, ա. Սաղարթագեղ, վարսագեղ:
ԳԵՂԱՍՏԱՆԵԱՅՔ, գ. յոգն. Գիւղաստանեայք, գիւղք, կալուածք:
ԳԵՂԱՏԱԽՏԱԿ, ա. գ. Պատկերահան:
ԳԵՂԱՏԻՊ, ա. Գեղեցկատիպ, գեղեցկատեսիլ, գեղեցկակերպ:
ԳԵՂԱՏԽՈՒՐ, ա. Անզարդ, անշուք, մթագին:
ԳԵՂԱՐԴՆ, գ. Արդն:
ԳԵՂԱՐԴՆԱԽՈՑ, ա. Գեղարդնապատառ (գեղարդով խոցուած՝ պատռուած):
ԳԵՂԱՐԴՆԱՊԱՏԱՌ, տե՛ս ԳԵՂԱՐԴՆԱԽՈՑ:
ԳԵՂԱՐԴՆԱՒՈՐ, ա. Արդնակիր, արդնաւոր:
ԳԵՂԱՒՈՐ, ա. 1. Գեղեցիկ: 2. Պարաւոր (պար բռնող):
ԳԵՂԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. Գեղեցկութիւն:
ԳԵՂԱՔԱՂԱՔ, գ. Գիւղաքաղաք, քաղաքագիւղ, աւան:
ԳԵՂԳԵՂ[1], գ. Անիւ:
ԳԵՂԳԵՂ[2], տե՛ս ԳԵՂԳԵՂԱՆՔ:
ԳԵՂԳԵՂԱՆՔ, գ. Գեղգեղ, գեղգեղումն, գեղօն, դայլայլիկք:

ԳԵՂԳԵՂԵԼ, նբ. 1. Եղանակել: 2. Գեղազարդել:

ԳԵՂԳԵՂՈՒՄՆ, տե՛ս ԳԵՂԳԵՂԱՆՔ:

ԳԵՂԵՐԵՍԵԼ, նբ. Պաճուճել, արծնել:

ԳԵՂԵՐՓՆԵԼ, նբ. Ներկանել, ներկել:

ԳԵՂԵՑԻԿ, ա. 1. Գեղաւոր, գեղաղէշ, չքնաղ, վայելչագեղ, գեղեցկագեղ, գեղեցկատես: 2. լայնաբար՝ Վայելուչ, վայելչական, հաճոյական, լաւ, ընտիր, ազնիւ, անոյշ, ախորժելի, գովելի, զարմանալի, քաջ ևն: 3. մ. Գեղեցկաբար, գեղեցկապէս, գեղեցկօրէն, վայելչապէս, բարւոք, յարմարապէս, ի դէպ:

ԳԵՂԵՑԿԱԲԱՆ, ա. Պերճաբան, վայելչաբան, գեղեցկաբարբառ, գեղեցկախօս:

ԳԵՂԵՑԿԱԲԱՆՈՒԹԻՒՆ, գ. Պերճաբանութիւն:

ԳԵՂԵՑԿԱԲԱՐ, տե՛ս ԳԵՂԵՑԻԿ (3):

ԳԵՂԵՑԿԱԲԱՐԲԱՌ, տե՛ս ԳԵՂԵՑԿԱԲԱՆ:

ԳԵՂԵՑԿԱԲԱՐՈՒԹԻՒՆ, գ. Քաջաբարութիւն, լաւաբարութիւն:

ԳԵՂԵՑԿԱԲՈՅՍ, ա. Քաջաբոյս (գեղեցիկ՝ լաւ բուսած):

ԳԵՂԵՑԿԱԲՈՒ(Ղ)Խ, տե՛ս ԲԱՐԵԲՈՒՂԽ:

ԳԵՂԵՑԿԱԳԵՂ, ա. Վայելչագեղ, գեղեցկատեսիլ:

ԳԵՂԵՑԿԱԳՈՐԾ, ա. Գեղեցկարար:

ԳԵՂԵՑԿԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ, գ. Գեղեցկարարութիւն (գեղեցիկ դարձնելը, գեղեցիկ գործ):

ԳԵՂԵՑԿԱԴԱՍՈՒԹԻՒՆ, գ. Գեղեցկակարգութիւն, քաջակարգութիւն (գեղեցիկ դասաւորութիւն՝ կարգ):

ԳԵՂԵՑԿԱԴԷՄ, ա. Չքնաղադէմ:

ԳԵՂԵՑԿԱԴԻՏԱԿ, ա. Գեղեցկատեսիլ:

ԳԵՂԵՑԿԱԴԻՐ, ա. Գեղեցկայարմար (գեղեցիկ դիրքով):

ԳԵՂԵՑԿԱԶԱՆ, տե՛ս ԳԵՂԵՑԿԱԿԵՐՊ:

ԳԵՂԵՑԿԱԶԱՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ԳԵՂԵՑԿԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ:

ԳԵՂԵՑԿԱԶԱՐԴ, ա. Գեղազարդ, վայելչազարդ, բարեզարդ, գեղեցիկ:

ԳԵՂԵՑԿԱԶԱՐԴԵԼ, տե՛ս ԳԵՂԱԶԱՐԴԵԼ:

ԳԵՂԵՑԿԱԶԱՐԴՈՒԹԻՒՆ, գ. Բարեզարդութիւն, վայելչութիւն, գեղեցկութիւն:

ԳԵՂԵՑԿԱԹՈՅՐ, ա. Երփնագեղ (գեղեցիկ գոյնով):

ԳԵՂԵՑԿԱԽԱՌՆ, ա. Բարեխառն, բարեյարմար:

ԳԵՂԵՑԿԱԽՕՍ, տե՛ս ԳԵՂԵՑԿԱԲԱՆ:

ԳԵՂԵՑԿԱԾԱՂԻԿ, ա. Վայելչածաղիկ, փխբ. նորաբողբոջ, մատաղ:

ԳԵՂԵՑԿԱԾԱԻԱԼ, ա. Վայելչատարած:

ԳԵՂԵՑԿԱԿԱՐԳ, տե՛ս ԲԱՐԵԿԱՐԳ:

ԳԵՂԵՑԿԱԿԱՐԳՈՒԹԻՒՆ, տե՛ս ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԻՒՆ և ԳԵՂԵՑԿԱԴԱՍՈՒԹԻՒՆ:

ԳԵՂԵՑԿԱԿԵՐՊ, ա. Գեղեցկատեսիլ, գեղեցկազան:

ԳԵՂԵՑԿԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ, գ. Գեղեցկատեսութիւն, գեղեցկազանութիւն:

ԳԵՂԵՑԿԱՀՐԱՇ, ա. Հրաշագեղ:

ԳԵՂԵՑԿԱՁԱՅՆ, ա. Քաղցրաձայն:

ԳԵՂԵՑԿԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ, ա. Քաղցրաձայնութիւն::

ԳԵՂԵՑԿԱՁԵՒ, ա. Բարեձև, բարեկարգ:

ԳԵՂԵՑԿԱՁԻ, ա. Քաջաձի:

ԳԵՂԵՑԿԱՁԻԳ, տե՛ս ԳԵՂԵՑԿԱՂԵՂՆ:

ԳԵՂԵՑԿԱՂԵՂՆ, ա. Գեղեցկաձիգ, քաջաղեղն:

ԳԵՂԵՑԿԱՃԱՇԱԿ, ա. Քաղցրաճաշակ, քաղցրահամ:

ԳԵՂԵՑԿԱՄԱՍՆ, ա. Համաչափ:

ԳԵՂԵՑԿԱՄԱՍՆՈՒԹԻՒՆ, գ. Համաչափութիւն, չափակցութիւն:

ԳԵՂԵՑԿԱՅԱՐՄԱՐ, ա. Գեղայարմար, գեղեցկաշէն, բարեկարգ, բարեձև:

ԳԵՂԵՑԿԱՅԱՐՄԱՐՈՒԹԻՒՆ, գ. Գեղեցկայօդութիւն, բարեչափութիւն:

ԳԵՂԵՑԿԱՅՕԴՈՒԹԻՒՆ, տե՛ս ԳԵՂԵՑԿԱՅԱՐՄԱՐՈՒԹԻՒՆ:

ԳԵՂԵՑԿԱՆԱԶ, ա. Գերապանծ, չքեղ, չքնաղ:
ԳԵՂԵՑԿԱՆԱԼ, չբ. 1. Վայելչանալ: 2. (յունական ոճով) Պարծել, պերճանալ, ճոխանալ:
ԳԵՂԵՑԿԱՆԻՍՏ, ա. Լայնանիստ:
ԳԵՂԵՑԿԱՆՈՒԱԳ, ա. Քաղցրաձայն, քաղցրալուր:
ԳԵՂԵՑԿԱՇԷՆ, ա. Գեղեցկայարմար, պայծառակերտ:
ԳԵՂԵՑԿԱՇՈՒՔ, ա. Գեղաշուք, չքեղ, փառացի, փառաւոր:
ԳԵՂԵՑԿԱՊԱՃՈՅՃ, տե՛ս ԳԵՂԱՊԱՃՈՅՃ:
ԳԵՂԵՑԿԱՊԱՆԾ, տե՛ս ԳԵՂԱՊԱՆԾ:
ԳԵՂԵՑԿԱՊԱՐԾԻԿ, ա. Պանծալի:
ԳԵՂԵՑԿԱՊԷՍ, տե՛ս ԳԵՂԵՑԻԿ (3):
ԳԵՂԵՑԿԱՍՏԵՂՆ, ա. Գեղեցկուղէշ, գեղուղէշ, շնորհաշառաւիղ:
ԳԵՂԵՑԿԱՎԱՅԵԼՈՒՉ, ա. Բարեվայելուչ:
ԳԵՂԵՑԿԱՏԵՍ, տե՛ս ԳԵՂԵՑԿԱՏԵՍԻԼ:
ԳԵՂԵՑԿԱՏԵՍԱԿ, տե՛ս ԳԵՂԵՑԿԱՏԵՍԻԼ:
ԳԵՂԵՑԿԱՏԵՍԻԼ, ա. 1. Գեղեցկատես, գեղեցկատեսակ, գեղեցկակերպ, վայելչագեղ: 2. (յունաբանութեամբ) Յայտնատեսիլ, քաջայայտ, պայծառ:
ԳԵՂԵՑԿԱՏԵՍՈՒԹԻՒՆ, գ. Գեղեցկութիւն:
ԳԵՂԵՑԿԱՏԻՊ, տե՛ս ԳԵՂԱՏԻՊ:
ԳԵՂԵՑԿԱՐԱՐ, ա. Գեղեցկագործ:
ԳԵՂԵՑԿԱՐԱՐՈՒԹԻՒՆ, տե՛ս ԳԵՂԵՑԿԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ:
ԳԵՂԵՑԿԱՐՈՒԵՍՏ, ա. Քաջարուեստ:
ԳԵՂԵՑԿԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Վայելչացուցանել, պճնել:
ԳԵՂԵՑԿԱՓԱՅԼ, ա. Վայելչափայլ:
ԳԵՂԵՑԿՈՐԴՈՒԹԻՒՆ, տե՛ս ԲԱԶՄՈՐԴՈՒԹԻՒՆ:
ԳԵՂԵՑԿՈՐՈՇԱԲԱՐ, մ. Ընտրողաբար (գեղեցիկ որոշմամբ):
ԳԵՂԵՑԿՈՒԹԻՒՆ, գ. 1. Գեղ, գեղեցկատեսութիւն, վայելչութիւն, բարեչափութիւն: 2. Պայծառութիւն, լաւութիւն, պատուականութիւն:
ԳԵՂԵՑԿՈՒՂԷՇ, տե՛ս ԳԵՂԵՑԿԱՍՏԵՂՆ:
ԳԵՂԵՑԿՕՐԷՆ, տե՛ս ԳԵՂԵՑԻԿ (3):
ԳԵՂԵՒ, տե՛ս ԿՈՅՍ[1] (1):
ԳԵՂՋ, գ. (բսբ.) Պատատուկ:
ԳԵՂՁԱԼ, ԳԵՂՁԵԼ (իմ), չբ. 1. Ըղձալ, փափագել, տենչալ: 2. Փղձկալ, փղձկել:
ԳԵՂՁՈՒՄՆ, գ. 1. Ըղձումն, ըղձանք, տենչ, փափագ: 2. Փղձկումն:
ԳԵՂՄՆ, գ. Բուրդ, ասր:
ԳԵՂՄՆԱԲԱՐՁ, տե՛ս ԳԵՂՄՆԱՒՈՐ:
ԳԵՂՄՆԱՒՈՐ, ա. Գեղմնաբարձ, բրդազգեաց, ասուեղ:
ԳԵՂՈՒՂԷՇ, տե՛ս ԳԵՂԵՑԿՈՒՂԷՇ:
ԳԵՂՋԱՅԻՆ, ա. Գեղջկեայ, գեղջուկ, շինական:
ԳԵՂՋԵԱՅ, տե՛ս ԳԵՂՋԱՅԻՆ:
ԳԵՂՋՈՒԿ, ա. գ. 1. Շինական, շինացի: 2. փխբ. Ռամիկ, անկիրթ, տգէտ: 3. փխբ. Ռամկական, անշուք:
ԳԵՂՏ, ա. Խայտաբղէտ, գոյնագոյն:
ԳԵՂՕՆ, գ. 1. Գեղգեղանք: 2. Գեղազարդութիւն:
ԳԵՆԵՍԻՍ, գ. Հարազատ:
ԳԵՌ, տե՛ս ԳԱՅՌ:
ԳԵՌԱԹԱԹԱԽ, ա. Տղմաթաթաւ, գարշ:
ԳԵՍՏՐԱՍ, գ. Որսորդ:
ԳԵՏԱԲԱՐ, մ. Գետօրէն:
ԳԵՏԱԽԱՌՆՈՒՆՔ, գ. Խառնուրդ:
ԳԵՏԱԿՈՒՐ ԱՌՆԵԼ. Գետասույզ առնել, գետավէժ առնել:
ԳԵՏԱՀԵՏԵԼ, նբ. չբ. Գետահոսել:
ԳԵՏԱՀՈՍԵԼ, տե՛ս ԳԵՏԱՀԵՏԵԼ:
ԳԵՏԱՄՈՅՆ, տե՛ս ԳԵՏԱՎԷԺ:
– ԳԵՏԱՄՈՅՆՍ ԱՌՆԵԼ, տե՛ս ԳԵՏԱՎԷԺ ԱՌՆԵԼ:
ԳԵՏԱՆԱԼ, չբ. Գետել:

ԳԵՏԱՍՈՅՑ ԱՌՆԵԼ, տե՛ս ԳԵՏԱԿՈՒՐ ԱՌՆԵԼ:
ԳԵՏԱՍՈՅՑ ԼԻՆԵԼ, տե՛ս ԳԵՏԱՎԷԺ ԼԻՆԵԼ:
ԳԵՏԱՎԷԺ, ա. Գետակուր, գետամոյն, գետասոյզ, գետընկէց, գետընկեցիկ:
– ԳԵՏԱՎԷԺ կամ ԳԵՏԱՎԷԺՍ ԱՌՆԵԼ. Գետամոյնս առնել, գետակուր առնել:
– ԳԵՏԱՎԷԺ ԼԻՆԵԼ. Գետասոյզ լինել:
ԳԵՏԱՓՆ, տե՛ս ԳԵՏԵԶՐ:
ԳԵՏԵԶՐ, գ. Գետափն:
ԳԵՏԵԼ, տե՛ս ԳԵՏԱՆԱԼ:
ԳԵՏԸՆԿԵՑԻԿ, ԳԵՏԸՆԿԷՑ, տե՛ս ԳԵՏԱՎԷԺ:
ԳԵՏԻՆ, գ. Երկիր, հող:
ԳԵՏՆԱԲԵԿ, ա. Գետնախշտեայ, գետնախշտի, գետնատարած, հողախշտի:
ԳԵՏՆԱԲԻՐ, ա. Երկրաբեր:
ԳԵՏՆԱԳՆԱՑ, ա. 1. Երկրագնաց: 2. մ. Հետիոտ, հետիոտս:
ԳԵՏՆԱԹԱՒԱԼ, ա. մ. Հողաթաւալ:
ԳԵՏՆԱԽՇՏԵԱՅ, տե՛ս ԳԵՏՆԱԲԵԿ:
ԳԵՏՆԱԽՇՏԻ, տե՛ս ԳԵՏՆԱԲԵԿ:
– ԳԵՏՆԱԽՇՏԻ ԼԻՆԵԼ. Գետնախշտել, գետնախշտիկ լինել, գետնատարած լինել:
ԳԵՏՆԱԽՇՏԵԼ (իմ), տե՛ս ԳԵՏՆԱԽՇՏԻ ԼԻՆԵԼ:
ԳԵՏՆԱԽՇՏԻԿ ԼԻՆԵԼ, տե՛ս ԳԵՏՆԱԽՇՏԻ ԼԻՆԵԼ:
ԳԵՏՆԱԽՇՏՈՒԹԻՒՆ, գ. Գետնատարած անկողին, գետնատարածութիւն:
ԳԵՏՆԱԽՈՐՀՈՒՐԴ, ա. Աշխարհասէր, երկրասէր:
ԳԵՏՆԱԾԱԾԿՈՅԹ ՎԵՐԱՐԿՈՒ, գ. Երկրապատեան վերարկու, գերեզման, հող:
ԳԵՏՆԱԿՈԽ, ԳԵՏՆԱԿՈԽՈՂ, ա. Երկրակոխ, երկրաւոր, երկրածին, մահկանացու:
ԳԵՏՆԱԿՈՉ, գ. Գետնահարց, գետնաձայն:
ԳԵՏՆԱՀԱՐՑ, տե՛ս ԳԵՏՆԱԿՈՉ:
ԳԵՏՆԱՄՈՒՏ, ա. Սորամուտ:
ԳԵՏՆԱՆԱԽԱՆՁ, ա. Ստորանախանձ, երկրանախանձ, գետնատարած, գետնասող, գետնաքարշ, վայրաբեր, ստորին, փխբ. անարգ, նուաստ:
ԳԵՏՆԱՆԱԽԱՆՁՈՒԹԻՒՆ, գ. Գետնաքարշութիւն, գետնասողութիւն, վայրաբերութիւն:
ԳԵՏՆԱՇԱՐԺ, գ. 1. Շարժ, սասանութիւն: 2. ա. Գետնասող:
ԳԵՏՆԱՉԱՓՈՒԹԻՒՆ, գ. Երկրաչափութիւն, երկրաբաժանական:
ԳԵՏՆԱՍՈՂ, տե՛ս ԳԵՏՆԱՆԱԽԱՆՁ:
ԳԵՏՆԱՍՈՂՈՒԹԻՒՆ, տե՛ս ԳԵՏՆԱՆԱԽԱՆՁՈՒԹԻՒՆ:
ԳԵՏՆԱՍՏՈՐ, ՐՔ, գ. Պարիխ:
ԳԵՏՆԱՏԱՐԱԾ, տե՛ս 1. ԳԵՏՆԱԲԵԿ: 2. ԳԵՏՆԱՆԱԽԱՆՁ:
– ԳԵՏՆԱՏԱՐԱԾ ԼԻՆԵԼ, տե՛ս ԳԵՏՆԱԽՇՏԻ ԼԻՆԵԼ:
ԳԵՏՆԱՏԱՐԱԾ ԱՆԿՈՂԻՆ, տե՛ս ԳԵՏՆԱԽՇՏՈՒԹԻՒՆ:
ԳԵՏՆԱՏԱՐԱԾՈՒԹԻՒՆ, տե՛ս ԳԵՏՆԱԽՇՏՈՒԹԻՒՆ:
ԳԵՏՆԱՏՈՒՆ, գ. Գետնափորք:
ԳԵՏՆԱՓՈՐ, ա. Ստորերկրեայ:
– ԳԵՏՆԱՓՈՐՔ, գ. Գետնատուն:
ԳԵՏՆԱՔԱՐՇ, տե՛ս ԳԵՏՆԱՆԱԽԱՆՁ:
ԳԵՏՆԱՔԱՐՇԵԼ (իմ), չբ. Գետնաքարշ լինել:
ԳԵՏՆԱՔԱՐՇ ԼԻՆԵԼ, տե՛ս ԳԵՏՆԱՔԱՐՇԵԼ (իմ):
ԳԵՏՆԱՔԱՐՇՈՒԹԻՒՆ, տե՛ս ԳԵՏՆԱՆԱԽԱՆՁՈՒԹԻՒՆ:
ԳԵՏՕՐԷՆ, տե՛ս ԳԵՏԱԲԱՐ:
ԳԵՐ[1], 1. նխդ. Ի վեր քան, գեր քան, առաւել քան, քան: 2. ա. Գերագոյն, աւագ:
ԳԵՐ[2], գ. Ողբ, լաց, կոծ:
– ԳԵՐ ԳՈՐԾԵԼ. Ողբալ, լալ:
ԳԵՐԱԲՂԽԵԼ, նբ. Ցորդել, զեղուլ:
ԳԵՐԱԲՆԱՊԷՍ, տե՛ս ԳԵՐԲՆԱԲԱՐ:

ԳԵՐԱԲՆՈՒԹԻՒՆ, գ. Գերբնականութիւն:

ԳԵՐԱԲՈՒ(Ղ)Խ, ա. Յորդաբու(ղ)խ:

ԳԵՐԱԲՈՒՆ, ա. Ջնաշխարհիկ, գերահրաշ:

ԳԵՐԱԳՈՅԱԲԱՐ, տե՛ս ԳԵՐԱԳՈՅԱՊԷՍ:

ԳԵՐԱԳՈՅԱԿ, ա. Գերագոյական:

ԳԵՐԱԳՈՅԱԿԱՆ, տե՛ս ԳԵՐԱԳՈՅԱԿ:

ԳԵՐԱԳՈՅԱՊԷՍ, մ. Գերագոյաբար:

ԳԵՐԱԳՈՅՆ, ա. Վերագոյն, վեհագոյն, ծայրագոյն, սաստկագոյն, գերազանց, գեր քան:

ԳԵՐԱԳՈՅՈՒԹԻՒՆ, գ. Գերունակութիւն:

ԳԵՐԱԳՈՒՆԱԿ, ա. Գերագունական, գերագոյն, գերազանց:

ԳԵՐԱԳՈՒՆԱԿԱՆ, տե՛ս ԳԵՐԱԳՈՒՆԱԿ:

ԳԵՐԱԳՈՒՆԱԿԱՊԷՍ, մ. Գերազանցօրէն, գերապէս (գերագոյն կերպով):

ԳԵՐԱԳՈՒՆԱԿՈՒԹԻՒՆ, գ. Գերագունութիւն, գերակայութիւն, գերագոյութիւն, գերազանցութիւն:

ԳԵՐԱԳՈՒՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ԳԵՐԱԳՈՒՆԱԿՈՒԹԻՒՆ:

ԳԵՐԱԴՐԱԿԱՆ, ա. Բարձրագոյն, գերաստիճան, գերապանծ, վերին, վսեմ:

ԳԵՐԱԴՐԱՊԷՍ, մ. Գերաբնապէս, գերբնաբար:

ԳԵՐԱԴՐԵԼ, նբ. 1. Վերակարգել: 2. Վերադրել:

ԳԵՐԱԴՐՈՒԹԻՒՆ, գ. Վերադրութիւն, յաւելուած, առաւելութիւն, գերազանցութիւն:

ԳԵՐԱԶԱՆՑ, ա. 1. Բարձրագոյն, վերագոյն, գերագոյն, վեհագոյն, վսեմագոյն, առաւելական, ի վեր քան: 2. մ. Գերազանցօրէն:

ԳԵՐԱԶԱՆՑԱԿԱՆ, տե՛ս ԳԵՐԱԶԱՆՑ:

ԳԵՐԱԶԱՆՑԵԼ, չբ. Առաւելուլ, անցանել զանցանել, գերունակ լինել, զանցանել ըստ չափ:

ԳԵՐԱԶԱՆՑԻԿ, տե՛ս ԳԵՐԱԶԱՆՑ:

ԳԵՐԱԶԱՆՑՈՒԹԻՒՆ, գ. Գերագունութիւն, առաւելութիւն, մեծութիւն, անչափութիւն:

ԳԵՐԱԶԱՆՑՕՐԷՆ, տե՛ս ԳԵՐԱԶԱՆՑ (2):

ԳԵՐԱԶԱՐԴ, ա. 1. Վայելչազարդ, չքեղ, պանծալի: 2. Գերաշխարհիկ, չնաշխարհիկ:

ԳԵՐԱԶԱՐԴԱԲԱՐ, մ. Գերազարդապէս, չքեղագոյն, փառօք, գերաշխարհապէս:

ԳԵՐԱԶԱՐԴԱՊԷՍ, տե՛ս ԳԵՐԱԶԱՐԴԱԲԱՐ:

ԳԵՐԱԶԱՐԴԵԱԼ, ա. Գերազարդ, գերաշխարհիկ:

ԳԵՐԱԶԱՐԴՈՒԹԻՒՆ, գ. Հրաշազարդութիւն (գերազարդ լինելը):

ԳԵՐԱԶՕՐ, ա. Ամենազօր, մեծազօր, ամենակարող:

ԳԵՐԱԹՌՉԵԼ (իմ), չբ. Վերաթռչել, վերաթեւել:

ԳԵՐԱԼԻՐ, ա. Լիակատար, ամենակատար:

ԳԵՐԱԼՈՒՍՈՒԹԻՒՆ, գ. Պայծառութիւն (արտակարգ լուսաւորութիւն):

ԳԵՐԱԼՐԱՊԷՍ, մ. Կատարելապէս (գերալիր կերպով):

ԳԵՐԱԼՐՈՒԹԻՒՆ, գ. Կատարելութիւն, մեծութիւն (գերալիր լինելը):

ԳԵՐԱԽԱՆՁ, ա. Յոխորտ, խրոխտ, մեծամիտ, ամբարտաւան:

ԳԵՐԱԾԱՒԱԼ, ա. Գերայարձակեալ (շատ ծաւալուած՝ տարածուած):

ԳԵՐԱԿԱՅ, ա. Ծայրագոյն, գերագոյն:

ԳԵՐԱԿԱՅԱԲԱՐ, մ. Գերազանցօրէն (իբրև գերակայ):

ԳԵՐԱԿԱՅԱՑԵԱԼ, տե՛ս ԳԵՐԱԿԱՅԵԱԼ:

ԳԵՐԱԿԱՅԵԱԼ, ա. Գերակայացեալ, գերաստիճան (գերակայ եղած):

ԳԵՐԱԿԱՅՈՒԹԻՒՆ, գ. Բարձրութիւն, գերազանցութիւն (գերակայ լինելը):

ԺՈՂՈՎԵՏՂ, գ. 1. Ժողովարան, յարկ: 2. ժողովրդանոց (հրեաների ժողովարան): 3. Եկեղեցի, աղօթատուն:
ԺՈՂՈՎԻՉ, ա. Ժողովող, հաւաքիչ:
ԺՈՂՈՎՈՂ, տե՛ս ԺՈՂՈՎԻՉ:
ԺՈՂՈՎՈՒՄՆ, գ. Ժողով (ժողովելը, ժողովուելը):
ԺՈՂՈՎՈՒՐԴ, գ. 1. Ազգ, ազն: 2. Ժողով, բազմութիւն, մարդկութիւն, մարդիկ: 3. Ամբոխ, ռամիկ, խառնաղանջ: 4. Գերդաստան: 5. Ժողովրդական, աշխարհիկ: 6. Ժողովարան, ժողովրդանոց (հրեաների):
ԺՈՂՈՎՐԴԱԲՆԱԿ, ա. Մարդաբնակ:
ԺՈՂՈՎՐԴԱԳԼՈՒԽ, գ. Ժողովրդապետ:
ԺՈՂՈՎՐԴԱԿԱԼ, ա. Առաջնորդական:
ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ, գ. Աշխարհական, աշխարհիկ (հակադրութեամբ հոգեւորականի):
ԺՈՂՈՎՐԴԱՆՈՑ, գ. 1. Ժողովարան (հրեաների): 2. Եկեղեցի, տաճար:
ԺՈՂՈՎՐԴԱՊԵՏ, գ. Ժողովրդագլուխ (հրեաների ժողովրդանոցի գլխաւորը):
ԺՈՅԺ ՈՒՆԵԼ (իմ), չբ. Ժուժալ, ժուժել, ժուժկալել, տոկալ, համբերել, հանդուրժել, դիմանալ, տանել, զդէմ ունել:
ԺՈՒԱՅԹԵԼ (իմ), տե՛ս ՇՈՒԱՅՏԵԼ (իմ):
ԺՈՒԺԱԼ, ԺՈՒԺԵԼ, տե՛ս ԺՈՅԺ ՈՒՆԵԼ (իմ):
ԺՈՒԺԿԱԼ, ա. 1. Պարկեշտ, զգաստ, չափաւոր, ողջախոհ: 2. Պահացող, սակաւապէտ: 3. Տոկուն, համբերող, համբերատար, ուժեղ, պնդակազմ, զօրաւոր, քաջ:
– ԺՈՒԺԿԱԼ ԼԻՆԵԼ՝ ԿԱԼ, տե՛ս ԺՈՅԺ ՈՒՆԵԼ (իմ) և ԺՈՒԺԿԱԼԵԼ:
ԺՈՒԺԿԱԼԱԲԱՐ, տե՛ս ԺՈՒԺԿԱԼԱՊԷՍ:
ԺՈՒԺԿԱԼԱԳՈՅՆ, ա. Պնդագոյն (աւելի ժուժկալ):
ԺՈՒԺԿԱԼԱԿԱՆ, ա. Ճգնողական:
ԺՈՒԺԿԱԼԱՊԷՍ, մ. Ժուժկալաբար, պընդապէս, արիաբար:
ԺՈՒԺԿԱԼԵԼ, չբ. 1. տե՛ս ԺՈՅԺ ՈՒՆԵԼ (իմ): 2. Զօրանալ, պինդ կալ, պնդել զանձն: 3. Հրաժարել (ինքն իրեն զսպել):
ԺՈՒԺԿԱԼՈՒԹԻՒՆ, գ. 1. Համբերութիւն, ըմբերութիւն, պնդութիւն, արութիւն: 2. Չափաւորութիւն, սակաւապիտութիւն, պարկեշտութիւն, պահացողութիւն, ճըգնութիւն:
ԺՊԻՏ, գ. Ժպտումն:
ԺՊԻՐՀ, ա. Անամօթ, լիրբ, լրբենի, անպատկառ, յանդուգն, ժմերտ:
ԺՊՏԵԼ (իմ), չբ. Ժմտել:
ԺՊՏՈՒՄՆ, գ. Ժպիտ (ժպտալը):
ԺՊՐՀԵԼ (իմ), չբ. Յանդգնել, իշխել, համարձակել, ժտել:
ԺՊՐՀԵՐԵՍ, ա. Ժպիրհ (ժպիրհ երեսով):
ԺՊՐՀՈՒԹԻՒՆ, գ. Յանդգնութիւն, լրբութիւն, անամօթութիւն, համարձակութիւն:
ԺՏԵԼ$^{1}$, նբ. 1. Թախանձել, աղաչել, պաղատել, աղերսել: 2. չբ. տե՛ս ԺՏԵԼ$^{2}$ (իմ):
ԺՏԵԼ$^{2}$(իմ), չբ. 1. Իշխել, յանդգնել, համարձակել, ժպրհել, անամօթել: 2. հբ. տե՛ս ԺՏԵԼ$^{1}$:
ԺՏԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Համարձակեցուցանել (ժտել տալ):
ԺՏՈՒԹԻՒՆ, գ. 1. Պաղատ, պաղատանք, թախանձանք, աղերսանք: 2. Համարձակութիւն, անամօթութիւն:
ԺՐԱԳԼՈՒԽ, ա. Արի, առաքինի, անձանձրոյթ, անձանձիր, փութկոտ, ժրաջան, գործասէր, գործունեայ, գործօնեայ:
ԺՐԱԿԱՆ, ա. Ժիր, արի:
ԺՐԱՆԱԼ, չբ. Արիանալ, զօրանալ, ժուժկալել, տոկալ:
ԺՐԱՆՋՆԱԿ, ա. Ժիր, ժրագլուխ, գործունեայ:
ԺՐԱՋԱՆ, ա. Ժիր, անխոնջ, անձանձիր:
ԺՐԱՍԷՐ, ա. Ժրաջան, գործասէր:
ԺՐԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Զօրացուցանել, քաջալերել (ժիր դարձնել):
ԺՐԵԼ, (իմ), տե՛ս ԺՐԱՆԱԼ:
ԺՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Պնդութիւն, արիութիւն: 2. Փոյթ, ջանասիրութիւն, երկասիրութիւն, աշխատասիրութիւն:

# Ի

Ի ԲԱՐՁՈՒՍՏ, տե՛ս ԲԱՐՁՈՒՍՏ:
Ի ԲԱՑ[1], մ. ՅԱՅՏՆԱՊԷՍ (տե՛ս ԲԱՑ):
Ի ԲԱՑ[2], մ. 1. Հեռի, մեկուսի: 2. Յետ, յետս, անդրէն: 3. Ի դուրս, արտաքս:
- Ի ԲԱՑ ԱՌՆԵԼ. Հեռացուցանել, օտարացուցանել:
- Ի ԲԱՑ ԱՌՆՈՒԼ, Ի ԲԱՑ ԲԱՌՆԱԼ, տե՛ս ԲԱՑԱԲԱՌՆԱԼ:
- Ի ԲԱՑ ԲԱՐՁՈՒՄՆ, տե՛ս ԲԱՑԲԱՐՁՈՒՄՆ:
- Ի ԲԱՑ ԴԱՌՆԱԼ. 1. Դառնալ, յետս դառնալ, վերադարձել: 2. Յետս կալ, հրաժարել:
- Ի ԲԱՑ ԹՈՂԱՑՈՒՑԱՆԵԼ. Թոյլ տալ:
- Ի ԲԱՑ ԿԱԼ. Յետս կալ, ի բաց դառնալ:
- Ի ԲԱՑ ԿԱՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԲԱՑԱԿԱՑՈՒՑԱՆԵԼ:
Ի ԲԱՑԵԱՑ, նխդ. մ. ա. Հեռի, մեկուսի: 2. Ի բացուստ, ի հեռաստանէ: 3. Բացօթեայ:
Ի ԲԱՑԷ, տե՛ս ԲԱՑԷ:
Ի ԲԱՑԷ Ի ԲԱՑ, տե՛ս ԲԱՑԷ Ի ԲԱՑ:
Ի ԲԱՑ ԸՆԿԵՑԻԿ, տե՛ս ԲԱՑԸՆԿԵՑԻԿ:
Ի ԲԱՑԻ, տե՛ս ԲԱՑ-ի տակ:
Ի ԲԱՑՈՒՍՏ, տե՛ս ԲԱՑՈՒՍՏ:
Ի ԲԱ՛Ց ՏԱՐ, մ. ձ. Քա՛ւ լիցի, քա՛ւ քեզ՝ ի քէն, փարգաստ:
Ի ԲԱՑ ՓԱԽՉՈՂԱԿԱՆ, ա. Զգուշողական:
ԻԲԻԴ, տե՛ս Քաջահաւ:
Ի ԲՆԷ, տե՛ս ԲՈՒՆ-ի տակ:
ԻԲՐ, 1. նխդ. Իբրև, որպէս, պէս, նման: 2. մ. շ. Իբրու, ըստ որում, զոր օրինակ: 3. մ. Յորժամ, մինչ, մինչդեռ, երբ: 4. եղբ. Զիա՞րդ, վասն է՞ր: 5. շ. Իբր թէ, որպէս թէ: 6. շ. (յունաբանութեամբ) Որպէս զի, որ:
- ԻԲՐ ԱՅՆ ԹԷ, ԻԲՐ ԵԹԷ, ԻԲՐ ԹԷ, տե՛ս ԻԲՐԵՒ ԱՅՆ ԹԷ:
- ԻԲՐ ԶԻ, շ. 1. Իբրև զի, որովհետև, քանզի, վասն զի: 2. (յունական ոճով) Մինչ զի, մինչև: 3. Իբր թէ, որպէս թէ:
- ԻԲՐ ՈՉ ԵԹԷ, ԻԲՐ ՈՉ ԹԷ, տե՛ս ԻԲՐԵՒ ՈՉ ԵԹԷ:
ԻԲՐԵՒ, 1. նխդ. Իբր, որպէս, նման, պէս: 2. մ. Յորժամ, մինչ, երբ: 3. (յունական և լատինական ոճով) Յետ որոյ: 4. մ. շ. Իբրու, որպէս, ըստ որում, զոր օրինակ: 5. շ. Որպէս թէ, իբր թէ, գրեթէ: 6. շ. Որովհետև, իբրև զի, իբր զի, վասն զի, քանզի:
- ԻԲՐԵՒ ԱՅՆ ԹԷ, ԻԲՐԵՒ ԶԻ ԹԷ, ԻԲՐԵՒ ԹԷ, շ. Իբր այն թէ, իբր եթէ, իբր թէ, իբրու այն թէ, իբրու եթէ, իբրու թէ, որպէս թէ:
- ԻԲՐԵՒ ԶԻ, տե՛ս ԻԲՐ ԶԻ (1, 2):
- ԻԲՐԵՒ ՈՉ ԹԷ, շ. Իբր ոչ եթէ, իբր ոչ թէ:
ԻԲՐՈՒ, տե՛ս ԻԲՐ, ԻԲՐԵՒ:
- ԻԲՐՈՒ ԱՅՆ ԹԷ, ԻԲՐՈՒ ԵԹԷ, ԻԲՐՈՒ ԹԷ, տե՛ս ԻԲՐԵՒ ԱՅՆ ԹԷ:
ԻԲՐ ՕՐԻՆԱԿ ԻՄՆ, ԻԲՐՈՒ ՕՐԻՆԱԿ ԻՄՆ, տե՛ս ՕՐԻՆԱԿ ԻՄՆ:
ԻԳ, տե՛ս ԷԳ:
ԻԳԱԳՈՅՆ, ա. Տկարագոյն (էգի նման), թուլագոյն, մեղկագոյն:
ԻԳԱԽԱԶՈՒԹԻՒՆ, տե՛ս ԻԳԱՄՈԼՈՒԹԻՒՆ:
ԻԳԱԿԱՆ, ա. 1. Կնոջական, կանացի: 2. Մեղկ, կնամարդի, թուլամորթ:
-ԻԳԱԿԱՆՆ, գ. Էգ, կին, կին մարդ:
ԻԳԱՄՈԼ, ա. Իգամոլի, իգասէր, իգատենչ, կնամոլ, կնասէր:
ԻԳԱՄՈԼԵԼ (իմ), չբ. Իգամոլ լինել, մոլել:
ԻԳԱՄՈԼԻ, տե՛ս ԻԳԱՄՈԼ:
ԻԳԱՄՈԼՈՒԹԻՒՆ, գ. Իգախազութիւն, պագշոտութիւն:
ԻԳԱՆԱԼ, չբ. Կնատել, թուլանալ, մեղկանալ:
- ԻԳԱՑԵԱԼ, տե՛ս ԻԳԱՍԷՐ (2):
ԻԳԱՍԷՐ, ա. 1. Կնասէր, կնոջասէր, ցանկասէր, իգատենչ, իգամոլ: 2. Իգացեալ (տղամարդ):
ԻԳԱՏԵՆՉ, ա. Իգասէր, իգամոլ:
ԻԳԱՑՈՒԹԻՒՆ, գ. Իգութիւն (իգանալը,

էգի դեր կատարելը):
ԻԳԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. 1. Խենեշացուցանել, թուլացուցանել, մեղկացուցանել: 2. Ներքինացուցանել:
ԻԳՈՒԹԻՒՆ, գ. 1. Կնութիւն (էգի յատկութիւն): 2. տե՛ս ԻԳԱՑՈՒԹԻՒՆ:
Ի ԴԷՄՍ, տե՛ս ԴԷՄ-ի տակ:
Ի ԴԷՊ, տե՛ս ԴԷՊ-ի տակ:
Ի ԴՈՒՐՍ, տե՛ս ԴՈՒՐՔ-ի տակ:
Ի ԶՈՒՐ, տե՛ս ԶՈՒՐ:
Իժ, գ. 1. (կենդբ.) Օձ, քարբ: 2. ա. փխբ. Իժանման, ժանտ:
ԻԺԱԲԱՐ, մ. Չարաբար, նենգաբար:
ԻԺԱԲԱՐՈՅ, ա. Չարաբարոյ, ժանտ:
ԻԺԱԹՈՅՆ, ա. Չարաթոյն, վնասակար, ժանտ:
ԻԺԱՆԱԼ, չբ. Օձանալ, փխբ. չարանալ:
ԻԺԱՆՄԱՆ, ա. Օձակերպ, դժնդակ, ժանտ:
ԻԼ, գ. Իլիկ, մանելիք, մանոց, աղէկատ:
ԻԼԻԿ, տե՛ս ԻԼ:
Ի ԽԺԴԱՆ ԿԱԼ, չբ. Յամառել, հակառակել, խստանալ:
ԻՂՁ[1], գ. 1. Բաղձանք, տենչ, տենչանք, ցանկութիւն, փափագ: 2. Աղաչանք, աղօթք:
– ԻՂՁ ԱՌՆԵԼ. Աղօթել:
– ԻՂՁ ԼԻՆԵԼ. Փափագել, ըղձալ:
ԻՂՁ[2], գ. 1. Ըղձապատում, հարցուկ, կախարդ, դիւթ: 2. յոգն. Ըղձութիւն, դիւթութիւն, գուշակութիւն, հմայութիւն, հմայք:
ԻՄԱՆԱԼ, հբ. 1. Ի միտ առնուլ, գիտել, գիտենալ, ճանաչել, խելամուտ լինել, խելամտել: 2. Զգալ: 3. Խորհել, զմտաւ ածել: 4. Համարել, վարկանել, կարծել: 5. Հնարել, ճարտարել, նիւթել:
ԻՄԱՆԱԼԱԲԱՐ, մ. Իմանալապէս, հոգեպէս:
ԻՄԱՆԱԼԱՊԷՍ, տե՛ս ԻՄԱՆԱԼԱԲԱՐ:
ԻՄԱՆԱԼԻ, ա. 1. Աննիւթ, աննիւթական, հոգեղէն: 2. Իմացող, իմացական, մտաւոր:
ԻՄԱՆՈՂ, ա. Իմացող, իմացական, մտաւոր:
ԻՄԱՆՈՂԱԿԱՆ, ա. Իմացողական:
– ԻՄԱՆՈՂԱԿԱՆՆ, գ. Իմացողականն, միտք:
ԻՄԱՍՏ, գ. 1. Նշանակութիւն, միտք: 2. Իմացումն, իմացողութիւն, իմացականութիւն, ըմբռնողութիւն, ծանօթութիւն, հասողութիւն: 3. Իմաստութիւն, գիտութիւն, մակացութիւն: 4. Ճարտարութիւն, արուեստգիտութիւն: 5. Խորհուրդ, խոկումն, մտածութիւն:
ԻՄԱՍՏԱԲԱՆ, ա. Իմաստնաբան, իմաստուն:
ԻՄԱՍՏԱԲԱՐ, տե՛ս ԻՄԱՍՏՆԱԲԱՐ:
ԻՄԱՍՏԱԳՈՅՆ, տե՛ս ԻՄԱՍՏՆԱԳՈՅՆ:
ԻՄԱՍՏԱԼԻՑ, ա. Իմաստալից, խոհականալիր, իմաստայեղց:
ԻՄԱՍՏԱԽՆԴԻՐ, ա. Իմաստնախնդիր (իմաստութեան հետամուտ):
ԻՄԱՍՏԱԽՈՀ, տե՛ս ԻՄԱՍՏԱԽՈՐՀ:
ԻՄԱՍՏԱԽՈՐՀ, ԻՄԱՍՏԱԽՈՐՀՈՒՐԴ, ա. Իմաստախոհ, խոհական, խելացի:
ԻՄԱՍՏԱԿ, ա. 1. Բանավաճառ, իմաստասիրակ, իմաստուն, սոփեստէս: 2. Իմաստական (իմաստակին յատուկ՝ վերաբերող):
ԻՄԱՍՏԱԿԱՆ, ա. 1. Իմաստուն, խելացի: 2. տե՛ս ԻՄԱՍՏԱԿ (2):
ԻՄԱՍՏԱԿԱՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ԻՄԱՍՏԱԿՈՒԹԻՒՆ:
ԻՄԱՍՏԱԿԵԼ, տե՛ս ՃԱՐՏԱՐԵԼ (1):
ԻՄԱՍՏԱԿԻՐ, ա. Խոհական, բանական, իմաստուն:
ԻՄԱՍՏԱԿՈՒԹԻՒՆ, գ. Իմաստականութիւն (իմաստակ լինելը):
ԻՄԱՍՏԱՀԱՅԵԱՑ, ա. Խոհական:
ԻՄԱՍՏԱՀԱՆՃԱՐ, ա. Իմաստայեղց, իմաստալից:
ԻՄԱՍՏԱՃԵՄ, ա. Բանիբուն, իմաստակիր:
ԻՄԱՍՏԱՅԵՂՑ, ա. Իմաստալից:

ԻՄԱՍՏԱՆԱԼ, տե՛ս ԻՄԱՍՏՆԱՆԱԼ:
ԻՄԱՍՏԱՊԱՏՈՒՄ, ա. Իմաստալից:
ԻՄԱՍՏԱՊԱՐԳԵՒ, ա. Իմաստարար, իմաստատուր:
ԻՄԱՍՏԱՊԷՍ, տե՛ս ԻՄԱՍՏՆԱԲԱՐ:
ԻՄԱՍՏԱՍԷՐ, ա գ. 1. Գիտուն, փիլիսոփայ, փիլիսոփոս: 2. Առաքինի, պարկեշտ, զգաստ, զգօն: 3. Երգիչ, երաժիշտ: 4. Առաքինական:
ԻՄԱՍՏԱՍԻՐԱԲԱՐ, մ. 1. Իմաստասիրապէս: 2. Առաքինաբար:
ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿ, ա. 1. Իմաստասէր (իմաստութիւն սիրող, իմաստութեան հետամուտ): 2. Իմաստակ: 3. Իմաստասիրական:
ԻՄԱՍՏԱՍԻՐԱԿԱՆ, ա. Փիլիսոփայական (իմաստասէրին և իմաստասիրութեան յատուկ՝ վերաբերող):
ԻՄԱՍՏԱՍԻՐԱՆԱԼ, չբ. Առաքինանալ (իմաստասէր՝ առաքինի դառնալ):
ԻՄԱՍՏԱՍԻՐԱՊԷՍ, տե՛ս ԻՄԱՍՏԱՍԻՐԱԲԱՐ:
ԻՄԱՍՏԱՍԻՐԵԼ, նբ. չբ. 1. Փիլիսոփայել (իբրև իմաստասէր քննել): 2. (տրամ.) Հաւաքաբանել: 3. Գուշակել, իմանալ: 4. Հետաքննին լինել, խորամուտ լինել: 5. Հնարել, հայթայթել: 6. Ծառել, վարդապետել:
ԻՄԱՍՏԱՍԻՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Փիլիսոփայութիւն: 2. Իմաստութիւն, իմաստ: 3. Քաղաքավարութիւն (առաքինի վարք):
ԻՄԱՍՏԱՍՊԱՌ, ա. Անիմաստ, անմիտ:
ԻՄԱՍՏԱՏՈՒՐ, ա. Իմաստնարար, իմաստնացուցիչ:
ԻՄԱՍՏԱՐԱՐ, տե՛ս ԻՄԱՍՏՆԱՐԱՐ:
ԻՄԱՍՏԱՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԻՄԱՍՏՆԱՑՈՒՑԱՆԵԼ:
ԻՄԱՍՏԱՑՈՒՑԻՉ, տե՛ս ԻՄԱՍՏՆԱՑՈՒՑԻՉ:
ԻՄԱՍՏԱՒՈՐ, ա. Իմաստալից:
ԻՄԱՍՏՆԱԲԱՆ, տե՛ս ԻՄԱՍՏԱԲԱՆ:
ԻՄԱՍՏՆԱԲԱՐ, մ. Իմաստաբար:
ԻՄԱՍՏՆԱԳԻՒՏ, ա. Հնարագիւտ, հնարագէտ, հնարիմաց, ճարտարիմաց:
ԻՄԱՍՏՆԱԳՈՅՆ, ա. 1. Գիտնագոյն: 2. Խոհականագոյն: 3. Խորագիտագոյն: 4. Զգօնագոյն, զգաստագոյն: 5. Իմաստաւոր: 6. մ. Խոհականագոյնս:
ԻՄԱՍՏՆԱԶՕՐ, ա. Իմաստուն, իմաստաւոր:
ԻՄԱՍՏՆԱԽՆԴԻՐ, տե՛ս ԻՄԱՍՏԱԽՆԴԻՐ:
ԻՄԱՍՏՆԱԽՈՐՀ, տե՛ս ԻՄԱՍՏԱԽՈՐՀ:
ԻՄԱՍՏՆԱԿԱՆ, ա. Իմաստաւոր, խոհական, բանական, իմաստասիրական:
ԻՄԱՍՏՆԱՆԱԼ, չբ. 1. Իմաստանալ (իմաստուն՝ խելացի՝ խելօք դառնալ): 2. Խելամուտ լինել, խելամտել, իմանալ, ի միտ առնուլ: 3. Իմաստասիրանալ, առաքինանալ, զգօնանալ, զգաստանալ:
ԻՄԱՍՏՆԱՍԷՐ, տե՛ս ԻՄԱՍՏԱՍԷՐ:
ԻՄԱՍՏՆԱՐԱՆ, գ. Գլուխ (խելքի տեղը):
ԻՄԱՍՏՆԱՐԱՐ, ա. Իմաստարար, իմաստնացուցիչ:
ԻՄԱՍՏՆԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Իմաստուն առնել, իմաստացուցանել, զգօնացուցանել, զգաստացուցանել:
ԻՄԱՍՏՆԱՑՈՒՑԻՉ, ա. 1. Իմաստնարար: 2. Զգաստացուցիչ:
ԻՄԱՍՏՆԱՒՈՐ, ա. Իմաստուն, իմաստաւոր, խելացի:
ԻՄԱՍՏՆԱՒՈՐԵԼ (իմ), չբ. Իմաստնանալ, զգաստանալ:
ԻՄԱՍՏՈՒԹԻՒՆ, գ. 1. Հանճար, խելք, գիտութիւն, խոհանկութիւն, բանականութիւն, իմացողութիւն, իմացականութիւն, իմացութիւն, ճանչողութիւն, մակացութիւն, խելամտութիւն, ճարտարութիւն: 2. Խորհուրդ, մտածութիւն:
- ԻՄԱՍՏՈՒԹԵԱՄԲ, մ. Իմաստնաբար, խելօք:
ԻՄԱՍՏՈՒՆ, ա. 1. Մտաւոր, գիտուն: 2. Ընդհանրապէս՝ խոհեմ, խելացի, ուշիմ, ողջամիտ, խելամուտ, հանճարեղ: 3.

Իմաստասէր, փիլիսոփայ: 4. Իմաստակ, սոփեստէս: 5. Իմաստնական, խոհական, իմաստաւոր: 6. Արդար, առաքինի, բարեպաշտ: 7. մ. Իմաստնաբար, իմաստութեամբ:
- ԻՄԱՍՏՈՒՆ ԱՌՆԵԼ, տե՛ս ԻՄԱՍՏՆԱՑՈՒՑԱՆԵԼ:
ԻՄԱՐՄԷՆ, ԻՄԱՐՄԻՆ, տե՛ս ԻՄԱՐՄԻՆԷ:
ԻՄԱՐՄԻՆԷ, գ. Բախտ, վիճակ, ճակատագիր:
ԻՄԱՑ, մանաւանդ՝ ԻՄԱՑՔ, գ. Իմացումն, իմաստ, խորհուրդ, միտք:
- ԻՄԱՑ ԱՌՆԵԼ, տե՛ս ԻՄԱՑՈՒՑԱՆԵԼ:
- ԻՄԱՑ ԼԻՆԵԼ. Իմանալ, տեղեկանալ:
ԻՄԱՑԱԳՈՅՆ, ա. Խորիմաց:
ԻՄԱՑԱԿԱՆ, ա. 1. Իմանալի, իմանողական, իմացողական: 2. Իմացող:
- ԻՄԱՑԱԿԱՆՔ, գ. յոգն. Հրեշտակք, հոգեղէնք:
ԻՄԱՑԱԿԱՆԱՊԷՍ, մ. Հոգեպէս, հոգեւորապէս:
ԻՄԱՑԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Իմացողութիւն, իմացումն:
ԻՄԱՑՈՂ, ա. Իմաստուն (որ իմանում է):
ԻՄԱՑՈՂԱԲԱՐ, մ. Իմացականապէս (իմանալի կերպով):
ԻՄԱՑՈՂԱԿԱՆ, ա. Մտաւորական, իմացական:
- ԻՄԱՑՈՂԱԿԱՆՆ, գ. Միտք, խորհուրդ:
ԻՄԱՑՈՂՈՒԹԻՒՆ, գ. Ըմբռնումն, ըմբռնողութիւն, իմացականութիւն:
ԻՄԱՑՈՒԱԾ, գ. 1. Իմացումն, իմացողութիւն: 2. Միտք, խելք: 3. Իմաստ (խօսքի նշանակութիւն): 4. Խոհականութիւն, իմաստութիւն: 5. Ազդումն, ըմբռնումն (զգայարանների միջոցով):
ԻՄԱՑՈՒԱԾՈՒԹԻՒՆ, գ. Իմացութիւն, միտք:
ԻՄԱՑՈՒԹԻՒՆ, գ. 1. Իմացումն, ըմբռնումն, իմացողութիւն, խոկումն: 2. Իմաստ, իմացուած, նշանակութիւն (խօսքի): 3. Միտք: 4. Ազդումն, զգայութիւն (ըմբռնում զգայարանների միջոցով): 5. յոգն, Հրեշտակք, իմանալիք, հոգեղէնք:
ԻՄԱՑՈՒՄՆ, գ. 1. Իմացութիւն, ըմբռնումն, հասողութիւն: 2. Խոկումն, մտածութիւն: 3. Խորհուրդ, հնարք, դիտաւորութիւն: 4. Զգայութիւն, ըմբռնումն (մտքով և զգայարանների միջոցով):
ԻՄԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. 1. Իմաց առնել, խելամուտ առնել, ուսուցանել: 2. Ազդ առնել, ծանուցանել, զեկուցանել, յայտ առնել:
ԻՄԱՑՔ, տե՛ս ԻՄԱՑ:
Ի ՄԷՋ, Ի ՄԻՋԻ, տե՛ս ՄԷՋ:
Ի ՄԻԱՍԻՆ, մ. Միաբան, զուգաց, միասնաբար, միանգամայն:
- Ի ՄԻԱՍԻՆ ԷԱԿԱՆ կամ ՄԻԱՍԻՆ ԷԱԿԱՆ. Միասնական, համագոյ:
ԻՄՆ, դ. 1. Ինչ: 2. Ոմն, ոք:
- ԻՄՆ ԻՄՆ. Ինչ ինչ, քանի մի, պէսպէս:
ԻՄՆԱՊԷՍ, ԻՄՆԷ, մ. Ըստ իրիք:
ԻՄՈՎՍԱՆՆ, մ. Ըստ կարի իմում:
ԻՆԾ, ԻՆՁ, դ. (կենդբ.) Յովազ:
ԻՆՆԱԳԼԽԻ, ա. Իննագլուխ:
ԻՆՆԱԳԼՈՒԽ, տե՛ս ԻՆՆԱԳԼԽԻ:
ԻՆՆԱՄԵԱՅ, ա. Իննամեան:
ԻՆՆԱՄԵԱՆ, տե՛ս ԻՆՆԱՄԵԱՅ:
ԻՆՆԵՐԵԱԿ, տե՛ս ԻՆՆԵՐՈՐԴ:
ԻՆՆԵՐՈՐԴ, թ. Իններեակ:
ԻՆՆԵՒՏԱՍՆԱՄԵԱՅ, ա. Իննուտասնամեայ:
ԻՆՆԵՒՏԱՍՆԵԱԿ, տե՛ս ԻՆՆԵՒՏԱՍՆԵՐԵԱԿ:
ԻՆՆԵՒՏԱՍՆԵՐԵԱԿ, ա. գ. Իննևտասնեակ:
ԻՆՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ, թ. Իննուտասներորդ:
ԻՆՆԵՔԵԱՆ, թ. Իննեքին:
ԻՆՆԵՔԻՆ, տե՛ս ԻՆՆԵՔԵԱՆ:
ԻՆՆՈՒՏԱՍՆԱՄԵԱՅ, տե՛ս ԻՆՆԵՒՏԱՍՆԱՄԵԱՅ:

ԻՆՆՈՒՏԱՍՆԵՐՈՐԴ, տե՛ս ԻՆՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ:
ԻՆՆՍՆԱՄԵԱՅ, ա. Իննսնամեան, իննսունամենի:
ԻՆՆՍՆԱՄԵԱՆ, ԻՆՆՍՆԱՄԵՆԻ, տե՛ս ԻՆՆՍՆԱՄԵԱՅ:
ԻՆՆՍՆԵԱԿ, ա. Իննսներեակ:
ԻՆՆՍՆԵՄԵԱՅ, ԻՆՆՍՆԵՄԵԱՆ, տե՛ս ԻՆՆՍՆԱՄԵԱՅ:
ԻՆՆՍՆԵՐԵԱԿ, տե՛ս ԻՆՆՍՆԵԱԿ:
ԻՆՉ[1], դ. 1. Իմն, մի (դոյականի հետ եռադաս գործածութեամբ կատարում է անորոշ դերանուան դեր՝ ինչ-որ, որեւէ նչ.): 2. գ. Իր ինչ (մի բան, որեւէ բան):
- ԻՆՉ ԻՆՉ, տե՛ս ԻՄՆ ԻՄՆ:
ԻՆՉ[2], գ. 1. Գոյ. գոյակ. գոյացութիւն: 2. տե՛ս ԻՆՉՔ:
ԻՆՉԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Վերաբերութիւն, առինչ:
ԻՆՉՊԻՏՈՒԹԻՒՆ, տե՛ս ՃԻՆՉՊԻՏՈՒԹԻՒՆ:
ԻՆՉՔ, գ. Գոյք, ստացուած:
ԻՆՔՆ, դ. 1. Նա: 2. ա. (յունաբանութեամբ) Նոյն, բո՛ւն:
- ԻՆՔԵԱՄԲ, ԻՆՔԵԱՄԲ ԻՆՔԵԱՆ, ԻՆՔԵԱՆՔ ԻՆՔԵԱՄԲՔ, մ. Ինքնին, անձամբ անձին:
- ԻՆՔՆ ԱՌ ԻՆՔՆ, ԻՆՔՆ ՅԻՆՔՆ, մ. ԻՆՔՆԻՆ:
- ԻՆՔՆ ԸՍՏ ԻՆՔԵԱՆ, մ. Էապէս, ինքնին, իւրովի:
- ԸՍՏ ԻՆՔԵԱՆ, տե՛ս ԻՆՔՆ ԸՍՏ ԻՆՔԵԱՆ:
- ՅԻՆՔՆ ԳԱԼ, տե՛ս ԶԳԱՍՏԱՆԱԼ (1):
ԻՆՔՆԱԲԱՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ԻՆՔՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ:
ԻՆՔՆԱԲԱՒ, ա. Անկարօտ, ապենիազ, ինքնաբաւական (ինքն իրեն բաւականացնող՝ բաւարարող):
ԻՆՔՆԱԲԱՒԱԿԱՆ, տե՛ս ԻՆՔՆԱԲԱՒ:
ԻՆՔՆԱԲԱՒՈՒԹԻՒՆ, գ. Անկարօտութիւն, սակաւապիտութիւն:
ԻՆՔՆԱԲԵՐ, ա. Ինքնաբերական, ինքնաբուղխ:
ԻՆՔՆԱԲԵՐԱԿԱՆ, տե՛ս ԻՆՔՆԱԲԵՐ:
ԻՆՔՆԱԲՆԱԿ, ա. Բնական, բնածին:
ԻՆՔՆԱԲՆԱԿԱԲԱՐ, մ. Բնականաբար, ի բնէ, ինքնին:
ԻՆՔՆԱԲՈՅՍ, ա. Ինքնաբուղխ, բնածին, ընդաբոյս, ինքնաբնակ:
ԻՆՔՆԱԲՈՒՂԽ, ա. 1. Ինքնախաղաց (ջուր): 2. Ինքնաբոյս, ինքնաբեր: 3. Ինքնակամ, ինքնայօժար, կամակար:
ԻՆՔՆԱԲՈՒՆ, ա. Բնածին, բնական, ընդաբոյս, բուն, սեպհական, յատուկ, բնիկ:
ԻՆՔՆԱԳԱՒԱՌԵԱՅ, ա. գ. Բնակ, բնիկ (հէնց նոյն գաւառից):
ԻՆՔՆԱԳԻՐ, ա. գ. Բնագիր, ձեռագիր:
ԻՆՔՆԱԳԼՈՒԽ, ա. Ինքնիշխան, ինքնակամ:
ԻՆՔՆԱԳՈՅ, ա. Անեղ, անստեղծ, էական:
ԻՆՔՆԱԳՈՅԱԿ, ա. 1. Ինքնագոյ, ինքնեղ: 2. Նախաստեղծ (նախապէս ստեղծուած):
ԻՆՔՆԱԳՈՐԾ, ա. մ. 1. Ինքնիշխան, անձնիշխան: 2. Աշխատասէր, փոյթ, փութակամ, անձանձրոյթ: 3. Ինքնագլուխ, անձնահաճ: 4. Ինքնեղ, բնական, անպատճառ: 5. Համագործ, գործակից:
ԻՆՔՆԱԳՐԱՒ, ա. Անձնամատն:
ԻՆՔՆԱԴԷՊ, ա. Յանկարծադէպ:
ԻՆՔՆԱԴԻՄԱԲԱՐ, մ. Դէմ յանդիման, դէմ ի դէմ:
ԻՆՔՆԱԴՍՐՈՎ, ա. Ինքնանախատ, անձնանախատ:
ԻՆՔՆԱԴՐՈՒԱԳԵԱԼ, ա. Մտացածին, անխորհրդաբար:
ԻՆՔՆԱԶԱՐԴ, ա. Բնական (ի բնէ զարդարուն):
ԻՆՔՆԱԶՕՐ, ա. Անձնազօր (ինքնին հզօր՝ կարող):
ԻՆՔՆԱԺԱՌԱՆԳ, ա. Հայրենի, իւրական:

ԻՆՔՆԱԽԱՂԱՑ, ա. Ինքնաբուղխ (ջուր):
ԻՆՔՆԱԽՈՐԺ, ա. Ինքնակամ, ինքնայօժար:
ԻՆՔՆԱԽՕՍ, ա. Ինքնասաց:
ԻՆՔՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ, գ. Ինքնաբանութիւն:
ԻՆՔՆԱԾԱԳ, ա. Անեղական, աստուածային, անսկզբնական:
ԻՆՔՆԱԾԻՆ, ա. 1. Ինքնեղ: 2. Ինքնաբոյս, ինքնաբուղխ, բնածին, ընդաբոյս:
ԻՆՔՆԱԿԱԼ, ա. գ. 1. Ինքնիշխան, անձնիշխան, ինքնագլուխ, ազատ: 2. Թագաւոր, կայսր: 3. Ինքնակալական, թագաւորական:
ԻՆՔՆԱԿԱԼԱԿԱՆ, ա. Կայսերական, ինքնիշխանական, յաղթող:
ԻՆՔՆԱԿԱԼՈՒԹԻՒՆ, գ. Թագաւորութիւն (ինքնակալ տէրութիւն):
ԻՆՔՆԱԿԱՄ, ա. 1. Ինքնայօժար, կամաւոր: 2. Անձնիշխան, ինքնիշխան, ազատ: 3. Անձնասէր: 4. Ինքնաշարժ, դիւրապատրաստ: 5. մ. Ինքնակամութեամբ, կամաւ, կամաւորաբար:
ԻՆՔՆԱԿԱՄՈՒԹԻՒՆ, գ. Անձնիշխանութիւն, կամաւորութիւն, յօժարութիւն:
- ԻՆՔՆԱԿԱՄՈՒԹԵԱՄԲ, տե՛ս ԻՆՔՆԱԿԱՄ (5):
ԻՆՔՆԱԿԱՑ, ա. Ինքնագոյ, ինքնեղ, ինքնակաց:
ԻՆՔՆԱԿԱՑՈՒԹԻՒՆ, տե՛ս ԻՆՔՆԱԿԱՅՈՒԹԻՒՆ:
ԻՆՔՆԱԿԱՆ, ա. 1. Իւրական: 2. Էական:
ԻՆՔՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Նոյնութիւն:
ԻՆՔՆԱԿԱՏԱՐ, ա. 1. Ապենիազ, ինքնաբաւ (ինքն իր մէջ կատարեալ): 2. մ. Ինքնակատարաբար, կատարելապէս, տիրապէս:
ԻՆՔՆԱԿԱՏԱՐԱԲԱՐ, մ. Կատարելապէս, տիրաբար:
ԻՆՔՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ, գ. Կատարելութիւն (ինքնակատար լինելը):

ԻՆՔՆԱԿԱՅ, ա. Ինքնակայ, ինքնեղ, ինքնագոյ, անեղ:
ԻՆՔՆԱԿԱՅՈՒԹԻՒՆ, գ. Ինքնակայութիւն, ինքնեղութիւն, անեղութիւն:
ԻՆՔՆԱԿԻՐ, ա. Սեպհական, իւրական, իւրոյին:
ԻՆՔՆԱԿՇՏԱՄԲԵԼԻ, ա. Ինքնանախատ:
ԻՆՔՆԱԿՈՋ, ա. Ինքնակամ:
ԻՆՔՆԱԿՈՐԾԱՆ, ա. Անձնակորոյս:
ԻՆՔՆԱՀԱԼԱԾ, ա. Հալածական:
ԻՆՔՆԱՀԱՃ, ա. Անձնահաճ, անձնահաճոյ, ինքնահաճոյ, ինքնահայեաց, ամբարտաւան:
ԻՆՔՆԱՀԱՃՈՅ, տե՛ս ԻՆՔՆԱՀԱՃ:
ԻՆՔՆԱՀԱՃՈՅՈՒԹԻՒՆ, տե՛ս ԻՆՔՆԱՀԱՃՈՒԹԻՒՆ:
ԻՆՔՆԱՀԱՃՈՒԹԻՒՆ, գ. Անձնահաճութիւն, ամբարտաւանութիւն:
ԻՆՔՆԱՀԱՅԵԱՑ կամ ՅԻՆՔՆԱՀԱՅԵԱՑ, տե՛ս ԻՆՔՆԱՀԱՃ:
ԻՆՔՆԱՀՐԱՄԱՆ, ա. 1. Ինքնիշխան, ինքնակամ, մտադիւր: 2. մ. Ինքնին, ինքնակամութեամբ:
ԻՆՔՆԱՁԵՌՆ, ա. մ. 1. Ինքնազօր: 2. Ինքնին, իւրովի: 3. Ձեռներէց, յանձնապաստան, յանդուգն:
- ԻՆՔՆԱՁԵՌՆ ԼԻՆԵԼ. Ձեռներէց լինել, համարձակել:
ԻՆՔՆԱՄԱՏՈՅՑ, ա. 1. Ինքնեկ: 2. Ինքնադէպ: 3. գ. Դէպք, դիպուած:
ԻՆՔՆԱՄԱՐՏ, ա. Ինքնօգոր:
ԻՆՔՆԱՅՈՐԴՈՐ, ա. Ինքնայօժար, դիւրապատրաստ, պատրաստական, կամակար:
ԻՆՔՆԱՅՕԺԱՐ, ա. Յօժարական, ինքնակամ, մտադիւր, կամաւոր:
ԻՆՔՆԱՆԱԼ, չբ. Կատարելանալ:
ԻՆՔՆԱՆԱԽԱՏ, ա. Անձնանախատ, ինքնադսրով, ինքնապարսաւ:
ԻՆՔՆԱՆՄԱՆ, ա. Համանման:
ԻՆՔՆԱՇԱՐԺ, ա. 1. Ինքնաշարժողական, շարժողական, շարժուն: 2.

Մշտաշարժ, անմահ:
ԻՆՔՆԱՇԱՐԺԱԲԱՐ, մ. Անձնիշխանաբար, ազատաբար:
ԻՆՔՆԱՇԱՐԺՈՂԱԿԱՆ, ա. Ինքնաշարժ, շարժողական:
ԻՆՔՆԱՇԱՐԺՈՒԹԻՒՆ, գ. Շարժողութիւն (ինքնաշարժ լինելը):
ԻՆՔՆԱՊԱՏՈՒՄ, ա. մ. Ինքնասաց:
ԻՆՔՆԱՊԱՏՐԱՍՏ, ա. Պատրաստական, դիւրապատրաստ:
ԻՆՔՆԱՊԱՐՍԱՒ, տե՛ս ԻՆՔՆԱՆԱԽԱՏ:
ԻՆՔՆԱՍԱՑ, ա. Ինքնապատում, ինքնախօս:
ԻՆՔՆԱՍԷՐ, տե՛ս ԱՆՁՆԱՍԷՐ:
ԻՆՔՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ, տե՛ս ԱՆՁՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ:
ԻՆՔՆԱՍՊԱՆ, տե՛ս ԱՆՁՆԱՍՊԱՆ:
ԻՆՔՆԱՎԱՐ, ա. Ինքնօրէն (ինքն իրեն կառավարող):
ԻՆՔՆԱՎԱՐԴԱՊԵՏ, ա. Ինքնավարժ, ինքնուս:
ԻՆՔՆԱՎԱՐԺ, ա. Ինքնուս, ինքնուսումն:
ԻՆՔՆԱՏԵՍ, ա. 1. Ականատես: 2. Ինքնատեսող, խելամուտ:
– ԻՆՔՆԱՏԵՍ ԼԻՆԵԼ. Ականատես լինել:
ԻՆՔՆԱՏԵՍԱԿԱԲԱՐ, տե՛ս ԱՆՅԵՂԱԲԱՐ:
ԻՆՔՆԱՏԵՍՈՂ, տե՛ս ԻՆՔՆԱՏԵՍ (2):
ԻՆՔՆԱՏԷՐ, ա. Անձնիշխան:
ԻՆՔՆԱՏԻՐՈՒԹԻՒՆ, գ. Անձնիշխանութիւն:
ԻՆՔՆԱՐԱՐ, ա. Իւրակերտ:
ԻՆՔՆԱՐԳՈՅ, տե՛ս ԱՆՁՆԱՀԱՃ:
ԻՆՔՆԱՐՀԱՄԱՐՀՈՒԹԻՒՆ, գ. Խոնարհութիւն, համեստութիւն:
ԻՆՔՆԱՒՈՐ, ա. 1. Ինքնական, իւրական, բնաւոր: 2. Ինքնաբոյս, ինքնեակ:
ԻՆՔՆԵԱԿ, ա. 1. Ինքնաբոյս: 2. մ. Ինքնին:
ԻՆՔՆԵԿ, ա. 1. Ինքնամատոյց: 2. Ինքնադէպ:

ԻՆՔՆԵՂ, ա. 1. Ինքնածին: 2. Բնական, անարուեստ (ի բնէ՝ բնականից եղած):
ԻՆՔՆԵՐԵՒԱԿ, ա. Յայտնի (ինքն իրեն երևացող):
ԻՆՔՆԷԱԿ, տե՛ս ԻՆՔՆԵԱԿ:
ԻՆՔՆԻՄՈՆ, տե՛ս ՀԵՏԱՀԱՆ (2):
ԻՆՔՆԻՆ, մ. Իւրովի, անձամբ անձին, յանձնէ:
ԻՆՔՆԻՇԽԱՆ, ա. 1. Անձնիշխան, ինքնատէր: 2. Անձնիշխանական: 3. Ինքնազօր: 4. Տիրական:
ԻՆՔՆԻՇԽԱՆԱԲԱՐ, մ. Ինքնիշխանապէս, տիրաբար:
ԻՆՔՆԻՇԽԱՆԱԿԱՆ, ա. Անձնիշխանական, տիրական:
ԻՆՔՆԻՇԽԱՆԱՊԷՍ, տե՛ս ԻՆՔՆԻՇԽԱՆԱԲԱՐ:
ԻՆՔՆԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Անձնիշխանութիւն: 2. Ինքնակալութիւն:
ԻՆՔՆՅԱՅՏՆԱՊԷՍ, մ. Յայտնապէս (ինքն իրեն յայտնելով՝ երևան հանելով):
ԻՆՔՆՈԳՈՐ, տե՛ս ԻՆՔՆԱՄԱՐՏ:
ԻՆՔՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Ենթակայութիւն, անձնաւորութիւն, անձն: 2. Ինքնեղութիւն: 3. Աստուածութիւն (աստուածային բնութիւն՝ իսկութիւն):
ԻՆՔՆՈՒՍ, տե՛ս ԻՆՔՆՈՒՍՈՒՄՆ:
ԻՆՔՆՈՒՍՄՆԱԲԱՐ, ԻՆՔՆՈՒՍՄՆԱԿԻ, ԻՆՔՆՈՒՍՄՆԱՊԷՍ, մ. Բնաւորապէս (ինքնուսումն լինելով):
ԻՆՔՆՈՒՍՈՒՄՆ, ա. 1. Ինքնավարժ, ինքնավարդապետ: 2. Բնաւորական, բնածին, ի բնէ:
ԻՆՔՆՈՒՍՈՒՄՆԱԿ, տե՛ս ԻՆՔՆՈՒՍՈՒՄՆ:
ԻՆՔՆՈՒՐՈՅՆ, ա. Իւրական, առանձին, մասնաւոր:
ԻՆՔՆՈՒՐՈՅՆԱԲԱՐ, մ. Առանձնաբար, մասնաւորապէս, ի մասնաւորի:
ԻՆՔՆՈՒՐՈՅՆՈՒԹԻՒՆ, գ. Առանձնութիւն, միայնութիւն:
ԻՆՔՆՕՐԷՆ, ա. 1. Աղիկամի, ինքնավար:

2. Ինքնակամ: 3. Ինքնահաճ, կամակար:
ԻՆՔՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ԻՆՔՆՕՐԻՆՈՒԹԻՒՆ:
ԻՆՔՆՕՐԻՆԱԿ, ԻՆՔՆՕՐԻՆԱԿԱԲԱՐ, մ. Մասնաւորապէս, ինքնուրոյնաբար:
ԻՆՔՆՕՐԻՆՈՒԹԻՒՆ, գ. Ինքնօրէնութիւն, ազիկամութիւն:
ԻՇԱԿԷՍ, ԻՇԱԿԻՍԻ, գ. Ջորի:
ԻՇԱՄԵՂՈՒ, տե՛ս ԲՐԷՏ:
ԻՇԱՄՏՐՈՒԿ, գ. Ցաւանակ, մտրուկ, իշորդի:
ԻՇԱՆ, կամ ԻՇԱՆՔ, գ. յոգն. Էշք:
ԻՇԱՎԱՅՐ, ԻՇԱՎԱՅՐԻ, գ. (կենդբ.) Ցիռ:
ԻՇԱՅՈՒԼ, գ. Յուշկապարիկ:
ԻՇԽԱՆ, գ. Իշխեցող, տէր, գլուխ, գլխաւոր, պետ, աւագ, առաջնորդ, զօրավար, պարագլուխ, վերակացու, տանուտէր, նախարար:
- ԻՇԽԱՆԱՑ ԻՇԽԱՆ. Իշխանապետ:
- ԻՇԽԱՆ ԼԻՆԵԼ. Իշխել:
ԻՇԽԱՆԱԲԱՐ, մ. Իշխանապէս, ինքնիշխանաբար, իշխանականաբար, իշխանօրէն, տիրաբար:
ԻՇԽԱՆԱԳՈՅՆ, գ. Իշխանականագոյն, գլխաւորագոյն, վեհագոյն:
ԻՇԽԱՆԱԿԱՆ, ա. գ. 1. Պետական: 2. Տիրական: 3. Բացարձակ, ինքնազօր: 4. Իշխող, գլխաւոր: 5. Առաջնորդական (միտք), միտք:
ԻՇԽԱՆԱԿԱՆԱԲԱՐ, տե՛ս ԻՇԽԱՆԱԲԱՐ:
ԻՇԽԱՆԱԿԱՆԱԳՈՅՆ, տե՛ս ԻՇԽԱՆԱԳՈՅՆ:
ԻՇԽԱՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Իշխանութիւն:
ԻՇԽԱՆԱԿԻՆ, գ. Տիկին, իշխանուհի:
ԻՇԽԱՆԱԿԻՑ, ա. Տիրակից, համիշխան:
ԻՇԽԱՆԱՆԱԼ, չբ. Իշխան լինել, իշխել, տիրել:
ԻՇԽԱՆԱՊԵՏ, գ. Իշխանաց իշխան, ամէնիշխան:
ԻՇԽԱՆԱՊԷՍ, տե՛ս ԻՇԽԱՆԱԲԱՐ:
ԻՇԽԱՆԱՍԱՍՏ, ա. Սպառնալից (իշխանական սաստ պարունակող):
ԻՇԽԱՆԱՍԷՐ, ա. Փառասէր:
ԻՇԽԱՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ, գ. Փառասիրութիւն:
ԻՇԽԱՆԱՏՈՒՆ, գ. Ազգատոհմ:
ԻՇԽԱՆԱՒՈՐ, ա. Իշխեցեալ, հպատակ:
ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Տէրութիւն, պէտութիւն, գլխաւորութիւն, առաջնորդութիւն: 2. Պատիւ: 3. Ազատութիւն, ինքնակամութիւն, անձնիշխանութիւն: 4. Կարողութիւն, համարձակութիւն, հրաման: 5. (եկեղց.) Վիճակ: 6. յոգն. Հրեշտակք:
ԻՇԽԱՆՈՒՀԻ, տե՛ս ԻՇԽԱՆԱԿԻՆ:
ԻՇԽԱՆՍԻՐՈՒԹԻՒՆ, տե՛ս ԻՇԽԱՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ:
ԻՇԽԱՆՕՐԷՆ, տե՛ս ԻՇԽԱՆԱԲԱՐ:
ԻՇԽԵԼ, չբ. և նբ. 1. Իշխան լինել, տիրել: 2. Համարձակել, յանդգնել, ժպրհել: 3. Կարել, զօրել, բաւել:
ԻՇԽԵՑԵԱԼ, տե՛ս ԻՇԽԱՆԱՒՈՐ:
ԻՇԽԵՑՈՂ, ա. գ. Իշխող, իշխան, տէր:
ԻՇԽԵՑՈՂԱԳՈՅՆ, ա. Զօրագոյն, համարձակագոյն:
ԻՇԽԵՑՈՂԱԿԱՆ, ա. Իշխանական, իշխող:
ԻՇՈՐԴԻ, տե՛ս ԻՇԱՄՏՐՈՒԿ:
ԻՋԱՆԵԼ, չբ. 1. Վայրաբերել, վայրագայել, հոսել: 2. Զիջանել, մեղմանալ, դադարել, խոնարհել: 3. Իջավանել: 4. Անկանել (անարգ վիճակի հասնել): 5. Յաջորդել (նախորդներից սերուել):
ԻՋԱՎԱՆ, գ. Վանք, օթեւան:
ԻՋԱՎԱՆԵԼ (իմ), չբ. Ագանել, օթագանել, օթեւանել:
ԻՋԱՒԱՆ, տե՛ս ԻՋԱՎԱՆ:
ԻՋԱՒԱՆԵԼ (իմ), տե՛ս ԻՋԱՎԱՆԵԼ (իմ):
ԻՋԱՒՈՐ, ա. գ. Անցաւոր, հիւր:
ԻՋԵՎԱՆ կամ ԻՋԷՎԱՆ, տե՛ս ԻՋԱՎԱՆ:
ԻՋԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԻՋՈՒՑԱՆԵԼ:
ԻՋԵՒԱՆ, տե՛ս ԻՋԱՎԱՆ:

ԻՋՈՒՄՆ, գ. էջ, էջք, վայրաբերումն (իջնելը):
ԻՋՈՒՑԱՆԵԼ, պբ. Իջեցուցանել, վայրաբերել, վայրածել:
ԻՋՈՒՑԻՉ, ա. Խոնարհեցուցիչ:
ԻՌԻՍ, տե՛ս ԻՐԻՍ:
Ի ՍԱԿՍ, տե՛ս ՍԱԿՍ:
ԻՍԿ[1], գ. 1. Իսկութիւն, իսկականութիւն, գոյացութիւն: 2. ա. Էական, բուն, բնիկ, ստոյգ, ճշմարիտ, հարազատ: 3. (քեր.) Յատուկ (անուն):
ԻՍԿ[2], շ. 1. Այլ, բայց, սակայն, և: 2. Արդ, իսկ արդ, ապա, ուրեմն: 3. շ. մ. եղբ. Համայն, արդարև, ապաքէն, անդստին, արդեամբք, իսկապէս, արդեօք, ևս:
ԻՍԿԱԲԱՆԵԼ, նբ. չբ. Հաւաստաբանել, տիրաբանել, ճշգրտաբանել, ճշմարտել:
ԻՍԿԱԲԱՆՈՒԹԻՒՆ, գ Ճշգրտաբանութիւն:
ԻՍԿԱԲԱՐ, տե՛ս ԻՍԿԱՊԷՍ:
ԻՍԿԱԳՈՅՆ, ա. 1. Յատկագոյն, տիրագոյն, լաւագոյն: 2. մ. Իսկապէս, տիրապէս, յատկապէս:
ԻՍԿԱԿԱՆ, ա. Էական, բուն, յատուկ, սեպհական:
ԻՍԿԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Իսկութիւն: 2. Աստուածութիւն:
ԻՍԿԱԿԻՑ, ա. (կրօն.) Էակից, գոյակից, համագոյակից:
ԻՍԿԱԿՑՈՒԹԻՒՆ, գ. (կրօն.) Էակցութիւն, համագոյակցութիւն, համագոյութիւն:
ԻՍԿԱՊԱՏՈՒՄ, տե՛ս ՃՇՄԱՐՏԱՊԱՏՈՒՄ:
ԻՍԿԱՊԷՍ, մ. Յատկապէս, առանձնապէս, տիրապէս, ստուգապէս, էապէս:
ԻՍԿ ԱՐԴ, շ. Իսկ, արդ, ապա, ուրեմն:
ԻՍԿ ԵԹԷ, շ. Ապա եթէ, ապա թէ:
ԻՍԿ ԵՒ ԻՍԿ, մ. 1. Իսկոյն, իսկոյն իսկ, առժամայն, նոյն հետայն: 2. Իսկապէս, ճշմարտապէս:
ԻՍԿԶԲԱՆԷԱԿԱՆ, ա. Անսկիզբն, անեղ, աստուածային:
ԻՍԿԻԶԲՆ, տե՛ս ՍԿԻԶԲՆ:
ԻՍԿ ԹԷ, շ. Բայց, սակայն:
ԻՍԿՈՅՆ, ԻՍԿՈՅՆ ԻՍԿ, մ. Անդէն և անդ, իսկ և իսկ, նոյն ժամայն:
ԻՍԿՈՒԹԻՒՆ, գ. 1. Իսկականութիւն, զինչ էն, բնութիւն, գոյացութիւն, գոյութիւն: 2. Ինքնութիւն, ենթակայութիւն, անձնաւորութիւն: 3. Ճշմարտութիւն:
ԻՍԿՈՒՀԻ, գ. Տիրուհի, թագուհի:
Ի ՍՊԱՌ, ԻՍՊԱՌ, մ. Բոլորովին, բնաւին, բնաւիմբ:
Ի ՎԱՂԻՒՆ, տե՛ս ՎԱՂԻՒ-ի տակ:
Ի ՎԵՐԱՅ, նխդ. 1. Վերայ: 2. Վասն, յաղագս, ի սակս:
Ի ՏԱՐԱՊԱՐՏՈՒՑ, տե՛ս ՏԱՐԱՊԱՐՏՈՒՑ:
ԻՐ, գ. Ինչ մի, բան, խնդիր իմն, պէտք ինչ:
ԻՐԱԳԷՏ, ա. Իրազգած, իրազեկ:
ԻՐԱԳԻՏՈՂ, տե՛ս ԻՐԱԳԷՏ:
ԻՐԱԳՈՐԾԵԼ, նբ. Առնել, կատարել, հայթայթել:
ԻՐԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ, գ. Իրակերտութիւն, իրակութիւն, գործողութիւն, գործ, իրք, արարուած, պէտք:
ԻՐԱԶԳԱԾ կամ ԻՐԱԶԳԱՑ, տե՛ս ԻՐԱԳԷՏ:
- ԻՐԱԶԳԱԾ՝ ԻՐԱԶԳԱՑ ԼԻՆԵԼ. 1. Իրազեկ լինել, տեղեկանալ, իմաց լինել: 2. Զգացուցանել, զեկուցանել, իմաց առնել:
ԻՐԱԶԵԿ ԼԻՆԵԼ. 1. տե՛ս ԻՐԱԶԳԱԾ ԼԻՆԵԼ (1): 2. Հետաքնին լինել, հետազօտել:
ԻՐԱԶԵԿԱԳՈՅՆ, ա. Տեղեկագոյն (աւելի իրազեկ՝ տեղեակ):
ԻՐԱԶԵԿՈՒԹԻՒՆ, գ. 1. Տեղեկութիւն: 2. Հետազօտութիւն:
ԻՐԱԾԵԼ, նբ. Խորհել, մտածել:

ԻՐԱԿԱՆ, ա. Իրողական:
ԻՐԱԿԱՐԳՈՒԹԻՒՆ, գ. Կարգաւորութիւն, բարեկարգութիւն:
ԻՐԱԿԵՐՏՈՒԹԻՒՆ, տե՛ս ԻՐԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ:
ԻՐԱԿՈՒԹԻՒՆ, գ. 1. Իրագործութիւն: 2. Իրողութիւն, եղելութիւն, բան:
ԻՐԱՀԱՄԱՐՁԱԿ, ա. 2. Ձեռներէց (որևէ գործում համարձակ):
ԻՐԱՆ, գ. Անձն, մարմին:
ԻՐԱՆՈՒՆՔ, տե՛ս ՔՈՒՆՔ:
ԻՐԱՒ, մ. ա. 1. Արդարացի, արդեամբք, ստուգիւ, հաւաստեաւ, իրաւամբք: 2. Արդար, ստոյգ, հաւաստի, դիպող, ի դէպ: 3. գ. Իրաւունք, արդարութիւն:
- ԻՐԱՒ ԱՌՆԵԼ կամ ՏԱԼ. Դատ առնել, իրաւունս առնել:
ԻՐԱՒԱԲԱՆ, ա. 1. Ստուգաբան, արդարախօս, ճշմարտախօս: 2. Արդարացի (իրաւացի ասուած):
ԻՐԱՒԱԲԱՆՈՒԹԻՒՆ, գ. Ստուգաբանութիւն, ճշմարտախօսութիւն, արդարադատութիւն:
ԻՐԱՒԱԲԱՐ, մ. Իրաւապէս, իրաւամբք, յիրաւի, ստուգաբար:
ԻՐԱՒԱԲԵՐԵԼ (իմ), չբ. Իրաւունս առնել (իրաւունքով վարուել):
ԻՐԱՒԱԳԷՏ, ա. գ. 1. Գիտակ, իրագէտ: 2. Օրէնսգէտ, օրինագէտ:
ԻՐԱՒԱԳԻՏՈՒԹԻՒՆ, գ. 1. Հանճարեղութիւն, գգօնութիւն, իմաստութիւն: 2. Ճշմարտութիւն:
ԻՐԱՒԱԴԱՏ, ա. Արդարադատ, անաչառ:
ԻՐԱՒԱԴԱՏՈՒԹԻՒՆ, գ. Արդարադատութիւն:
ԻՐԱՒԱԽՈՀ, ԻՐԱՒԱԽՈՐՀ, ա. 1. Արդարախոհ, արդարամիտ, արդարասէր, իրաւարար: 2. Ուղղախորհ, ողջախորհուրդ, խոհական, ուշիմ, գգօն, բանիբուն, իմաստուն: 3. Բարեխոհ, բարեսէր, բարեհաւան:
ԻՐԱՒԱԽՈՐՀՈՒՐԴ, տե՛ս ԻՐԱՒԱԽՈՀ:
ԻՐԱՒԱԿ, ԻՐԱՒԱԿԱՆ, ա. Իրաւ, արդար, իրաւացի:
ԻՐԱՒԱԿՇԻՌ, տե՛ս ԱՐԴԱՐԱԿՇԻՌ:
ԻՐԱՒԱՄԲ, ԻՐԱՒԱՄԲՔ, տե՛ս ԻՐԱՒՈՒՆՔ-ի տակ:
ԻՐԱՒԱՆԱԼ, չբ. 1. Արդարանալ (իրաւացի և արդար գտնուել): 2. Վերահասու լինել:
ԻՐԱՒԱՊԷՍ, տե՛ս ԻՐԱՒԱԲԱՐ:
ԻՐԱՒԱՐԱՐ, գ. Իրաւընտիր (արդար դատաստան անող):
ԻՐԱՒԱՐԱՐՈՒԹԻՒՆ, գ. Արդարադատութիւն (իրաւարար լինելը):
ԻՐԱՒԱՑԻ, ա. 1. Արդար: 2. Արդարացի, ուղիղ: 3. Իրաւական, օրինական, օրինաւոր: 4. մ. Իրաւամբք, արդարապէս, իրաւաբար:
- ԻՐԱՒԱՑԻ Է, մբ. Արժան է,:
ԻՐԱՒԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. 1. Արդարացուցանել: 2. Ստուգել, ճշմարտել, հաւաստել:
ԻՐԱՒԱՑՈՒՑԻՉ, ա. Արդարացուցիչ:
ԻՐԱՒԸՆՏԻՐ, տե՛ս ԻՐԱՒԱՐԱՐ:
ԻՐԱՒԻ, ա. մ. Իրաւացի, յիրաւի:
ԻՐԱՒՈՐԵԼ, նբ. Իրագործել, ձեռն ի գործ առնել՝ արկանել:
ԻՐԱՒՈՒԹԻՒՆ, գ. Իրաւունք, կարգ, ուղղութիւն:
ԻՐԱՒՈՒՆՔ, գ. 1. Արդարութիւն, արդարադատութիւն: 2. Կանոն, կարգ, սովորութիւն: 3. Բաժին, հաս:
- ԻՐԱՒԱՄԲՔ կամ ԻՐԱՒԱՄԲ, մ. Արդարապէս, իրաւաբար:
- ԻՐԱՒՈՒՆՍ ԱՌՆԵԼ, 1. Իրաւ առնել, դատ առնել, արդարացուցանել: 2. Վրէժս խնդրել, վրէժխնդիր լինել:
- ԻՐԱՒՈՒՆՍ ՏԱԼ կամ ՑՈՒՑԱՆԵԼ. Արդարացուցանել, ջատագովել (պատճառօք):
ԻՐԱՓԱՌ, ա. Փառաւորեալ, փառաւոր:
ԻՐԵԱՐ, ԻՐԵՐԱՑ, գ. Միմեանց:
ԻՐԻՍ, տե՛ս ԾԻԱԾԱՆ:

ԻՐԻՑԱԳՈՅՆ, տե՛ս ԵՐԻՑԱԳՈՅՆ:
ԻՐԻՑՈՒԹԻՒՆ, տե՛ս ԵՐԻՑՈՒԹԻՒՆ:
ԻՐՈՂԱԲԱՐ, տե՛ս ԻՐՕՐԷՆ:
ԻՐՈՂԱԿԱՆ, ա. Իրական, արդիւնական, ներգործական:
ԻՐՈՂՈՒԹԻՒՆ, գ. Իրակութիւն, իրագործութիւն, եղելութիւն, գործ, արարուած, իր:
ԻՐՈՑԵԼ, նբ. Առնել, իրագործել:
ԻՐՕՐԷՆ, մ. Իրողաբար, իրօք, իսկապէս, ճշմարտիւ:
ԻՐՕՔ, մ. Իրաւ, արդեամբք, իսկապէս, արդարեւ:
ԻՑԷ ԶԻ, մ. Երբեմն, երբէք:
ԻՑԷ՛ ԹԷ, մ. եղբ. ձ. 1. Մի՞թէ, արդեօ՞ք: 2. Երանի՛ թէ, իցի՞ւ:
ԻՑԻ՞Ւ, ԻՑԻ՞Ւ ԹԷ, եղբ. ձ. 1. Երանի՛, երանի՛ թէ, օ՛չ, օ՛չ թէ: 2. Առ իմէ՞:
ԻՒՂ, գ. 1. Ձէթ: 2. Կոզի: 3. Մեռոն:
ԻՒՂԱԲԵՐ, ա. Խնկաբեր, խնկազգեաց (կանայք):
ԻՒՂԱԳԼԽԵԼ, նբ. Օծանել, նուիրել, ձօնել:
ԻՒՂԱԳԼԽՈՒԹԻՒՆ, գ. Նուիրումն, օծումն, ձօնումն:
ԻՒՂԱԳԼՈՒԽ, ա. (կրօն.) Նուիրեալ, նուիրական, օծեալ:
ԻՒՂԱԳՈՐԾ, ա. գ. Իւղեփեաց:
ԻՒՂԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ, գ. 1. Իւղեփեցութիւն, իւղարարութիւն: 2. Օծումն, իւղագլխութիւն:
ԻՒՂԱԼԻՐ, ա. Իւղալից (ձէթով լի):
ԻՒՂԱԼԻՑ, տե՛ս ԻՒՂԱԼԻՐ:
ԻՒՂԱՐԱՐՈՒԹԻՒՆ, տե՛ս ԻՒՂԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ (1):
ԻՒՂԱՐԿԵԼ, նբ. Պարարել:
ԻՒՂԱՒՈՐԱԿԱՆ, ա. Անուշահոտ, հաճոյական:
ԻՒՂԵԼ, նբ. Օծանել:
ԻՒՂԵՓԵԱՑ, տե՛ս ԻՒՂԱԳՈՐԾ:
ԻՒՂԵՓԵՑՈՒԹԻՒՆ, տե՛ս ԻՒՂԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ (1):
ԻՒՂԸՆՁԻՒՂ ՓԱՅՏ, տե՛ս ՁԻԹԵՆԻ:
ԻՒՐ[1], ստաց. դ. Իւրական, առանձնական, սեպհական:
– ԻՒՐՔՆ, գ. Իւրայինքն:
ԻՒՐ[2], անձ. դ. Ինքն:
ԻՒՐԱԲՆԱԿ, ա. Իւրակայան, սեպհական:
ԻՒՐԱԽՕՍ, ա. Խօսնայր:
ԻՒՐԱԾԻՆ, ա. 1. Հարազատ (իր ծնած): 2. Իսկական, բուն:
ԻՒՐԱԿԱՅԱՆ, ա. Իւրաբնակ (իր բնիկ կայանն եղող):
ԻՒՐԱԿԱՆ, ա. Իւրային, իւրոյին (իր սեփական):
ԻՒՐԱԿԵՐՏ, ա. Իւրաստեղծ, իւրաշէն:
ԻՒՐԱԿԻՑ, ա. Յարակից, իւրական:
ԻՒՐԱՅԻՆ, ա. Իւրական, իւրոյին:
– ԻՒՐԱՅԻՆՔՆ, գ. յոգն. Իւրքն:
ԻՒՐԱՇԷՆ, տե՛ս ԻՒՐԱԿԵՐՏ:
ԻՒՐԱՊԷՍ, մ. Յատկապէս, առանձնապէս:
ԻՒՐԱՍՏԵՂԾ, ա. Իւրակերտ:
ԻՒՐԱՑԵԱԼ, ա. Սեպհականեալ:
ԻՒՐԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Սեպհականեցուցանել, սեպհականել:
ԻՒՐԱՔԱՆՉԻՒՐ, գ. Անցնիւր, անձնիւր:
ԻՒՐԵԱՆՑԱԿԱՆ, տե՛ս ԻՒՐԱԿԱՆ:
ԻՒՐԵԱՆՑԱՅԻՆՔ, գ. յոգն. Իւրքն, իւրայինքն:
ԻՒՐԵԱՆՑԱՆՄԱՆ, ա. Իւրեանցասարաս:
ԻՒՐԵԱՆՑԱՍԱՐԱՍ, տե՛ս ԻՒՐԵԱՆՑԱՆՄԱՆ:
ԻՒՐՈՅԻՆ, տե՛ս ԻՒՐԱԿԱՆ:
ԻՒՐՈՎԱԲԱՐ, տե՛ս ԻՒՐՈՎԻ:
ԻՒՐՈՎԻ, ԻՒՐՈՎԻՆ, մ. 1. Ինքնին, անձամբ անձին, յանձնէ: 2. Կամովին, ինքնակամ, կամակար: 3. ա. Իւրոյին, իւրական:
ԻՒՐՈՒԹԻՒՆ, գ. Սեպհականութիւն, յատկութիւն, առանձնաւորութիւն:
ԻՒՐՈՒՐՈՅՆ, ա. Ինքնուրոյն, յատուկ, բուն, հարազատ, իւրոյին, իւր:

# Լ

ԼԱԲԻՒՐԻՆԹՈՍ, տե՛ս ԲԱՒԻՂ:
ԼԱԳՈՒԹԻՒՆ, գ. Թուլամորթութիւն, խեննչութիւն, անառակութիւն:
ԼԱԼ, չբ. և նբ. Արտասուել, ողբալ, աշխարել, սգալ, կոծել:
ԼԱԼԱԿԱՆ, ա. գ. Եղերամայր, ողբերգակ, ճայնարկու:
ԼԱԼԱՀԱՌԱՋ, ա. Կականաւոր (լացով և հառաչանքով լի):
ԼԱԼԵՏՂ, գ. Լալօնք, կոծատեղի:
ԼԱԼԻՒՆ, գ. Լալումն, լաց, լալիք, լալութիւն, լալօնք, ողբ, ողբումն:
ԼԱԼԻՔ, ԼԱԼՈՒԹԻՒՆ, ԼԱԼՈՒՄՆ, տե՛ս ԼԱԼԻՒՆ:
ԼԱԼՕՆՔ, տե՛ս 1. ԼԱԼԻՒՆ: 2. ԼԱԼԵՏՂ:
ԼԱԿԱՆ, տե՛ս ԼԵԿԱՆ:
ԼԱԿԱՆԱԳԷՏ, ա. գ. Լականաղէտ:
ԼԱԿԱՆԱԴԷՏ, տե՛ս ԼԱԿԱՆԱԳԷՏ:
ԼԱԿԵԼ, նբ. Լափել:
ԼԱԿԻՇ, տե՛ս ՂԱԿԻՇ:
ԼԱՄԲ, գ. Օղամանեակ:
ԼԱՄԲԱՐ կամ ԼԱՄՊԱՐ, տե՛ս ՂԱՄԲԱՐ:
ԼԱՄԲԵԼ, նբ. Ըստանձնել:
ԼԱՄԲԻՒՐԻՆԹՈՍ, ԼԱՄԲՐԻՆԹ, տե՛ս ԲԱՒԻՂ:
ԼԱՅՆ, ա. Ընդարձակ, արձակ, լայնական:
ԼԱՅՆԱԳՈՅՆ, ա. 1. Ընդարձակագոյն: 2. մ. Ծոխագոյն, լիով:
ԼԱՅՆԱԴԷՄ, ա. ԼԱՅՆԵՐԵՍ:
ԼԱՅՆԱԹԵԻ, տե՛ս ՄԵԾԱԹԵԻ:
ԼԱՅՆԱԼԻՑ, ա. Լիալիճ:
ԼԱՅՆԱԼԻՐ, ա. Լայնատարած:
ԼԱՅՆԱԽՈՐՀՈՒՐԴ, ա. Ընդարձակամիտ, երկայնամիտ:
ԼԱՅՆԱԾԱՒԱԼ, ա. Լայնատարած, ընդարձակ, լայնասփիւռ, համասփիւռ:
ԼԱՅՆԱԿԱՅԼԱԿ, ա. Առատահոս, յորդահոսան:
ԼԱՅՆԱԿԱՆ, տե՛ս ԼԱՅՆ:
ԼԱՅՆԱՁԱՅՆ, ա. Համարձակաձայն:
ԼԱՅՆԱՁԻԳ, ա. Լայնատարած:
ԼԱՅՆԱՆԱԼ, չբ. Լայնել, ընդարձակել:
ԼԱՅՆԱՆԻՍՏ, ա. Արձականիստ, լայնածաւալ:
ԼԱՅՆԱՁԻԼ, տե՛ս ԱՄՈԼԱՁԻԼ:
ԼԱՅՆԱՍՓԻՒՌ, տե՛ս ԼԱՅԼԱԾԱՒԱԼ:
ԼԱՅՆԱՏԱՐԱԾ, ա. Համատարած, լայնածաւալ, լայնաձիգ, լայնալիր:
ԼԱՅՆԱՏԱՐՐ, ա. Ընդարձակատարր:
ԼԱՅՆԱՑՈՒՑԱՆԵԼ, նբ. Լայնել, ընդարձակել, յերկարաձգել:
ԼԱՅՆԱՓՈՂՈՑ, գ. Պողոտայ:
ԼԱՅՆԵԼ, նբ. 1. Լայնացուցանել, ընդարձակել: 2. Անդորրացուցանել, դիւրել: 3. Բանալ, պարզել, յայտնել:
ԼԱՅՆԵՐԵՍ, տե՛ս ԼԱՅՆԱԴԷՄ:
ԼԱՅՆՇԻ, ա. Տափարակ (լայն ձևով):
ԼԱՅՆՈՒԹԻՒՆ, գ. Ընդարձակութիւն, լայնուցք:
ԼԱՅՆՈՒՑՔ, տե՛ս ԼԱՅՆՈՒԹԻՒՆ:
ԼԱՆՋԱԿԻՑ, ա. Գրկախառն:
ԼԱՆՋԱՆՈՑ, տե՛ս ԲԱՆԱԿ$^{2}$:
ԼԱՆՋԱՊԱՀ, ԼԱՆՋԱՊԱՆ, ԼԱՆՋԱՊԱՆԱԿ, տե՛ս ՋՐԱՀ:
ԼԱՆՋՔ, գ. Կուրծք:
ԼԱՇԿԱՄԱՇԿ, տե՛ս ԼԵՇԿԱՄԱՇԿ:
ԼԱՇԿԱՐ, գ. Զօր:
ԼԱՊՏԵՐ, գ. Ճրագ, կանթեղ, ղամբար:
ԼԱՍՏ, գ. Լաստափայտ:
ԼԱՍՏԱՓԱՅՏ, տե՛ս ԼԱՍՏ:
ԼԱՍՏԵԼ, նբ. Հանդերձել, պատրաստել, կազմել, կարգել:
ԼԱՏՐԱՏԵԼ, չբ. նբ. Հաջել, փխբ. բամբասել, զրպարտել:
ԼԱՐ, գ. 1. Առասան, պարան, ապաւանդակ, տուն, չուան, թել: 2. Մղոն: 3. Որոգայթ, հաղբք, թակարդ: 4. յոգն. Ջիլք (պարանոցի):

ԼԱՐԵԼ, նբ. Ձգտել (աղեղի լարը):
ԼԱՑ, տե՛ս ԼԱԼԻԻՆ:
ԼԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Ողբացուցանել:
ԼԱՒ, ա. 1. Բարի, բարեմիտ: 2. Քաջ, առաքինի, շնորհալի: 3. Ընտիր, պատուական: 4. Հաճելի, հաճոյական: 5. Օգտակար, շահեկան: 6. մ. Լաւ ևս, լաւագոյնս, բարւոք:
- ԼԱՒ ԵՒՍ, տե՛ս ԼԱՒ (6):
- ԼԱՒ Է, մբ. Բարւոք է, հաճոյ է, օգուտ է:
ԼԱՒԱԲԱՐ, մ. Բարւոք, քաջապէս:
ԼԱՒԱԲԱՐՈՒԹԻՒՆ, գ. Առաքինութիւն:
ԼԱՒԱԳՈՅՆ, ԼԱՒԱԳՈՅՆՍ, ա. մ. Լաւ ևս (աւելի լաւ, աւելի լաւ կերպով):
ԼԱՒԱԽՕՍ, ա. Քաղցրախօս:
ԼԱՒԱԿԱՄ, ա. Բարեսէր:
ԼԱՒԱԿԱՄՈՒԹԻՒՆ, գ. Բարեխոհութիւն, բարեբարոյութիւն:
ԼԱՒԱԿՆ, ա. Քաղցրահայեաց:
ԼԱՒԱՀԱՅԵԱՑ, ա. Լաւակն, ողջամիտ, աննախանձ:
ԼԱՒԱՆԱԼ, չբ. 1. Բարիանալ (բարի՝ լաւ դառնալ): 2. Զօրանալ, տիրել, իշխել:
ԼԱՒԻՄԱՑ, ա. Քաջիմաց, իմաստուն, ողջամիտ, մտացի:
ԼԱՒՈՒԹԻՒՆ, գ. Բարութիւն, բարելաւութիւն, բարեպաշտութիւն, առաքինութիւն, քաջութիւն:
ԼԱՒՐԱ, գ. Վանք:
ԼԱՓԱՏԵԼ, նբ. Լափել, կեղեքել:
ԼԱՓԵԼ, ԼԱՓԼԻԶԵԼ, նբ. 1. Լակել: 2. փխբ. Կլանել, սպառել, ծախել:
ԼԵԱՌՆ, գ. Սար:
ԼԵԱՌՆԱԿԱՆ, տե՛ս ԼԵՌՆԱԿԱՆ:
ԼԵԱՌՆԱԿՈՂՄՆ, տե՛ս ԼԵՌՆԱԿՈՂՄՆ:
ԼԵԱՌՆԱՆԱԼ, տե՛ս ԼԵՌՆԱՆԱԼ:
ԼԵԱՐԴ, գ. (կզմխս.) Լերդ:
ԼԵԳէՈՆ, ԼԵԳէՈՎՆ, գ. 1. Փաղանգ, գունդ: 2. Զինուոր (լեգէոնի): 3. Դև (չար ոգի): 4. ա. Լեգէոնական, յոգնախումբ, բազմագունդ:
ԼԵԳէՈՆԱԽՈՒՄԲ, ա. Յոգնախումբ, բազմախումբ, բազմագունդ:
ԼԵԶՈՒ, գ. 1. Խօսարան, պատասխանարան: 2. Բարբառ (որևէ ազգի լեզու): 3. Ազգ: 4. Խօսք: 5. Մարդ (խօսող անձ): 6. Շուրթն (մի բանի ծայրը):
- ԼԵԶՈՒԻ ՏԱԼ. Շաղակրատել:
ԼԵԶՈՒԱԳԱՐ, ա. Չարալեզու, շատախօս, շաղփաղփ, շաղաւաշուրթն:
ԼԵԶՈՒԱԳԱՐԵԼ (իմ), չբ. Շաղփաղփել, դատարկաբանել, բարբաջել, բաջաղել:
ԼԵԶՈՒԱԳԱՐՈՒԹԻՒՆ, գ. Չրախօսութիւն, շաղփաղփութիւն, շաղակրատութիւն, բանդագուշանք:
ԼԵԶՈՒԱՀԱՏ, ա. մ. Լեզուատ (լեզուն կտրած, կտրուած լեզուով):
ԼԵԶՈՒԱՑԻՆ, տե՛ս ԼԵԶՈՒԱՆԻ:
ԼԵԶՈՒԱՆԵԼ (իմ), տե՛ս ԼԵԶՈՒԱԳԱՐԵԼ (իմ):
ԼԵԶՈՒԱՆԻ, ա. Շատախօս, շաղփաղփ, լեզուագար:
ԼԵԶՈՒԱՆՈՒԹԻՒՆ, գ. Շատխօսութիւն, շաղփաղփութիւն:
ԼԵԶՈՒԱՏ, ա. Լեզուահատ:
ԼԵԶՈՒԼ, նբ. Լիզել, լիզուլ:
ԼԵԿԱՆ, գ. Կոնք, լական, ոտնլուաց:
ԼԵՂԱԼ, տե՛ս ԼՈՂԱԼ:
ԼԵՂԱԽԱՌՆ, ա. Դառնաթորմի:
ԼԵՂԱՀԱՄ, ա. Դառն, մաղձահամ:
ԼԵՂԻ, գ. Մաղձ:
ԼԵՇԿ, ա. Լերկ:
ԼԵՇԿԱՄԱՇԿ, ա. Լաշկամաշկ, լերկամորթ:
ԼԵՇԿԵԼ (իմ), չբ. Մաշել, լերկանալ:
ԼԵՊԵՇՏԻ, ա. Լպիրշ, լիրբ, յանդուգն, խենէշ, անառակ:
ԼԵՌՆԱԲԵՐՁ, ա. Լեռնաձև:
ԼԵՌՆԱԲՆԱԿ, ա. 1. Միայնակեաց (լեռներում): 2. Միակեցական, առանձնական:
ԼԵՌՆԱԴԱՇՏ, ԼԵՌՆԱԴԱՇՏԱԿ, գ. Հովիտ:
ԼԵՌՆԱԽՈՅՍ, ա. Լեռնամուտ:
ԼԵՌՆԱԿ, գ. Բլուր:

ԼԵՌՆԱԿԱՆ, ա. գ. 1. Լեռնային: 2. Լեռնական, լեռնակեաց, լեռնակեցիկ:
ԼԵՌՆԱԿԱՐԿԱՌ, տե՛ս ԼԵՌՆԱԿՈՅՏ:
ԼԵՌՆԱԿԵԱՑ, ԼԵՌՆԱԿԵՑԻԿ, ա. գ. 1. Լեռնական (լեռների բնակիչ): 2. Լեռնաբնակ, միայնակեաց:
ԼԵՌՆԱԿԵՑՈՒԹԻՒՆ, գ. Միայնակեցութիւն (լեռնակեաց լինելը):
ԼԵՌՆԱԿՈՂՄՆ, գ. 1. Լեառնակողմն: 2. ա. Լեռնային:
ԼԵՌՆԱԿՈՅՏ, ա. Լեռնակարկառ (լեռան պէս կուտակուած՝ դիզուած):
ԼԵՌՆԱՁԵՒ, ա. Լեռնանման, լեռնաբերձ:
ԼԵՌՆԱՁՈՐ, տե՛ս ԼԵՌՆԱՄԷՋ:
ԼԵՌՆԱՄԷՋ, գ. Լերանցամէջ, լեռնաձոր:
ԼԵՌՆԱՄՈՒՏ, տե՛ս ԼԵՌՆԱԽՈՅՍ:
ԼԵՌՆԱՅԻՆ, ա. գ. 1. Լեռնական (որտեղ լեռներ կան): 2. Լեռնակեաց:
ԼԵՌՆԱՅՈԼՈՎ, ա. Լեռնային (լեռներով շրջապատուած):
ԼԵՌՆԱՆԱԼ, չբ. Բարձրանալ, կուտանալ, մեծանալ:
ԼԵՌՆԱՆՄԱՆ, տե՛ս ԼԵՌՆԱՁԵՒ:
ԼԵՌՆՈՏԵԱՅՔ, գ. յոգն, Լեռնականք:
ԼԵՌՆՈՏՆ, գ. Ստորոտ, ոտն (լեռան):
ԼԵՌՆՕՐԷՆ, ա. մ. Լեռնանման:
ԼԵՍԱՆ, գ. Յեսան:
ԼԵՍՈՒԼ, նբ. Մանրել, մաշել, փշրել:
ԼԵՍՈՒՐ, տե՛ս ԿՂԵՍՈՒՐ:
ԼԵՐԱՆՑԱՄԷՋ, տե՛ս ԼԵՌՆԱՄԷՋ:
ԼԵՐԴ, տե՛ս ԼԵԱՐԴ:
ԼԵՐԴԱԲԵԿԵԼ, նբ. Ահաբեկ առնել, ահաբեկել:
ԼԵՐԴԱԲՈՅԹ, տե՛ս ԲԼԹԱԿ (2):
ԼԵՐԿ, ա. 1. Լեշկ: 2. նման. Մերկ: 3. (քեր.) Նուրբ (բաղաձայն):
ԼԵՐԿԱՄԱՐՄԻՆ, ա. Լերկամորթ, լեշկամաշկ:
ԼԵՐԿԱՄՈՐԹ, տե՛ս ԼԵՐԿԱՄԱՐՄԻՆ:
ԼԵՐԿԱՆԱԼ, չբ. Մերկել, մերկանալ:
ԼԵՐԿՈՒԹԻՒՆ, գ. Մերկութիւն:
ԼԵՒԻԱԹԱՆ, գ. Վիշապ (ծովային):
ԼԵՓ, ԱՌ ԼԵՓ, մ. ա. Առ ի չեղ, զառ ի վայր, դարաՀոս:
ԼԻ, ա. 1. Ջեղուն, առատ, անպակաս: 2. Անթերի, ամբողջ, կատարեալ: 3. մ. Լիով, լրութեամբ, խպառ, ամենայնիւ:
– ԼԻ ԱՌՆԵԼ. Լնուլ, լցուցանել:
– ԼԻ ԿԱՏԱՐԵԱԼ, ԼԻ ԲՈՎԱՆԴԱԿ, տե՛ս ԼԻԱԿԱՏԱՐ:
ԼԻԱԲԱԽՏԻԿ, ա. մ. Բարերջանիկ (բարերախտութեամբ լի):
ԼԻԱԲԵՐ, ա. Բազմաբեղուն:
ԼԻԱԲԵՐԱՆ, ա. մ. Բերանալիր:
ԼԻԱԲՈՒՂԽ, ա. Ջեղուն, առատաբուղխ, յորդառատ:
ԼԻԱԲՈՒՌՆ, ա. մ. Բռնալիր, լիաձեռն:
ԼԻԱԳԻՐԿՔ, ա. մ. Գրկալիր, լիալիճ:
ԼԻԱԳՈՅՆ, ա. 1. Յորդառատ (աւելի լի): 2. Կատարելագոյն:
ԼԻԱԼԱՅՆ, ա. Ընդարձակ, անպակասելի:
ԼԻԱԼԻԾ, ա. Լայնալիճ, լիագիրկք:
ԼԻԱԽՈՐՏԻԿ, ա. Յղփացեալ:
ԼԻԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Լիութիւն, առատութիւն:
ԼԻԱԿԱՏԱՐ, ա. մ. Լի կատարեալ, լի բովանդակ, լիով, կատարելապէս, տիրապէս:
ԼԻԱՀԱՆՃԱՐ, ա. ԲազմաՀանճար, իմաստուն:
ԼԻԱՁԵՌՆ, ա. մ. Առատաձեռն, լիաբուռն:
ԼԻԱՁԻԳ, ա. Հաստաձիգ, կորովաձիգ:
ԼԻԱՁԻՐ, ա. Առատաձիր:
ԼԻԱՄԱԳԻԼ, ա. Բազմամագիլ:
ԼԻԱՆԱԼ, չբ. 1. Ծիխանալ: 2.Գալ ի լրումն (լուսնի մասին):
ԼԻԱՊԱՏԱՐ, ա. Լի և լի, լիուլի, լրապատար, յեղցեալ, առատ, զեղուն, լիակատար, անթերի:
ԼԻԱՊԱՐԳԵՒ, ա. Առատապարգև, առատաձիր:
ԼԻԱՊԷՍ, մ. 1. Լիով, առատապէս: 2.

Անթերի, կատարելապէս:
ԼԻԱՊՏՈՒՂ, ա. Պտղալից, պտղաբեր:
ԼԻԱՍԱՀՄԱՆ, ա. մ. Լայնատարած (ընդարձակ սահմանով):
ԼԻԱՐԱՐ, ա. Առլցեալ:
ԼԻԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. 1. Լնուլ, լցուցանել, առատացուցանել: 2. Շատացուցանել: 3. Լրացուցանել, կատարելագործել:
ԼԻԲԱՆՈՆ, գ. Կնդրուկ:
ԼԻ ԵՒ ԼԻ, ա. մ. Լիուլի, պղպղուն, լի կատարեալ, լի բովանդակ, լիակատար, անթերի, խպառ:
ԼԻՋԱՆԵԼ, նբ. Լեզուլ, լափել:
ԼԻՋԱՋԻՆՋ ԱՌՆԵԼ. Բնաջինջ առնել:
ԼԻՋԵԼ, ԼԻՋՈՒԼ, նբ. 1. Լիզանել, լեզուլ: 2. փխբ. Լափել, ծախել, սպառել:
ԼԻԿ, տե՛ս ԼԻԾ:
ԼԻԾ, գ. Ծովակ, լիկ:
- ԼԻԾ ԼՈՒՍՈՅ. Աչք:
- ԼԻԾ ՀՐՈՅ. Դժոխք:
ԼԻՆԵԼ (իմ), չբ. 1. Եղանել, գտանել, գոլ: 2. Ստեղծանել, գոյանալ: 3. Ծնանել, սերել, ծագել: 4. Կալ, բնակել, դադարել: 5. Գործել, կատարել: 6. Դիպել, դէպ լինել: 7. Պատաղել, դեգերել:
- ԼԻՆԵԼ ԱՌՆ. Ամուսնանալ (կնոջ մասին):
- ԼԻՆԵԼ ԸՆԴ ՈՒՄԵՔ. Խառնակել (մէկի հետ կենակցել):
ԼԻՆԵԼՈՒԹԻՒՆ, գ. 1. Եղանութիւն, ստեղծումն, արարչութիւն: 2. Գոյաւորութիւն, գոյացութիւն, գոյութիւն, ծնունդ, ծագումն:
ԼԻՆՈՒՄՆ ՈՐԴՒՈՅ. Որդեծնութիւն, մանկաբարութիւն, մանկագործութիւն:
ԼԻՈՎ, մ. ա. Լիապէս, առատապէս, անպակաս, լիուլի:
ԼԻՈՒԹԻՒՆ, գ. 1. Լիր, բովանդակութիւն, լրութիւն, բաւականութիւն, առատութիւն, ճոխութիւն: 2. Յագուրդ: 3. Լրումն (լուսնի):
ԼԻՈՒԼԻ, տե՛ս ԼԻ ԵՒ ԼԻ:
ԼԻՐ, գ. Լրումն, լրութիւն, բովանդակութիւն:
- ԼԻՐ ԱՐԿԱՆԵԼ. Լնուլ (խրամը, փոսը ևն):
ԼԻՐԲ, ա. 1. Անամօթ, անպատկառ, լպիրշ, ժպիրհ: 2. Լրբենի (լրբութիւն արտայայտող):
ԼԻՑՔ, գ. Քուեայ, քուէ:
ԼԻՒՂ, ԼԻՒՂԵԼ (իմ), տե՛ս ԼՈՂ, ԼՈՂԵԼ (իմ):
ԼԼԿԱՆՔ, գ. Լլկութիւն, լլկումն, լլուկ, խոշտանգանք, տանջանք, չարչարանք, տառապանք, նեղութիւն, տագնապ:
ԼԼԿԵԼ, նբ. 1. Խոշտանգել, տանջել, չարչարել, նեղել, աշխատ առնել: 2. Բռնաբարել, տառապեցուցանել:
ԼԼԿԻՉ, ա. Լլկող:
ԼԼԿՈՂ, տե՛ս ԼԼԿԻՉ:
ԼԼԿՈՒԹԻՒՆ, ԼԼԿՈՒՄՆ, ԼԼՈՒԿ, տե՛ս ԼԼԿԱՆՔ:
ԼԾԱԲԱՐՁ, տե՛ս ԼԾԱՁԻԳ:
ԼԾԱԴԻՐ, ա. Հարկադիր, ծառայացուցիչ:
ԼԾԱԿ, գ. 1. Բառնալիք, նիգ: 2. Լուծ (կչեռքի ճողը):
ԼԾԱԿԻՑ, ա. գ. 1. Վաստակակից, գործակից, ընկերակից: 2. Զուգական, հաղորդ, կցորդ, հաւասարորդ: 3. Կողակից, զուգակից, կենակից, ամուսին: 4. Մերձաւոր, արիւնակից:
ԼԾԱԿՌՒԻ ԼԻՆԵԼ (իմ), տե՛ս ԼԾԱԿՌՈՒԵԼ (իմ):
ԼԾԱԿՌՈՒԵԼ (իմ), չբ. Լծակռիւ լինել (լծակցի հետ կռուել):
ԼԾԱԿՌՈՒՈՒԹԻՒՆ, գ. Վէճ, կռիւ, հակառակութիւն (լծակցի՝ մերձաւորի հետ կռուելը):
ԼԾԱԿՑԵԼ, նբ. 1. Զուգել, զուգակցել, կցորդել, հաւասարել, միացուցանել: 2. Ամուսնացուցանել:
ԼԾԱԿՑՈՒԹԻՒՆ, գ. 1. Լուծք, զոյգք: 2. Ամուսնութիւն, պսակ: 3. Կապակցութիւն, ընտանութիւն, կցորդութիւն,

գործակցութիւն, կապ: 4. Ընկերութիւն, միաբանութիւն:
ԼԾԱՁԻԳ, ա. Լծաբարձ:
ԼԾԱՐՁԱԿ, ա. Լծընկէց (լծից ազատ):
ԼԾԵԼ, նբ. Լծորդել, կապակցել, զուգել, կցորդել, կցել:
ԼԾԸՆԿԷՑ, ա. Անհնազանդ, ապստամբ (լուծը վայր գցող՝ թօթափող):
ԼԾՆԲԱՐՁ, տե՛ս ԼԾԱԲԱՐՁ:
ԼԾՈՐԴ, ա. Լծակից, կցորդ, յարակից:
ԼԾՈՐԴԱԾԻՆ, ա. Ծննդակից, հարազատ:
ԼԾՈՐԴԵԼ, տե՛ս ԼԾԵԼ:
ԼԾՈՐԴՈՒԹԻՒՆ, գ. 1. Կցորդութիւն, մասնակցութիւն, կապակցութիւն, զօդ: 2. (քեր.) Խոնարհումն:
ԼԿՆԵԼ (իմ), չբ. Անամօթել, լրբել, լկտել:
ԼԿՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ԼԿՏՈՒԹԻՒՆ:
ԼԿՏԱԼ, ԼԿՏԱՆԱԼ, չբ. Լկտենալ, լկտել, լկնել, անամօթել, լրբել, ժպրհել:
ԼԿՏԱՆՔ, տե՛ս ԼԿՏՈՒԹԻՒՆ:
ԼԿՏԵԼ (իմ), ԼԿՏԵՆԱԼ, տե՛ս ԼԿՏԱԼ, ԼԿՏԱՆԱԼ:
ԼԿՏԻ, ա. Լիրբ, անպարկեշտ, անամօթ, անառակ:
ԼԿՏԻՔ, գ. Պատգարակ, գահաւորակ, դեսպակ:
ԼԿՏՈՒԹԻՒՆ, գ. Լրբութիւն, անամօթութիւն, անառակութիւն, ժպրհութիւն:
ԼՃԱԾՈՎ, գ. Ծովալիճ (ծովի նման մեծ լիճ):
ԼՃԱԿ, գ. Լիճ (փոքր), ծովակ:
ԼՄԵԼ, նբ. Ճմլել, մալել, կակղել, կակղացուցանել:
ԼՆՈՒԼ, նբ. 1. Լցուցանել, հեղուլ, գեղուլ: 2. Լրացուցանել, կատարել: 3. Յագեցուցանել:
- ԼՆՈՒԼ ՁԱՂԵՂՆ. Մտանել ընդ աղեղն:
- ԼՆՈՒԼ ՁՁԵՌՆ. Ձեռնադրել, քահանայացուցանել, քահանայագործել:
-ԼՆՈՒԼ ԼՈՒՍՆԻ. Լիանալ, գալ ի լրումն:
ԼՈԳԱՆԱԼ, չբ. 1. Լուանալ: 2. Մկրտել:
ԼՈԳԱՆՔ, գ. Լուացումն, լոգումն, լոգութիւն:
ԼՈԳԱՐԱՆ, գ. Լուացարան, աւազան, բաղանիք:
ԼՈԳԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Լուանալ (լոգանալ տալ):
ԼՈԳՈՒԹԻՒՆ, ԼՈԳՈՒՄՆ, տե՛ս ԼՈԳԱՆՔ:
ԼՈԿ, ա. 1. Սոսկ, միայն: 2. Սին, թափուր, ունայն, անմասն, անբաժ: 3. մ. Սոսկապէս, լոկաբար, ևեթ:
- ԼՈԿ Ի ԼՈԿՈՅ, տե՛ս ԼՈԿ (3)
ԼՈԿԱԲԱՐ, մ. Սոսկապէս, միայն:
ԼՈԿԵԼ (իմ), կ. չբ. Զրկել, թափուր մնալ:
ԼՈԿՈՒԹԻՒՆ, գ. Զքաւորութիւն (ունեցածից զուրկ՝ թափուր մնալը):
ԼՈՂ, գ. Լիւղ, լոյղ, լուղ (լողալը, լող տալը):
ԼՈՂԱԼ, չբ. Լողել, լուղալ, լուղել [ա) լող տալ, բ) օդում թեւածել՝ ճախրել]:
ԼՈՂԱԿ, գ. Ղուղակ, ղօղակ, կայտառ (ջրային կենդանի, մասնաւորապէս՝ ձուկ):
ԼՈՂԱԿԱՆ, ա. Լուղական (լողալու ընդունակ):
ԼՈՂԵԼ, տե՛ս ԼՈՂԱԼ:
ԼՈՂՈՐԴ, գ. Լուղորդ, ղօղորդ:
ԼՈՄԱՑ, տե՛ս ԼՈՒՄԱՑ:
ԼՈՅԾ, ա. 1. Ծորուն, հեղուկ, հոսանուտ: 2. Հալեալ, կակուղ: 3. Թոյլ, մեղմ, մեղկ:
ԼՈՅՂ, տե՛ս ԼՈՂ:
ԼՈՅՍ, գ. 1. Լուսաւորութիւն, փայլ: 2. նման. Աչք:
- Ի ԼՈՅՍ, մ. Յայտնապէս, հրապարակաւ:
- ԼՈՅՍ ԱՌՆՈՒԼ. Լուսաւորել, փայլել:
- ԱՌ ԼՈՅՍ ԱԾԵԼ. Ծնանել:
- Ի ԼՈՅՍ ԱԾԵԼ՝ ՀԱՆԵԼ. Յայտ ածել:
- Ի ԼՈՅՍ ԳԱԼ. Ի յայտ գալ:
ԼՈՅՍԸՆԿԱԼ, տե՛ս ԼՈՒՍԸՆԿԱԼ:
ԼՈՅՍՒՋՈՅՑ, ա. Լուսանցոյց, լուսամուտ:
ԼՈՅՏՔ, տե՛ս ԼՈՒՏԱՆՔ:

ԼՈՐ, գ. (կենդբ.) Լորամարգ, լորամարգի:
ԼՈՐԱՄԱՐԳ, ԼՈՐԱՄԱՐԳԻ, տե՛ս ԼՈՐ:
ԼՈՐՁՆ, գ. Թուք, տողուկք:
ԼՈՐՁՆԱՅԻՆ, ԼՈՐՁՆԱՏԵՍԱԿ, ա. Գոլորշատեսակ, ծխատեսակ:
ԼՈՐՏ, ա. Ծոյլ, յոյլ, հեղգ, պղերգ, դանդաղկոտ:
ԼՈՐՏԵԼ (իմ), չբ. Յոգնել, թուլանալ, վաստակաբեկ լինել:
ԼՈՒ, տե՛ս ԼՈՒՐ:
- ԼՈՒ ԱՌՆԵԼ, տե՛ս ԼՈՒՐ ԱՌՆԵԼ:
- ԼՈՒ ԼԻՆԵԼ, տե՛ս ԼՈՒՐ ԼԻՆԵԼ:
ԼՈՒԱԼԻ, ԼՈՒԱԼԻՔ, գ. Լուանալիք, աւազան, բաղանիք, ջերմուկք:
- ՋՈՒՐ ԼՈՒԱԼԵԱՑ, տե՛ս ԼՈՒԱՑՈՒ, ԼՈՒԱՑՈՒԿՔ:
ԼՈՒԱՆԱԼ, նբ. 1. Մաքրել (ջրով), մկրտել, ողողել: 2. փխբ. Յանդիմանել, նախատել: 3. չբ. Լոգանալ:
ԼՈՒԱՆԱԼԻՔ, գ. 1. Լուացարար: 2. Լուալիք, բաղանիք:
ԼՈՒԱՐԱՆ, գ. Լուացարան, լոգարան, աւազան, կոնք:
ԼՈՒԱՑԱՐԱՆ, տե՛ս ԼՈՒԱՐԱՆ:
ԼՈՒԱՑԱՐԱՐ, գ. Լուանալիք, թափիչ:
ԼՈՒԱՑԻՉ, ա. Մաքրիչ, սրբիչ:
ԼՈՒԱՑՈՂԱԿԱՆ, ա. Մաքրողական:
ԼՈՒԱՑՈՒ, ԼՈՒԱՑՈՒԿՔ, գ. Ջուր լուալեաց:
ԼՈՒԱՑՈՒՄՆ, գ. 1. Լուացք (լուանալը, լուացուելը): 2. Մկրտութիւն: 3. Բաղանիք:
ԼՈՒԱՑՔ, տե՛ս ԼՈՒԱՑՈՒՄՆ:
ԼՈՒԾ, գ. 1. փխբ. Բեռն (մէկի վրայ դրուած դժուարին և ծանր պարտականութիւն՝ գործ): 2. Ամոլք (միասին լծուող մի զոյգ եզ): 3. Լծակ (կշէռքի): 4. Կշիռ, նժար (կշէռքի թաթ): 5. (աստղգ.) Կշիռ (համաստեղութիւն):
ԼՈՒԾԱԿԱՆ, ա. 1. Լոյծ, ծորուն, հեղուկ, հոսանուտ: 2. Յեղյեղուկ, փոփոխական, եղծանելի, ապականացու: 3. Մաքրողական (փորլուծութիւն առաջացնող):
ԼՈՒԾԱՆԵԼ, նբ. 1. Արձակել, քակել, ի բաց բառնալ, եղծանել, խափանել, խախտել: 2. Ցրել, փարատել, վերացուցանել, ջնջել: 3. Բացատրել, մեկնել: 4. Կակղացուցանել, մեղմացուցանել, թուլացուցանել, հալել, քայքայել: 5. կ. չբ. Թուլանալ, հիւծանել: 6. Անկանել (իշխանութիւնից՝ պատուից զրկուել): 7. Իջավանել, ագանել, հանգչել, մնալ, բնակել:
- ԼՈՒԾԱՆԵԼ ԶԿԵԱՆՍ. Մեռուցանել, սպանանել:
ԼՈՒԾԱՆՔ, գ. Լուծումն, քակտումն, վնաս:
ԼՈՒԾԵԼ, տե՛ս ԼՈՒԾԱՆԵԼ:
ԼՈՒԾԻՉ, ա. Լուծանող:
ԼՈՒԾՈՂԱՊԷՍ, մ. Վերլուծութեամբ:
ԼՈՒԾՈՒԱԾ, գ. Լուծութիւն, լուծումն, թուլութիւն, մեղկութիւն, տկարութիւն:
ԼՈՒԾՈՒԹԻՒՆ, գ. 1. Թուլութիւն (լոյծ՝ թոյլ՝ կակուղ լինելը): 2. Թուլամորթութիւն:
ԼՈՒԾՈՒՄՆ, գ. 1. Արձակումն, քակտումն, եղծումն, բարձումն: 2. Թուլասրտութիւն: 3. Մահ: 4. Պատուիրանազանցութիւն, օրինազանցութիւն: 5. Անկումն (իշխանութիւնից):
ԼՈՒՂ, տե՛ս ԼՈՂ:
ԼՈՒՂԱԼ, տե՛ս ԼՈՂԱԼ:
ԼՈՒՂԱԿ, տե՛ս ԼՈՂԱԿ:
ԼՈՒՂԱԿԱՆ, տե՛ս ԼՈՂԱԿԱՆ:
ԼՈՒՂԵԼ, տե՛ս ԼՈՂԱԼ:
ԼՈՒՂՈՐԴ, տե՛ս ԼՈՂՈՐԴ:
ԼՈՒՄԱՅ, գ. Լոմայ, բնիոն, խերևէչ:
ԼՈՒՄԱՅԱՓՈԽ, ԼՈՒՄԱՓՈԽ, գ. Սեղանաւոր, հատավաճառ:
ԼՈՒՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ԼՍԵՑՈՒՑԱՆԵԼ:
ԼՈՒՌ, ա. մ. Լռուն, լռին, լռիկ, անխօս, անբարբառ, հանդարտ:
- ԼՈՒՌ ԼԻՆԵԼ՝ ԿԱԼ. Լռել:
- ԼՈՒՌ ԼՈՒՌ, ԼՈՒՌ ՄՈՒՌ, ա. մ. Ան-

խօս, անչչունչ, լռիկ, մնջիկ:
ԼՈՒՍԱԲԱՆԵԼ, նբ. Յայտնաբանել, պարզաբանել:
ԼՈՒՍԱԲԵՐ, ա. 1. Լուսածին: 2. Լուսանցոյց: 3. Արուսեակ, աստղ առաւօտին:
ԼՈՒՍԱԲԵՐԱՆ, ա. Լուսաբուղխ:
ԼՈՒՍԱԲՆԱԿ, ա. Լուսաճեմ, երկնային:
ԼՈՒՍԱԲՈՐԲՈՔ, ա. Լուսափայլ, լուսապայծառ, լուսավառ:
ԼՈՒՍԱԲՈՒՂԽ, ա. Լուսածին:
ԼՈՒՍԱԳԵՂ, ա. Լուսազարդ:
ԼՈՒՍԱԳՆԱՑ, ա. Լուսաշաւիղ, լուսընթաց:
ԼՈՒՍԱԶԱՐԴ, ա. Պայծառ, լուսաւոր, լուսափայլ:
ԼՈՒՍԱԶԱՐԴԵԼ, նբ. 1. Լուսաւորել, պայծառացուցանել: 2. չբ. Պայծառանալ, փայլել:
ԼՈՒՍԱԶԱՐԴՈՒԹԻՒՆ, գ. Լուսափայլութիւն, պայծառութիւն:
ԼՈՒՍԱԶԳԱԾ, տե՛ս ԼՈՒՍԱԶԳԵԱՑ:
ԼՈՒՍԱԶԳԵԱՑ, ա. Լուսազգեստ, լուսազգեցիկ, լուսարկու, լուսազարդ, լուսափայլ, լուսեղէն, պայծառազգեաց, ճառագայթազգեաց:
ԼՈՒՍԱԶԳԵՆՈՒԼ, չբ. Լուսազգեստել:
ԼՈՒՍԱԶԳԵՍՏ, տե՛ս ԼՈՒՍԱԶԳԵԱՑ:
ԼՈՒՍԱԶԳԵՍՏԵԼ (իմ), տե՛ս ԼՈՒՍԱԶԳԵՆՈՒԼ:
ԼՈՒՍԱԶԳԵՍՏՈՒԹԻՒՆ, գ. Լուսափայլութիւն, պայծառազգեստութիւն, պայծառազարդութիւն:
ԼՈՒՍԱԶԳԵՑԻԿ, տե՛ս ԼՈՒՍԱԶԳԵԱՑ:
ԼՈՒՍԱԹՈՅՐ, ա. Լուսապայծառ:
ԼՈՒՍԱԼԻ, ա. Լուսալիր, լուսալից, լուսաւոր, լուսապայծառ, լուսայեղց:
ԼՈՒՍԱԼԻՐ, ա. 1. տե՛ս ԼՈՒՍԱԼԻ: 2. Լուսապատար (լրումն առած՝ լուսին):
ԼՈՒՍԱԼԻՑ, տե՛ս ԼՈՒՍԱԼԻ:
ԼՈՒՍԱԾԱԳ, ա. Լուսաճաճանչ, լուսանշոյլ:
ԼՈՒՍԱԾԱԳԵԼ (իմ), չբ. Լուսափայլել:
ԼՈՒՍԱԾԱՒԱԼ, ա. Լուսասփիւռ:
ԼՈՒՍԱԾԻՆ, ա. Լուսաբուղխ, լուսափայլ, սպիտակափայլ:
ԼՈՒՍԱԾՆԵԱԼ, ա. Լուսածնունդ:
ԼՈՒՍԱԾՆՈՒՆԴ, տե՛ս ԼՈՒՍԱԾՆԵԱԼ:
ԼՈՒՍԱԿԱԶՄ, ա. Լուսակերտ, լուսեղէն:
ԼՈՒՍԱԿԱԼ, գ. Ճրագարան, ճրագակալ, աշտանակ, գունդ, կանթեղ:
ԼՈՒՍԱԿԱՆ, ա. Լուսաւոր:
ԼՈՒՍԱԿԱՐԿԱՋ, ա. Լուսաճաճանչ:
ԼՈՒՍԱԿԵՐՊ, ա. Լուսատեսիլ:
- ԼՈՒՍԱԿԵՐՊՔ, գ. յոգն. Լուսեղէնք, հրեշտակք:
ԼՈՒՍԱԿԵՐՊԵԼ, նբ. Լուսաւորել, պայծառացուցանել:
ԼՈՒՍԱԿԵՐՏ, ա. Լուսակազմ:
ԼՈՒՍԱԿԻԶՆ, ա. 1. Սպիտակակիզն: 2. Լուսասփիւռ, լուսափայլ, պայծառ:
ԼՈՒՍԱԿԻՐ, ա. Լուսընկալ, լուսազգեաց, լուսալիր, լուսաճաճանչ:
ԼՈՒՍԱՀՐԱՇ, ա. Լուսազարդ, լուսագեղ:
ԼՈՒՍԱՁԵՒ, ա. Լուսատեսիլ, լուսակերպ, պայծառ:
ԼՈՒՍԱՁԵՒԱԳՈՅՆ, ա. Պայծառագոյն:
ԼՈՒՍԱՁԵՒՈՒԹԻՒՆ, գ. Լուսատեսակութիւն, պայծառութիւն:
ԼՈՒՍԱՃԱՃԱՆՉ, ա. Լուսապայծառ, լուսանշոյլ, պայծառանշոյլ, ճառագայթարձակ:
ԼՈՒՍԱՃԵՄ, ա. Լուսազգեաց, լուսալիր, լուսեղէն, լուսահրաշ:
ԼՈՒՍԱՄՈՒՏ, գ. Լուսանցոյց, պատուհան:
ԼՈՒՍԱՅԵՂՑ, ա. Լուսալիր:
ԼՈՒՍԱՆԱԼ, դիմազուրկ չբ. Առաւօտանալ, մերկանալ, առաւօտու:
ԼՈՒՍԱՆԵՐԿ, ա. Լուսափայլ, լուսերանգ:
ԼՈՒՍԱՆԻՒԹ, ա. 1. Լուսեղէն: 2. Լուսատու, հոգևոր:
ԼՈՒՍԱՆԿԱՐ, ա. Լուսազարդ, լուսագեղ, լուսափայլ, լուսակազմ:
ԼՈՒՍԱՆՄԱՆ, ա. Լուսատեսակ:

ԼՈՒՍԱՆՇՈՅԼ, ա. Լուսածագ, լուսաճաճանչ, արփիափայլ, լուսափայլ, մաքրափայլ, գերամաքուր:
ԼՈՒՍԱՆՈՐՈԳ, ա. Լուսազարդ, լուսաՀրաշ:
ԼՈՒՍԱՆՈՐՈԳԵԼ, նբ. Պայծառացուցանել:
ԼՈՒՍԱՆՑՈՅՑ, ա. գ. Լուսանցք, լուսամուտ, պատուՀան:
ԼՈՒՍԱՆՑՔ, գ. 1. տե՛ս ԼՈՒՍԱՆՑՈՅՑ: 2. նման. Աչք:
ԼՈՒՍԱՇԱՐԺ, ա. Լուսաբուղխ, լուսածին:
ԼՈՒՍԱՇԱՒԻՂ, ա. 1. Լուսասփիւռ, լուսագնաց, լուսարշաւ: 2. Պայծառափայլ: 3. Անմոլար:
ԼՈՒՍԱՇՈՒՔ, ա. Լուսափայլ, շքեղաշուք, լուսապատիւ:
ԼՈՒՍԱՋՈՒ, ա. Լուսաշաւիղ, լուսընթաց:
ԼՈՒՍԱՊԱՃՈՅՃ, ա. Լուսանկար, լուսաՀրաշ:
ԼՈՒՍԱՊԱՅԾԱՌ, ա. Լուսափայլ, պայծառալոյս, լուսաւոր:
ԼՈՒՍԱՊԱՏԱՐ, ա. 1. Լուսալից, լուսայեղց: 2. Լուսալիր (լրումն առած՝ լուսին):
ԼՈՒՍԱՊԱՏԻՒ, տե՛ս ԼՈՒՍԱՇՈՒՔ:
ԼՈՒՍԱՊԱՐԳԵՒ, ա. Լուսատու:
ԼՈՒՍԱՊԷՍ, մ. Լուսաւորապէս (լոյսի պէս՝ նման):
ԼՈՒՍԱՋԱՀԱՅԵՂՑ, ա. ՋաՀազգեաց, լուսազգեաց:
ԼՈՒՍԱՍԱՐԱՍ, տե՛ս ԼՈՒՍԱՏԵՍԱԿ:
ԼՈՒՍԱՍՏԱՑ, տե՛ս ԼՈՒՍԱԶԳԵԱՑ:
ԼՈՒՍԱՍՓԻՒՌ, ա. Լուսածաւալ:
ԼՈՒՍԱՎԱՌ, ա. Լուսաբորբոք:
ԼՈՒՍԱՏԵՍԱԿ, ա. 1. Լուսատեսիլ, լուսատեսիկ, լուսաձեւ, լուսակերպ: 2. Գեղեցիկ (պայծառ տեսքով):
ԼՈՒՍԱՏԵՍԱԿՈՒԹԻՒՆ, գ. Պայծառութիւն (լուսատեսակ լինելը):
ԼՈՒՍԱՏԵՍԻԼ, ԼՈՒՍԱՏԵՍԻԿ, տե՛ս ԼՈՒՍԱՏԵՍԱԿ:
ԼՈՒՍԱՏՈՒ, ա. Լուսաւորիչ, լուսացուցիչ, պայծառարար:
- ԼՈՒՍԱՏՈՒ ԼԻՆԵԼ. ԼՈՒՍԱՒՈՐԵԼ:
ԼՈՒՍԱՐԱՆ, գ. 1. Աչք, 2. ՊատուՀան, լուսամուտ, լուսանցոյց, լուսանցք: 3. Մկրտարան (մկրտութեան աւազան կամ եկեղեցի):
ԼՈՒՍԱՐԿՈՒ, ա. Լուսազգեաց:
ԼՈՒՍԱՐՇԱՒ, ա. Լուսաշաւիղ:
ԼՈՒՍԱՐՓԻ, ա. Լուսափայլ, լուսաճաճանչ:
ԼՈՒՍԱՑՈՒՑԻՉ, ա. Լուսաւորիչ, լուսատու:
ԼՈՒՍԱՒՈՐ, ա. 1. Պայծառ, լուսափայլ, անաղօտ, ջինջ, յստակ, փայլուն: 2. Լուսատու:
- ԼՈՒՍԱՒՈՐ ԱՌՆԵԼ, 1. Լուսաւորել, պայծառացուցանել: 2. Յայտնի առնել:
- ԼՈՒՍԱՒՈՐ ՄԵԾ՝ ՓՈՔՐ. Արեգակն. լուսին:
ԼՈՒՍԱՒՈՐԱԲԱՐ, տե՛ս ԼՈՒՍԱՒՈՐԱՊԷՍ:
ԼՈՒՍԱՒՈՐԱԳՈՅՆ, ա. 1. Պայծառագոյն: 2. ա. մ. Յստակագոյն, պարզագոյն, յայտնագոյն:
ԼՈՒՍԱՒՈՐԱԿԱՆ, ա. 1. Լուսաւորիչ, լուսատու: 2. Լուսաւոր, յայտնի, պարզ:
ԼՈՒՍԱՒՈՐԱՊԷՍ, մ. Լուսաւորաբար, լուսապէս, պայծառապէս: 2. Յայտնապէս:
ԼՈՒՍԱՒՈՐԵԼ, նբ. 1. Պայծառացուցանել, լուսաւոր առնել, լուսատու լինել: 2. Ծագեցուցանել, ճառագայթել: 3. Յայտնել, ցուցանել, ծանուցանել, պարզել, բացայայտել: 4. չբ. Փայլել, ծագել, երեւելի լինել:
ԼՈՒՍԱՒՈՐԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. 1. Փայլեցուցանել: 2. չբ. (լունարէնի նմանողութեամբ) Ծագել, փայլել:
ԼՈՒՍԱՒՈՐԻՉ, ա. Լուսատու, պայծառարար:

ԼՈՒՍԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Պայծառութիւն, փայլումն, լոյս: 2. Ճառագայթումն: 3. Յայտնութիւն, տեղեկութիւն: 4. Մկրտութիւն:
ԼՈՒՍԱՓԱՅԼ, ա. 1. Լուսապայծառ: 2. փխբ. Պայծառ, մաքուր, յստակ, պարզ, յայտնի:
ԼՈՒՍԱՓԱՅԼԵԱՆ, տե՛ս ԼՈՒՍԱՓԱՅԼ:
ԼՈՒՍԱՓԱՅԼԵԼ, չբ. Պայծառանալ, լուսաւորել, փայլատակել, շողշողել:
ԼՈՒՍԱՓԱՅԼՈՒԹԻՒՆ, գ. Շողումն, ցոլումն, լուսաւորութիւն, պայծառութիւն:
ԼՈՒՍԱՓԱՅԼՈՒՄՆ, գ. Փայլատակումն (լուսափայլելը):
ԼՈՒՍԱՓԱՌ, ա. Լուսահրաշ, լուսափայլ:
ԼՈՒՍԵՂԷՆ, ա. 1. Լուսանիւթ, հրանիւթ, լուսաւոր: 2. գ. յոգն. Հրեշտակք:
ԼՈՒՍԵՐԱՄՔ, գ. յոգն. (կրօն) Լուսեղէնք, հրեշտակք (սրբերի և հրեշտակների դասեր):
ԼՈՒՍԵՐԱՆԳ, ա. Լուսապայծառ, լուսանկար, լուսաներկ, լուսատեսակ, լուսափայլ:
ԼՈՒՍԵՐԵՒՈՒԹԻՒՆ, գ. Լուսափայլութիւն, լուսաւորութիւն:
ԼՈՒՍԸՆԹԱՑ, տե՛ս ԼՈՒՍԱԳՆԱՑ:
ԼՈՒՍԸՆԿԱԼ, տե՛ս ԼՈՒՍԱԿԻՐ:
ԼՈՒՍԻՒՆ, գ. Լուսաւոր փոքր, մահիկ, միջնալուսին:
ԼՈՒՍՆԱԼԻՐ, գ. Լրումն (լուսնի):
ԼՈՒՍՆԱԿ, տե՛ս ԼՈՒՍՆԱԿԱՑ:
ԼՈՒՍՆԱԿԱՑ, գ. Լուսնակ (լուսնի լոյս):
ԼՈՒՍՆԱԿԱՆ, ա. Լուսնային, լուսնաւոր:
ԼՈՒՍՆԱՀԱՐ, տե՛ս ԼՈՒՍՆՈՏ:
ԼՈՒՍՆԱՁԵՒ, ա. Լուսնատեսիլ:
ԼՈՒՍՆԱՅԻՆ, տե՛ս ԼՈՒՍՆԱԿԱՆ:
ԼՈՒՍՆԱՏԵՍԻԼ, տե՛ս ԼՈՒՍՆԱՁԵՒ:
ԼՈՒՍՆԱՒՈՐ, տե՛ս ԼՈՒՍՆԱԿԱՆ:
ԼՈՒՍՆԵԱԿ, տե՛ս ԼՈՒՍՆՈՏ:
ԼՈՒՍՆԹԱԳ, տե՛ս ԱՐԱՄԱԶԴԱՑ:
ԼՈՒՍՆՈՏ, ա. գ. Լուսնահար, լուսնեակ:
ԼՈՒՍՈՒՆԱԿ, ա. Լուսաւոր, լուսատու:
ԼՈՒՏԱԼ, նբ. չբ. Բամբասել, նախատել, թշնամանել, հայհոյել, անիծանել, չարաբանել, չարախօսել, պարսաւել:
ԼՈՒՏԱՆՔ, գ. Թշնամանք, նախատինք, դարովանք, անարգանք:
ԼՈՒՐ, գ. 1. Լու, լսելիք, լսելութիւն, լսողութիւն, լսաւորութիւն, ունկնդրութիւն: 2. Համբաւ, հուչակ: 3. Քարոզութիւն: 4. Ձայն, հնչիւն: 5. Հնազանդութիւն:
- ԼՈՒՐ ԱՌՆԵԼ. Լու առնել, լսելի առնել, լսեցուցանել:
- ԼՈՒՐ ԼԻՆԵԼ. Լու լինել, լսելի լինել:
ԼՈՒՐԹ, տե՛ս ԼՈՒՐՋ (1):
ԼՈՒՐՋ, ա. 1. Լուրթ, կապուտակ, երկնագոյն: 2. Զուարթատեսիլ, զուարթ, պարզերես: 3. Արթուն, զուարթուն, զգաստ, սթափ:
- Ի ԼՐՋԷ, Ի ԼՐՋԵԱՑ, մ. Յարթուն, յարթունս:
ԼՈՒՑԱՆԵԼ, նբ. Վառել, բորբոքել, այրել:
ԼՈՒՑԿԻ, գ. Նիւթ (վառելու):
ԼՈՒՑՈՒՄՆ, գ. Վառումն, բորբոքումն:
ԼՊԻՐԾ, ա. Լպրծոտ, լպրծուտ:
ԼՊԻՐՇ, ա. Լպրշական, լկտի, անամօթ, անպատկառ, լիրբ:
ԼՊՐԾԵԼ[1], նբ. Սահեցուցանել:
ԼՊՐԾԵԼ[2], (իմ), չբ. Սահել, գայթել, սայթաքել:
ԼՊՐԾՈՏ, ԼՊՐԾՈՒՏ, տե՛ս ԼՊԻՐԾ:
ԼՊՐՇԱԿԱՆ, տե՛ս ԼՊԻՐՇ:
ԼՊՐՇԱՆՔ, տե՛ս ԼՊՐՇՈՒԹԻՒՆ:
ԼՊՐՇԵԼ (իմ), չբ. Լրբել, լկտանալ, անամօթել, յանդգնել, ժպրհել:
ԼՊՐՇՈՒԹԻՒՆ, գ. Լպրշանք, լրբութիւն, ժպրհութիւն, անամօթութիւն, յանդըգնութիւն:
ԼՌԱԿԱՆ, ա. Առանձնական, մեկուսի:
ԼՌԱԿԱՑ, ա. Լռանիստ, լռասէր, լուռ:
ԼՌԱՆԻՍՏ, տե՛ս ԼՌԱԿԱՑ:
ԼՌԱՍԷՐ, տե՛ս ԼՌԱԿԱՑ:

ԼՌԵԼ, չբ. 1. Լուռ լինել, լուռ կալ: 2. Հանդարտել, առանձնանալ, դադարել, կասել:
ԼՌԵԼԵԱՅՆ, մ. 1. Լռիկ, ծածկաբար, գաղտ, մեղմով: 2. Առանձինն: 3. ա. Թաքուն, գաղտնի, ծածուկ:
ԼՌԵԼՈՒԹԻՒՆ, գ. Լռութիւն (լուռ լինելը՝ մնալը):
ԼՌԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. 1. Ափիբերան առնել, ափիբերանել, պապանձեցուցանել (լռել տալ): 2. Հանդարտեցուցանել, դադարեցուցանել, կարճել:
ԼՌԻԿ, ա. մ. 1. Լուռ, անխօս: 2. Լռելեայն:
ԼՌԻՆ, տե՛ս ԼՈՒՌ:
ԼՌՈՒԹԻՒՆ, գ. 1. Լռելութիւն, լռումն: 2. Հանդարտութիւն:
ԼՌՈՒՄՆ, տե՛ս ԼՌՈՒԹԻՒՆ:
ԼՌՈՒՆ, տե՛ս ԼՈՒՌ:
ԼՍԱՍԷՐ, ա. Լսողասէր, հարցասէր, ուսումնասէր:
ԼՍԱՍԻՐՈՒԹԻՒՆ, գ. Հարցասիրութիւն, ուսումնասիրութիւն:
ԼՍԱՐԱՆ, գ. 1. Լսելիք, ունկն, ականջ: 2. Հանդիսարան, ատեան, դահլիճ: 3. Համալսարան:
ԼՍԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Լսելութիւն, լուր: 2. Լսելիք, լսարան:
ԼՍԵԼ, նբ. չբ. 1. Ունկնդրել, ականջել: 2. Ըմբռնել, ի միտ առնուլ, իմանալ: 3. Ունկնդիր լինել, անսալ, հնազանդել:
ԼՍԵԼԻ, ա. 1. Ըմբռնական, իմանալի: 2. Լսող, ունկնդիր:
- ԼՍԵԼԻ ԱՌՆԵԼ, տե՛ս ԼՈՒՐ ԱՌՆԵԼ:
- ԼՍԵԼԻ ԼԻՆԵԼ, տե՛ս ԼՈՒՐ ԼԻՆԵԼ:
ԼՍԵԼԻՔ, գ. 1. Ունկն, ականջք, լսարանք: 2. Լսելութիւն, ունկնդրութիւն:
ԼՍԵԼՈՒԹԻՒՆ, գ. 1. Լսողութիւն, ունկնդրութիւն: 2. Հլութիւն (անսալը, հլու լինելը):
ԼՍԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Լսելի առնել, լուուցանել:
ԼՍՆԱԳՈՅՆ, ա. Սպիտակափայլ:
ԼՍՆԱՆԱԼ, չբ. Սպիտականալ:
ԼՍՆԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Ապականել (անչուք և տգեղ սպիտակութեան վերածել):
ԼՍՈՂ կամ ԼՍՕՂ, ա. գ. 1. Ունկնդիր, հնազանդ: 2. (յունարէն ոճով) Աշակերտ:
ԼՍՈՂԱՍԷՐ, տե՛ս ԼՍԱՍԷՐ:
ԼՍՈՂՈՒԹԻՒՆ, գ. 1. Լսելութիւն, լսումն, լուր, ունկնդրութիւն: 2. Հնազանդութիւն:
ԼՍՈՒՄՆ, գ. Լսելութիւն, լսողութիւն, ունկնդրութիւն, հնազանդութիւն:
ԼՐԱԿԱՆ, ա. Լիակատար, լրիւ:
ԼՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Լրութիւն, լիութիւն:
ԼՐԱԿՑՈՒԹԻՒՆ, գ. Միաբանութիւն, բովանդակութիւն:
ԼՐԱՊԱՏԱՐ, տե՛ս ԼԻԱՊԱՏԱՐ:
ԼՐԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Լցուցանել, լիացուցանել, լնուլ:
ԼՐԲԱԲԱՆԱԿԱՆ, ա. Լրբենի, լիրբ:
ԼՐԲԱԲԱՐ, մ. Ցանդգնաբար:
ԼՐԲԱՆՔ, տե՛ս ԼՐԲՈՒԹԻՒՆ:
ԼՐԲԵԼ (իմ), չբ. Լկտանալ, անամօթել, ժպրհել, յանդգնել:
ԼՐԲԵՆԻ, ա. Լիրբ, ժպիրհ, անամօթ, անպատկառ:
ԼՐԲՈՒԹԻՒՆ, գ. Լրբանք, անամօթութիւն, անպատկառութիւն, ժպրհութիւն, յանդգնութիւն:
ԼՐԹԱԳՈՅՆ, ա. 1. Կապուտակ: 2. Աղօտ, մթնագոյն:
ԼՐԹԱՆԱԼ, չբ. Կապուտակել:
ԼՐԹՆԱՏԵՍԻԼ, ա. Աղօտ, նուազ (լոյս):
ԼՐԻՒ, տե՛ս ԼԻՐ:
ԼՐՈՒԹԻՒՆ[1], գ. 1. Լրումն, լիութիւն, բովանդակութիւն, անպակասութիւն, առատութիւն, ատոքութիւն, գեղումն: 2. Ցագուրդ, կշտապնդութիւն, ճարակ: 3. Կատարումն, աւարտումն:
ԼՐՈՒԹԻՒՆ[2], գ. Լուր, լսելութիւն, լսումն:

ՆԻՒԹԱԿԱՅ, գ. Նիւթ, մարմին:
ՆԻՒԹԱԿԱՆ, ա. Նիւթեղէն, նիւթաւոր, տարրաւոր, տարրեղէն, մարմնեղէն, ըզգալի, զգայական, երկրաւոր:
ՆԻՒԹԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Մարմնատեսակութիւն, տարրաւորութիւն:
ՆԻՒԹԱԿԻՑ, ա. Համանիւթ:
ՆԻՒԹԱՀԱՒԱՔ, ա. Ընչաքաղց:
ՆԻՒԹԱՊԱՇՏ, ա. Տարրապաշտ, կռապաշտ:
ՆԻՒԹԱՒՈՐ, ա. 1. Նիւթական, նիւթեղէն: 2. Ջրի, լոյծ:
ՆԻՒԹԵԼ, նբ. 1. Նիւթագործել, մանել, ոլորել, հիւսել, հենուլ: 2. Հայթայթել, նօթճել, կազմել, պատրաստել, մեքենայել, հնարել, ջանալ, ճարտարել, յարմարել, յերիւրել, կարկատել, կցկցել:
ՆԻՒԹԵՂԷՆ, տե՛ս ՆԻՒԹԱԿԱՆ:
ՆԻՒԹԵՂԻՆԱԳՈՅՆ, տե՛ս ՆԻՒԹԱԳՈՅՆ:
ՆԻՒԹԵՂԻՆՈՒԹԻՒՆ, գ. ՆԻՒԹԱԿԱՆՈՒԹԻՒՆ:
ՆԻՒԹԾՈՒՆ, ա. Թրծուն, թուրծ:
ՆԻՒԹՈՒԹԻՒՆ, գ. Նիւթ, տարր, գոյացութիւն:
ՆԻՒՍ, տե՛ս ՆՈՒՍ:
ՆԽՈԹԵԼ կամ ՆԽՈԹՈՒԼ, նբ. Ընխոթել, մխել:
ՆԿԱՆ, ՆԿԱՆԱԿ, գ. Գրտակ, չօթ, պլակինդր, պղակունդ:
ՆԿԱՏԵԼ, նբ. Նայել, դիտել, ակնարկել, զննել, լրտեսել, նշմարել:
ՆԿԱՏ ԼԻՆԵԼ, տե՛ս ՆԿԱՏԵԼ:
ՆԿԱՏՈՒԹԻՒՆ, ՆԿԱՏՈՒՄՆ, գ. Դիտումըն, դիտաւորութիւն, մտադրութիւն, նպատակ:
ՆԿԱՐ, գ. 1. Պատկեր, կենդանագիր: 2. Անկուած (գունագոյն):
ՆԿԱՐԱԳԵՂ, ա. Նկարէն:
ՆԿԱՐԱԳԻՐ, գ. 1. Պատկեր, նմանութիւն, կնիք, տիպ, կերպարան: 2. Բնագիր: 3. ա. Նկարագրեալ, կենդանագրեալ, օրինակեալ: 4. Նկարիչ:
ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Նկարագրութիւն:
ՆԿԱՐԱԳՐԵԼ, նբ. 1. Կենդանագրել, նկարել: 2. Փորագրել, դրոշմել, քանդակել: 3. Գծագրել, տպաւորել, ստորագրել, ստուերագրել:
ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Նկարագրականութիւն: 2. Նկարագիր, պատկեր: 3. Ստուերագրութիւն, գծագրութիւն, ստորագրութիւն:
ՆԿԱՐԱԴՐՈՇՄ, գ. Նշանագիր, տառ:
ՆԿԱՐԱԿԵՐՊ, ա. 1. Նկարակերտ, նկարէն: 2. գ. Նկար, պատկեր:
ՆԿԱՐԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ, տե՛ս ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ:
ՆԿԱՐԱԿԵՐՏ, ա. 1. Նկարիչ, կենդանագիր: 2. Նկարակերպ:
ՆԿԱՐԱԿԵՐՏՈՒԹԻՒՆ, գ. 1. Անկուած, կիտուած, ասղնագործութիւն: 2. Նկար:
ՆԿԱՐԱՊԱՃՈՅՃ, ա. Բազմագունի, բազմագոյն, գունագոյն:
ՆԿԱՐԱՊԱՏԿԵՐ, գ. Պատկեր (նկարուած):
ՆԿԱՐԵԼ, նբ. 1. Կենդանագրել: 2. Կերպարանել, տպաւորել, դրոշմել: 3. Գրել: 4. Ստուերագրել, ստորագրել, օրինակել:
ՆԿԱՐԵՂԷՆ, տե՛ս ՆԿԱՐԷՆ:
ՆԿԱՐԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Ձեւացուցանել:
ՆԿԱՐԷՆ, ա. Նկարեղէն, նկարակերպ, խայտախարիւ, պիսակ, պէսպէս:
ՆԿԱՐԻՉ, ա. գ. Պատկերագործ, պատկերահան, կենդանագիր, նկարակերտ:
ՆԿԱՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Նկարումն: 2. Նկար:
ՆԿԱՐՈՒՄՆ, տե՛ս ՆԿԱՐՈՒԹԻՒՆ (1):
ՆԿԱՐՉՈՒԹԻՒՆ, գ. 1. Գծագրութիւն: 2. Քանդակ, դրուագ:
ՆԿՆԱԽՈՀ, ա. Յետսամիտ:
ՆԿՆԱՀԱՍԱԿ, ա. Կարճահասակ, կարճիկ, թզուկ (բոյս):
ՆԿՆԱՁԵՒ, ա. Փոքրիկ, նուաստ:

ՆԿՆՈՒԹԻՒՆ, գ. Նուաստութիւն, յետնութիւն:
ՆԿՈՒՂ, գ. Խորք, խորափիտ:
ՆԿՈՒՆ, ա. Նուաստ, ստորին, չնչին, ցած:
ՆԿՐՏԵԼ (իմ), չբ. Զգտել, ճգնել, թեւակոխել, գուն գործել, ջանալ:
ՆԿՐՏՈՒՄՆ, գ. Զգտումն, բերումն, փոյթ, յառաջադիմութիւն:
ՆՀԱՆԳ, գ. Կոկորդիլոս:
ՆՄԱՆ, ա. 1. Հանգոյն, համատիպ, միօրինակ, նոյնպիսի: 2. ա. մ. նխդ. Հանգէտ, պատշաճ, համեմատ, ի դէպ:
ՆՄԱՆԱԲԱՐ, մ. Նմանապէս, հետեւաբար, ի դէպ:
ՆՄԱՆԱԲԵՐԵԼ, նբ. Օրինակել:
ՆՄԱՆԱԳՈՅՆ, ա. 1. Համանման, նոյնպիսի, յարմարագոյն: 2. մ. նխդ. Հանգոյն, պէս:
ՆՄԱՆԱԳՐՈՒԹԻՒՆ, գ. Նկարագրութիւն:
ՆՄԱՆԱԿԱՆ, ա. Նման, նմանողական:
ՆՄԱՆԱԿԵՐՊ, ա. Նմանատիպ:
ՆՄԱՆԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ, գ. Նմանութիւն, կերպարանակցութիւն:
ՆՄԱՆԱԿԻ, մ. նխդ. Նման, նմանապէս, նմանաբար, հանգոյն:
ՆՄԱՆԱԿԻՐ, ա. Համանման:
ՆՄԱՆԱԿԻՑ, ա. 1. Համանման, հաւասար: 2. Հետեւող:
ՆՄԱՆԱՀԱՆ, ա. Պատկերահան:
ՆՄԱՆԱՄԱՍՆ, ա. Նմանամասնեալ:
ՆՄԱՆԱՄԱՍՆԵԱԼ, տե՛ս ՆՄԱՆԱՄԱՍՆ:
ՆՄԱՆԱՋԱՐՋԱՐ, տե՛ս ՆՄԱՆԱՎԻՇՏ:
ՆՄԱՆԱՊԷՍ, մ. 1. Նմանաբար, նմանակի, միօրինակ, զուգապէս, նոյնպէս, նայապէս: 2. նխդ. Հանգոյն:
ՆՄԱՆԱՍԱՐԱՍ, ա. Նոյնօրինակ, նոյնպիսի:
ՆՄԱՆԱՍԵՐ, ա. մ. Համասեր, նմանացեղ, ազգակից, համասեռ, համանման:
ՆՄԱՆԱՎԻՇՏ, ա. Նմանաչարչար:
ՆՄԱՆԱՏԻՊ, տե՛ս ՆՄԱՆԱԿԵՐՊ:
ՆՄԱՆԱՑԵՂ, տե՛ս ՆՄԱՆԱՍԵՐ:
ՆՄԱՆԵԼ[1], նբ. Նմանեցուցանել:
ՆՄԱՆԵԼ[2] (իմ), չբ. Հետեւել, նմանող լինել, նմանողակից լինել, բերել զնմանութիւն, պատկերազգեստ լինել:
- ՆՄԱՆԻ, մբ. Ի դէպ գայ, երեւի, թուի:
- ՆՄԱՆՈՂ ԼԻՆԵԼ, տե՛ս ՆՄԱՆԵԼ (իմ):
ՆՄԱՆԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. 1. Համեմատել, յարմարել, պատկանել: 2. Տե՛ս ՆՄԱՆԵԼ[1]:
ՆՄԱՆԻ, տե՛ս ՆՄԱՆ:
ՆՄԱՆՈՂԱԿԱՆ, տե՛ս ՆՄԱՆԱԿԱՆ:
ՆՄԱՆՈՂԱԿԻՑ ԼԻՆԵԼ, տե՛ս ՆՄԱՆԵԼ[2] (իմ):
ՆՄԱՆՈՐԴ, ա. Նմանակից, հետեւող, հաւասար:
ՆՄԱՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Հետեւողութիւն: 2. Կերպարան, ձեւ, երեւոյթ, տիպ, օրինակ, սարաս, տարազ:
- ԲԵՐԵԼ ԶՆՄԱՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ՆՄԱՆԵԼ[2] (իմ):
ՆՄԱՆՈՒՆԱԿ, ՆՄԱՆՑՕՐԷՆ, ՆՄԱՆՕՐԷՆ, ա. մ. նխդ. Նմանապէս, նոյնպէս, նմանակի, նոյնպիսի:
ՆՆՋԵԼ, չբ. 1. Նիրհել, ի քուն երթալ՝ լինել՝ մտանել: 2. Մտանել առ կին: 3. Հանդարտել, դադարել: 4. Վախճանել, մեռանել:
- ՆՆՋԵՑԵԱԼ, ա. գ. Վախճանեալ, մեռեալ:
ՆՆՋԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. 1. Նիրհեցուցանել: 2. Դադարեցուցանել, խափանել, հանդարտեցուցանել: 3. Բռնաբարել:
ՆՆՋԻՒՆ, ՆՆՋՈՒՄՆ, գ. 1. Նինջ, քուն: 2. Զուգաւորութիւն: 3. Վախճան, մահ, փոխումն:
ՆՇԱՆ, գ. 1. Նիշ, նշանակ: 2. Ակնարկութիւն: 3. Կնիք, դրոշմ, հետք: 4. Հրաշք, սքանչելիք: 5. Դրօշ, դրօշակ: 6. (երկրչ.) Կէտ: 7. Կենդրոնն, բեւեռ: 8. Նշանախեց, նշանագիր: 9. Նշաւակ, նպատակ:

-ՍՈՒՐԲ ՆՇԱՆ, տե՛ս ԽԱՉ:
ՆՇԱՆԱԲԱՆ, գ. Բանից նիշ:
ՆՇԱՆԱԲԱՐՁ, ա. Նշանակիր:
ՆՇԱՆԱԳԻՐ, գ. 1. Գիր, տառ, նշանադրոշմ: 2. Թուղթ, նամակ: 3. Արձանագրություն, յիշատակարան: 4. Դպիր, նոտար: 5. (աստղգ.) Կենդանակերպ:
ՆՇԱՆԱԳՈՐԾ, ա. 1. Սքանչելագործ, հրաշագործ: 2. Հրաշալի, սքանչելի:
ՆՇԱՆԱԳՈՐԾԵԼ, նբ. Հրաշագործել:
ՆՇԱՆԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ, գ. 1. Հրաշագործութիւն, սքանչելագործութիւն: 2. Նըշանք, հրաշք, սքանչելիք:
ՆՇԱՆԱԳՐԵԼ, նբ. 1. Գրել, շարադրել: 2. Գծագրել, նկարել, նշանակել:
ՆՇԱՆԱԳՐՈՒԹԻՒՆ, տե՛ս ՆՇԱՆԱԳԻՐ (1):
ՆՇԱՆԱԴԷՏ, ա. Նշանադիտող, հրաշադէտ, կիւսաՀմայ, ըղձապատում:
ՆՇԱՆԱԴԻՄԱԿ, ա. Ակներև, հոյակապ, հռչակաւոր:
ՆՇԱՆԱԴԻՏՈՂ, տե՛ս ՆՇԱՆԱԴԷՏ:
ՆՇԱՆԱԴՐՈՇՄ, տե՛ս ՆՇԱՆԱԳԻՐ (1):
ՆՇԱՆԱԶԳԵԱՑ, ա. 1. Նշանագործ: 2. Խաչազգեաց:
ՆՇԱՆԱԼՈՅԾ, ա. գ. Նշանադէտ, երազահան:
ՆՇԱՆԱԽԵՑ, գ. Գրակէս:
ՆՇԱՆԱԽՆԴԻՐ, ա. Հրաշադէտ:
ՆՇԱՆԱԿ, գ. 1. Նշան, նպատակ, նշաւակ: 2. Յիշելիք, նշանակիչ: 3. Յայտարարութիւն, ազդեցութիւն: 4. Խորհուրդ: 5. Հրաշք: 6. Գաւազան:
ՆՇԱՆԱԿԱԲԱՐ, մ. Նշանակաւ, նշանակալէս, խորհրդաբար, այլաբանաբար:
ՆՇԱՆԱԿԱԿԱՆ, ա. 1. Խորհրդաւոր: 2. Նշանակիչ, նշանական:
ՆՇԱՆԱԿԱՆ, ա. Նշանակիչ, յայտարար:
ՆՇԱՆԱԿԱՊԷՍ, ՆՇԱՆԱԿԱՒ, տե՛ս ՆՇԱՆԱԿԱԲԱՐ:
ՆՇԱՆԱԿԱՒՈՐ, ա. 1. Նշանակական, խորհրդաւոր: 2. Նշանաւոր, հռչակաւոր:
ՆՇԱՆԱԿԵԼ, նբ. 1. Ծանուցանել, ակնարկել, ազդել: 2. Դրոշմել, գծագրել:
ՆՇԱՆԱԿԵՐՏ, տե՛ս ՀՐԱՇԱԿԵՐՏ:
ՆՇԱՆԱԿԻՉ, ա. Նշանակող, նշանակ:
ՆՇԱՆԱԿԻՐ, ա. Դրօշակիր, նշանաբարձ:
ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆ, գ. Իմաստ, միտք, բովանդակութիւն:
ՆՇԱՆԱՑԵԼ, նբ. Ակնարկել:
ՆՇԱՆԱՑՈՅՑ, ա. Ցայտարար:
ՆՇԱՆԱՒՈՐ, ա. 1. Երևելի, յայտնի: 2.Ականաւոր, հռչակաւոր, հոյակապ, անուանի: 3. Նշանակիր, դրօշակիր: 4. Նշանակական, խորհրդաւոր:
ՆՇԱՆԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. Նշան:
ՆՇԱՆԵԼ, նբ. 1. Նշաւորել, կնքել, տպաւորել: 2. Նշանացել:
ՆՇԱՒԱԿ, գ. 1. Նշան, նպատակ: 2. նման. Ձաղանք: 3. ա. Խայտառակ: 4. Նշանաւոր, անուանի (նշանաձիգ):
ՆՇԱՒԱԿԱՆՔ, տե՛ս ՆՇԱՒԱԿՈՒԹԻՒՆ:
ՆՇԱՒԱԿԵԼ, նբ. Առակել, խայտառակել, ձաղել:
ՆՇԱՒԱԿՈՒԹԻՒՆ, գ. 1. Խայտառակութիւն, առականք, ծանականք: 2. Մականուն:
ՆՇԱՒՈՐԵԼ, տե՛ս ՆՇԱՆԵԼ (1):
ՆՇԽԱՐ, գ. 1. Ցաւելուած, կտորակ, կտոր, մասն: 2. նման. Մնացորդ: 3. (եկեղց.) Մասունք:
ՆՇԿԱՀԵԼ, նբ. չբ. 1. Մերժել, անարգել, արհամարհել, անգոսնել: 2. Ընդվզել, փտարանջել, ապստամբել:
ՆՇԿԱՀԵԼԻ, ա. Արհամարհելի:
ՆՇՄԱՐ, ՆՇՄԱՐԱՆ, ՆՇՄԱՐԱՆՔ, գ. Նշան, հետք, երևոյթ, տեսիլ:
ՆՇՄԱՐԵԼ, նբ. Նկատել, դիտել, նայել:
ՆՇՄԱՐԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Հայեցուցանել, յուշ առնել:
ՆՇՈՂ, տե՛ս ՆՇՈՅԼ:
ՆՇՈՂԱԶԱՐԴ, տե՛ս ՆՇՈՒԼԱԶԱՐԴ:
ՆՇՈՂԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Նշողել:
ՆՇՈՂԵԼ, նբ. 1. տե՛ս ՆՇՈՂԱՑՈՒՑԱ-

*ՆԵԼ: 2. Նշմարել:*
*ՆՇՈՅԼ, գ. Շող, ճառագայթ, ճաճանչ, շառայլ, փայլ, ցոլք:*
*ՆՇՈՒԼԱԳԵՂ, ա. Ճաճանչագեղ:*
*ՆՇՈՒԼԱԶԱՐԴ, ա. Ճաճանչազարդ, շողազարդ, լուսաւոր, լուսատու, մաքրափայլ:*
*ՆՇՈՒԼԱՓԱՅԼ, ա. Փայլուն, շողշողենի:*
*ՆՇՏԻՐ, գ. Նշտրակ:*
*ՆՇՏՐԱԿ, տե՛ս ՆՇՏԻՐ:*
*ՆՈԽԱԶ, գ. Այծ (արու), քօշ, քաղ:*
*ՆՈԽԱԶԵՐԳՈՒ, ա. գ. Ողբերգակ:*
*ՆՈԽԱԶԵՐԳՈՒԹԻՒՆ, գ. Ողբերգութիւն, եղերերգութիւն:*
*ՆՈՂԿ, ա. Գարշելի:*
*ՆՈՂԿԱԼ, ՆՈՂԿՏԱԼ, չբ. Խորշել, գարշել, պժգալ, տաղտկալ, զզուել, քստմնել, յափրանալ, ձանձրանալ:*
*ՆՈՂԿԱՑՈՒՑԱՆԵԼ կամ ՆՈՂԿՏԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Գարշեցուցանել:*
*ՆՈՂԿՈՒԹԻՒՆ և ՆՈՂԿՏՈՒԹԻՒՆ, գ. Գարշանք, տաղտկութիւն, զզուանք, յափրութիւն:*
*ՆՈԾ, գ. 1. (բսբ.) Նոճի, կիպարի, կիպարիս: 2. ա. Նոճեայ, կիպարեայ:*
*ՆՈԾԵԱՑ, տե՛ս ՆՈԾ(2):*
*ՆՈԾԻ, տե՛ս ՆՈԾ:*
*ՆՈԾԻԱԾԱՀ, ա. Նոճիաճաղճախ:*
*ՆՈԾԻԱԾԱՂԾԱԽ, տե՛ս ՆՈԾԻԱԾԱՀ:*
*ՆՈՄԻԿՈՍ, գ. Դիւանադպիր, նօտար:*
*ՆՈՅՆԱԲԱՐ, մ. Նոյնպէս:*
*ՆՈՅՆԱԳՈՅ, ա. 1. Համագոյ, համագոյակից: 2. Անփոփոխ:*
*ՆՈՅՆԱԶԳԻ, ա. Համազգի, համասեռ, համատեսակ:*
*ՆՈՅՆԱԽՈՀՈՒԹԻՒՆ, գ. Համախոհութիւն, համակամութիւն:*
*ՆՈՅՆԱԿԵՐՊ, ա. Միակերպ, միօրինակ, նոյնպիսի:*
*ՆՈՅՆԱԿԻ, մ. Նոյնաբար, նոյնպէս:*
*ՆՈՅՆԱԿՑԵԼ (իմ), չբ. Միաբանել, միաձայնել:*
*ՆՈՅՆԱՁԵՒ, ա. մ. Միօրինակ, համանման, նոյնատիպ:*
*ՆՈՅՆԱՁԵՒԱԲԱՐ, ՆՈՅՆԱՁԵՒԱՊԷՍ, մ. Նոյնաբար, նոյնպէս:*
*ՆՈՅՆԱՆՄԱՆ, ՆՈՅՆԱՆՄԱՆԻ, ա. Համանման, նոյնպիսի, նոյնգունակ:*
*ՆՈՅՆԱՆՈՒՆ, ա. Համանուն, անուանակից:*
*ՆՈՅՆԱՊԷՍ, մ. Նոյնաբար, նոյնպէս, նոյնակի:*
*ՆՈՅՆԱՍԵՐՄՆ, ա. Ազգական, ազգակից:*
*ՆՈՅՆԱՏԻՊ, ա. մ. Նոյնակերպ, նոյնաձև, նոյնգունակ:*
*ՆՈՅՆԳՈՒՆԱԿ, ա. 1. Նոյնպիսի, համանման, հաւասար: 2. մ. Նոյնպէս, հաւասարապէս, նմանապէս:*
*ՆՈՅՆ ԸՆԴ ՆՈՅՆ, մ. Համանգամայն, միանգամայն, նոյն հետայն:*
*ՆՈՅՆԺԱՄԱՅՆ, Ի ՆՈՅՆ ԺԱՄԱՅՆ, մ. Անդէն և անդ, նոյնհետայն, իսկոյն, վաղվաղակի, փութապէս:*
*ՆՈՅՆ ՀԵՏԱՅՆ, ՆՈՅՆՀԵՏԱՅՆ, մ. Անդէն առ նմին, զոյգ ընդ, յետոյ, ապա:*
*-ԶՆՈՅՆ ՀԵՏԱՅՆ, մ. Անընդմիջաբար, հետևաբար:*
*ՆՈՅՆՈՒԹԻՒՆ, գ. Անզանազանութիւն, անփոփոխութիւն:*
*ՆՈՅՆՊԷՍ, ՆՈՅՆՊԻՍԱԲԱՐ, մ. Նոյնապէս, նոյնաբար, նոյնօրէն, նոյնօրինակ, նմանապէս:*
*ՆՈՅՆՊԻՍԻ, ա. Համանման, նոյնօրինակ:*
*ՆՈՅՆՔԱՆԻ, ա. Համաչափ:*
*ՆՈՅՆՕՐԷՆ, տե՛ս ՆՈՅՆՊԷՍ:*
*ՆՈՅՆՕՐԻՆԱԿ, ա. 1. Նոյնպիսի: 2. մ. տե՛ս ՆՈՅՆՊԷՍ:*
*ՆՈՏԱՐ, տե՛ս ՆՕՏԱՐ:*
*ՆՈՏԱՐԱՑԻ, ա. գ. Նօտար, նշանագիր:*
*ՆՈՐ, ա. 1. Արդի, մատաղ, դեռաբոյս, դեռածին, ներկայ: 2. մ. Այն ինչ, ի նորոյ, դեռ, դեռադեռ:*
*- Ի ՆՈՐՈՅ, տե՛ս ՆՈՐ (2):*

- ՆՈՐ ՆՈՐ, տե՛ս ՆՈՐԱՆՈՐ:
ՆՈՐԱԲԱՐԲԱՌ, ա. Դեռախոս:
ՆՈՐԱԲՈՂԲՈՋ, ա. Դեռաբողբոջ, մատաղ:
ՆՈՐԱԲՈՅՍ, ա. Դեռաբույս, նորաբողբոջ:
ՆՈՐԱԳԻՒՏ, ա. Նորաստեղծ, նորագոյն:
ՆՈՐԱԳՈՅՆ, ա. Նորագիւտ, նորօգագոյն:
ՆՈՐԱԳՈՐԾ, ա. 1. Նորաստեղծ: 2. Անլուր, զարմանալի, հրաշափառ:
ՆՈՐԱԳՈՐԾԵԼ, նբ. Նորակերտել, նորոգել:
ՆՈՐԱԴԻՏԱԿ, տե՛ս ՆՈՐԱՏԵՍԻԼ:
ՆՈՐԱԶՈՒԱՐՃ, ա. Նորափթիթ, առոյգ, զուարթ:
ՆՈՐԱԹԵՔ, ա. 1. Նորաստեղծ, նորակերտ: 2. Նորահաւատ: 3. Նորատիք:
ՆՈՐԱԾԻՆ, ա. 1. Երիկածին, այժմածին, նորածնեալ: 2. Նորաբոյս, նորատունկ, մատաղ:
ՆՈՐԱԾՆԱՆԵԼ (իմ), ՆՈՐԱԾՆԵԼ (իմ), չբ. (եկեղց.) Վերածնել:
ՆՈՐԱԿԵՐՊ, ա. Նորատեսիլ, այլանդակ, այլատարազ:
ՆՈՐԱԿԵՐՏ, ա. 1. Նորաշէն, նորագործ, նորաստեղծ, նոր, նորահրաշ, հրաշափառ: 2. (եկեղց.) Նորընծայ:
ՆՈՐԱԿԵՐՏԵԼ, նբ. Նորագործել, նորաստեղծել, նորոգել:
ՆՈՐԱԿՆԻՔ, ա. (եկեղց.) Նորակնուք, նորընծայ:
ՆՈՐԱԿՆՈՒՔ, տե՛ս ՆՈՐԱԿՆԻՔ:
ՆՈՐԱԿՈՉ, ա. (եկեղց.) Նորահաւատ:
ՆՈՐԱՀԱՍ, ա. 1. Նորեկ: 2. Կանխահաս, նորատունկ: 3. Վաղահաս, յանկարծահաս: 4. Նորահասակ:
ՆՈՐԱՀԱՍԱԿ, ա. Մանկահասակ, առոյգ, երիտասարդ, տղայ:
ՆՈՐԱՀԱՐՍՆ, գ. Յաւանակ:
ՆՈՐԱՀԱՒԱՏ, ա. Դեռահաւատ, նորաթեք, նորակոչ, նորատունկ, մատաղատունկ:
ՆՈՐԱՀՐԱՇ, ա. Նորանշան, նորասքանչ, անակնունելի, հիանալի, հրաշափառ:
ՆՈՐԱՁԱՅՆ, ա. Անլուր, անսովոր, օտարոտի:
ՆՈՐԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ՈՒՆԱՅՆԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ (2):
ՆՈՐԱՁԵՒ, ա. Անսովոր, անկարգ, նորոգաձև, նորակերպ, նորագիւտ:
- ՆՈՐԱՁԵՒՍ ԱՌՆԵԼ՝ ՁԵՒԵԼ՝ ՆՈՐՈԳԵԼ, տե՛ս ՆՈՐԱՁԵՒԵԼ:
ՆՈՐԱՁԵՒԵԼ, նբ. Նորաձևս առնել, նորակերտել, այլափոխել:
ՆՈՐԱՁԵՒՈՒԹԻՒՆ, գ. Այլափոխութիւն, նորութիւն:
ՆՈՐԱՄՈՒՏ, ա. 1. Նորընծայ: 2. գ. Նորաձևութիւն:
ՆՈՐԱՄՍՈՒԹԻՒՆ, գ. Ամսագլուխ, կաղանդ:
ՆՈՐԱՆԱԼ, չբ. Նորոգել:
ՆՈՐԱՆՇԱՆ, տե՛ս ՆՈՐԱՀՐԱՇ:
ՆՈՐԱՆՈՐ, ա. Նոր նոր, նորակերպ, օտար, անսովոր:
ՆՈՐԱՇԷՆ, ա. Նորակերտ, նորոգաշէն:
ՆՈՐԱՊԱՐԳԵՒ, ա. Նորատուր, նորոգատուր:
ՆՈՐԱՊԷՍ, մ. Նոր, նորոգ:
ՆՈՐԱՍՆՈՒՆԴ, ա. Մատաղ:
ՆՈՐԱՍՏԵՂԾ, ա. Նորակերտ, նորագործ:
ՆՈՐԱՍՏԵՂԾԵԼ, նբ. Նորակերտել:
ՆՈՐԱՍՔԱՆՉ, ա. Նորահրաշ, հրաշափառ, նորանշան, նորակերտ:
ՆՈՐԱՎԱՐԺ, ա. Դեռակիրթ:
ՆՈՐԱՏԵՍԻԼ, ա. Նորադիտակ, նորակերպ:
ՆՈՐԱՏԻՔ, ա. Նորահասակ, նորաթեք:
ՆՈՐԱՏՈՒՆԿ, ա. 1. Նորաբոյս, մատաղատունկ: 2. Նորահաւատ:
ՆՈՐԱՏՈՒՐ, տե՛ս ՆՈՐԱՊԱՐԳԵՒ:
ՆՈՐԱՐԱՐ, ա. Նորաստեղծ:
ՆՈՐԱՑՈՅՑ, ա. Նորատեսիլ, նորանշան, անլուր:
ՆՈՐԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Նորագործել, նո-

րակերտել, նորոգել:
ՆՈՐԱՓԱՅԼԱԿ, ա. Հրաշափայլ:
ՆՈՐԱՓԱՌ, ա. Նորափառախնդիր, սնափառ, զրափառ:
ՆՈՐԱՓԱՌԱԽՆԴԻՐ, տե՛ս ՆՈՐԱՓԱՌ:
ՆՈՐԱՓԱՌՈՒԹԻՒՆ, գ. Սնափառութիւն:
ՆՈՐԵԿ, ա. Նորահաս, նորընծայ, նոր:
ՆՈՐԸՆԾԱՅ, ա. Նորահաւատ, նորեկ, նորատուր:
ՆՈՐԸՆԾԱՅԵԱԼ, տե՛ս ՆՈՐԸՆԾԱՅ:
ՆՈՐԻ, գ. Երախայրիք:
ՆՈՐԻՄԱՑ, ա. Նորագիւտ, նորաձև:
ՆՈՐՀԱՒԱՏ, տե՛ս ՆՈՐԱՀԱՒԱՏ:
ՆՈՐՈԳ, ա. 1. Նոր, նորագոյն: 2. Ստոյգ, անվրէպ, ճիշդ, քաջայայտ: 3. մ. Արդ ևս, այն ինչ, նորապէս:
ՆՈՐՈԳԱԳՈՅՆ, տե՛ս ՆՈՐԱԳՈՅՆ:
ՆՈՐՈԳԱԳՈՐԾ, ա. Նորագործ, նորանշան, նորաձև:
ՆՈՐՈԳԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ, գ. Նորութիւն:
ՆՈՐՈԳԱՁԵՒ, տե՛ս ՆՈՐԱՁԵՒ:
ՆՈՐՈԳԱՇԷՆ, տե՛ս ՆՈՐԱՇԷՆ:
ՆՈՐՈԳԱՊԷՍ, մ. 1. Նորոգ, այն ինչ, նոր, նորապէս: 2. Ստուգապէս, հաւաստեաւ, անվրէպ:
ՆՈՐՈԳԱՏՈՒՐ, տե՛ս ՆՈՐԱՊԱՐԳԵՒ:
ՆՈՐՈԳԵԼ, նբ. Նորացուցանել, վերանորոգել, այլափոխել, խրակարկատ առնել:
ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆ, գ. Նորոգումն:
ՆՈՐՈԳՈՒՄՆ, տե՛ս ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆ:
ՆՈՐՈՒԹԻՒՆ, ՆՈՐՈՒՄՆ, գ. Նորոգութիւն, նորաձևութիւն:
ՆՈՐՈՒՍ, ՆՈՐՈՒՍՈՒՄՆ, գ. Նորավարժ, դեռակիրթ, համբակ:
ՆՈՐՕՐԻՆԱԿ, ա. մ. Նորակերպ, նորանշան, նորապէս:
ՆՈՒ, գ. Հարսն:
ՆՈՒԱԳ[1], գ. Եղանակ, գեղգեղ, գեղգեղանք, դայլայլիկք, երգ:
ՆՈՒԱԳ[2], գ. Գաւաթ, բաժակ, տաշտ:
ՆՈՒԱԳ[3], գ. Ժամ, պահ, գամ, անգամ:
ՆՈՒԱԳԱԿԻՑ, ա. Երգակից:
ՆՈՒԱԳԱՅԱՐԴԱՐ, ա. Երգայարդար, երգահան:
ՆՈՒԱԳԱՐԱՆ, տե՛ս ԳՈՒՍԱՆ (2):
ՆՈՒԱԳԱՐԱՆԱԿԱՆ, ա. Երաժշտական:
ՆՈՒԱԳԱՒՈՐ, ա. 1. Բարեյարմար, երաժշտական: 2. Բարեկարգ:
ՆՈՒԱԳԱՒՈՐԱԳՈՅՆ, ա. Քաջայարմար, ճարտար:
ՆՈՒԱԳԵԼ, նբ. 1. Եղանակել: 2. Հարկանել, բախել: 3. Վերաձայնել: 4. Ցեղյեղել: 5. Սաղմոսել:
ՆՈՒԱԳԵՐԳԵԼ, նբ. Նուագել, եղանակել, երգաբանել, սաղմոսել:
ՆՈՒԱԳԵՐԳՈՒԹԻՒՆ, գ. Քաղցրաձայնութիւն, բարեձայնութիւն, երաժշտականութիւն, նուագութիւն, սաղմոսերգութիւն:
ՆՈՒԱԳՈՒԹԻՒՆ, տե՛ս ՆՈՒԱԳԵՐԳՈՒԹԻՒՆ:
ՆՈՒԱԶ, ա. 1. Նիազ, նուազուն, սակաւ, սակաւաւոր, սուղ, պակաս, թերի, փոքր, դոյզն, դուզնաքեայ: 2. Նուրբ, բարակ, թափանցանց:
– ՆՈՒԱԶ ԱՌՆԵԼ, տե՛ս ՆՈՒԱԶԵՑՈՒՑԱՆԵԼ:
ՆՈՒԱԶԱԲԱՆ, ա. Սակաւախօս:
ՆՈՒԱԶԱԲԱՐ, մ. Նուազապէս, պակասաբար:
ՆՈՒԱԶԱԳՈՅՆ, ա. մ. Սակաւագոյն, պակասագոյն, նուաստագոյն:
ՆՈՒԱԶԱԿԱՆ, ա. Նուազեալ, նուազ:
ՆՈՒԱԶԱՄԻՏ, ա. Տկարամիտ:
ՆՈՒԱԶԱՆԱԼ, չբ. Նուազել, պակասել, սակաւանալ, յետնել:
ՆՈՒԱԶԱՆՔ, գ. Նուազումն, կասումն, դադարումն:
ՆՈՒԱԶԱՊԷՍ, տե՛ս ՆՈՒԱԶԱԲԱՐ:
ՆՈՒԱԶԵԼ[1], տե՛ս ՆՈՒԱԶԵՑՈՒՑԱՆԵԼ:
ՆՈՒԱԶԵԼ[2] (իմ), տե՛ս ՆՈՒԱԶԱՆԱԼ:
ՆՈՒԱԶՈՒԹԻՒՆ, գ. 1. Պակասութիւն, թերութիւն, սակաւութիւն, յետնութիւն, նուաստութիւն: 2. Կարօտութիւն: 3.

*Խաւարումն (արեգակի): 4. Նրբութիւն, թափանցութիւն:*
*ՆՈՒԱԶՈՒՄՆ, գ. Նուազութիւն, յետնութիւն, պակասումն:*
*ՆՈՒԱԶՈՒՆ, տե՛ս ՆՈՒԱԶ:*
*ՆՈՒԱՂ, ա. 1. Աղօտ, մեղմ, թոյլ, նուազ: 2. Տկար, հիւծեալ, թալկացեալ:*
*ՆՈՒԱՂԱԳՈՅՆ, ա. մ. Տկարագոյն:*
*ՆՈՒԱՂԱՆԱԼ, ՆՈՒԱՂԵՆԱԼ, տե՛ս ՆՈՒԱՂԵԼ² (իմ):*
*ՆՈՒԱՂԵԼ¹, տե՛ս 1. ՆՈՒԱՂԵՑՈՒՑԱՆԵԼ: 2. ՆՈՒԱՂԵԼ² (իմ):*
*ՆՈՒԱՂԵԼ² (իմ), չբ. Նուաղանալ, նուազանալ, աղօտանալ, պակասել, խաւարել, տկարանալ, լուծանել, լքանել, հիւծել, թալկանալ, թառամել:*
*ՆՈՒԱՂԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Աղօտացուցանել, չլացուցանել, տկարացուցանել, նուազեցուցանել:*
*ՆՈՒԱՂՈՒԹԻՒՆ, գ. Նուազութիւն, պակասութիւն:*
*ՆՈՒԱՃԵԼ, նբ. 1. Ճնշել, ընկճել, զբրռամբ արկանել, տիրել, իշխել: 2. Հաճել:*
*ՆՈՒԱՃՈՒԹԻՒՆ, ՆՈՒԱՃՈՒՄՆ, գ. Հըպատակութիւն, հնազանդութիւն:*
*ՆՈՒԱՍՏ, ա. Խոնարհ, ցած, ցածուն, չափաւոր, ստորին, յետին, տրուպ, չնչին:*
*ՆՈՒԱՍՏԱԲԱՐ, մ. Նուաստապէս, խոնարհաբար:*
*ՆՈՒԱՍՏԱԳՈՅՆ, ա. Խոնարհագոյն, ստորնագոյն, ստորին, յետին:*
*ՆՈՒԱՍՏԱԳՈՒՆՈՒԹԻՒՆ, գ. Նուաստութիւն, ցածութիւն, յետնութիւն, զիջումն, խոնարհութիւն:*
*ՆՈՒԱՍՏԱԽՈՒՄԲ, ա. Սակաւաթիւ:*
*ՆՈՒԱՍՏԱԿԱՆ, ա. Խոնարհական, յետին, ցածուն, ստորին, անարգ:*
*ՆՈՒԱՍՏԱՄՏՈՒԹԻՒՆ, գ. Խոնարհամտութիւն, ցածութիւն:*
*ՆՈՒԱՍՏԱՆԱԼ, չբ. Խոնարհել, հնազանդել, զիջանել, նուաճել, ճնշել, յետնել:*
*ՆՈՒԱՍՏԱՊԷՍ, տե՛ս ՆՈՒԱՍՏԱԲԱՐ:*
*ՆՈՒԱՍՏԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Խոնարհեցուցանել, ցածուցանել, ընդ վայր հարկանել, զլնկենուլ:*
*ՆՈՒԱՍՏՈՒԹԻՒՆ, գ. Զիջումն, խոնարհութիւն, ցածութիւն, յետնութիւն:*
*ՆՈՒԱՐՏԱՆ, գ. Ծածկոյթ, ծածկոց:*
*ՆՈՒԷՐ, գ. 1. (եկեղց., կրօն.) Երախայրիք: 2. Ընծայ, պատարագ, ձօնի: 3. Խորհրդակատարութիւն, կատարողութիւն, զոհ:*
*ՆՈՒԻՐԱԲԵՐ, ա. (եկեղց.) Նուիրատու:*
*ՆՈՒԻՐԱԳՈՐԾԵԼ, նբ. Ձեռնադրել, սըրբազանել:*
*ՆՈՒԻՐԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ, գ. Կատարողութիւն, սրբազնագործութիւն, քահանայագործութիւն:*
*ՆՈՒԻՐԱԿ, գ. 1. Հրամանակատար (զինուոր), սպասաւոր, արբանեակ (արքունի պաշտօնեայ), պատուիրակ: 2. Նուիրանոց, բաժակ:*
*ՆՈՒԻՐԱԿԱՆ, ա. 1. Սրբազան, սուրբ: 2. Ընծայական (նուիրելի): 3. Նուիրակատար:*
*ՆՈՒԻՐԱԿԱՊԵՏ, գ. Նուիրապետ (գլխաւոր նուիրակը):*
*ՆՈՒԻՐԱԿԱՏԱՐ, ա. գ. (եկեղց.) Սրբազնակատար, սրբազնագործ:*
*ՆՈՒԻՐԱՁԻՐ, ա. Շնորհաձիր:*
*ՆՈՒԻՐԱՄՍԱԿ, գ. Ամսագլուխ, նորամսութիւն:*
*ՆՈՒԻՐԱՆ, գ. (եկեղց.) Սրբարան, տաճար, եկեղեցի:*
*ՆՈՒԻՐԱՆՈՑ, գ. 1. Նուիրակ (զոհ մատուցելու ոսկէ կամ արծաթէ գաւաթ): 2. Նուիրան, եկեղեցի:*
*ՆՈՒԻՐԱՊԵՏ, տե՛ս ՆՈՒԻՐԱԿԱՊԵՏ:*
*ՆՈՒԻՐԱՊԵՏԱԿԱՆ, ա. (եկեղց.) Կատարողապետական, քահանայապետական, քահանայական, խորհրդական:*
*ՆՈՒԻՐԱՏՈՒ, տե՛ս ՆՈՒԻՐԱԲԵՐ:*
*ՆՈՒԻՐԱՒՈՐ, տե՛ս ՆՈՒԻՐԱԿԱՆ:*
*ՆՈՒԻՐԵԼ, նբ. (եկեղց., կրօն.) 1. Ձօնել, ընծայել, տալ: 2. Նուիրագործել, օրհնել,*

ձեռնադրել, մկրտել, դրոշմել:
ՆՈՒԻՐՈՂԱԿԱՆ, տե՛ս ՆՈՒԻՐԱԿԱՆ:
ՆՈՒԿԻ, ՆՈՒԿԻԷ, տե՛ս ՈՒՆԿԻ:
ՆՈՒՐԲ, ա. 1. Բարակ, անօսր, անգայտ, թեթև, մանր: 2. Սուղ, նեղ, անձուկ: 3. (քեր.) Լերկ (պարզ խուլ բաղաձայն): 4. մ. Նրբապէս:
ՆՊԱՍՏ, գ. 1. Օգնութիւն, ձեռնտուութիւն, օժանդակութիւն, գործակցութիւն, սատար: 2. Օգուտ, շահ: 3. Ջան, փոյթ, հայթայթանք: 4. Օգնական, ձեռնտու, գործակից:
- ՆՊԱՍՏ ԼԻՆԵԼ. Նպաստել, նպաստաւորել, նպաստաւոր լինել, սատարել, օգնել, օգտել, աջակցել:
ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ, ա. 1. Ձեռնտու, օգնական, նպաստատու, սատար, առիթ: 2. Պիտանի, օգտակար:
ՆՊԱՍՏԱՏՈՒ, տե՛ս ՆՊԱՍՏԱՄԱՏՈՅՑ:
ՆՊԱՍՏԱՒՈՐԵԼ (իմ), տե՛ս ՆՊԱՍՏ ԼԻՆԵԼ:
ՆՊԱՍՏԱՒՈՐ ԼԻՆԵԼ, տե՛ս ՆՊԱՍՏ ԼԻՆԵԼ:
ՆՊԱՍՏԱՒՈՐՈՒԹԻՒՆ, տե՛ս ՆՊԱՍՏ:
ՆՊԱՍՏԵԼ, տե՛ս ՆՊԱՍՏ ԼԻՆԵԼ:
ՆՊԱՍՏՈՒԹԻՒՆ, տե՛ս ՆՊԱՍՏ:
ՆՊԱՏԱԿ, գ. 1. Նշաւակ, թիւրախ, թիրախ: 2. Դիտաւորութիւն: 3. Նախագաղափար: 4. Բրաբիոն, մրցանակ, յաղթանակ:
ՆՊԱՐ, ՆՊԱՐԱԿ, գ. Պարէն, ուտեստ, պաշար, թոշակ:
ՆՊԱՐԱԿԵԼ, նբ. Թոշակել:
ՆՊԵՐՏ, ա. Հպարտ, ամբարհաւաճ:
ՆՍԵՀ, տե՛ս ՆՍԻՀ:
ՆՍԵՄ, ա. 1. Աղօտ, մթին, ստուերամած, աղջամղջին: 2. գ. Մութն, մթութիւն, խաւար:
ՆՍԵՄԱԿԱՆ, ՆՍԵՄԱՅԻՆ, ա. Նսեմ, մթին:
ՆՍԵՄԱՆԱԼ, չբ. Մթագնել, մթանալ, խաւարել, աղօտանալ, փխբ. կուրանալ:
ՆՍԵՄԱՍՏՈՒԵՐ, ա. Խաւարին, մթին:
ՆՍԵՄԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Խաւարեցուցանել, աղօտացուցանել:
ՆՍԻՀ, գ. 1. Բախտ, վիճակ: 2. Հմայութիւն (բախտի գուշակութիւն):
ՆՍՏԱԿԻՑ, ա. Բարձակից, աթոռակից:
ՆՍՏԱՐԱՆ, գ. Նստելի:
ՆՍՏԵԼ[1], նբ. Նստուցանել, ցածուցանել, ճնշել:
ՆՍՏԵԼ[2] (իմ), չբ. 1. Բազմել, հանգչել: 2. Հեծանել:
ՆՍՏԵԼԻ, տե՛ս ՆՍՏԱՐԱՆ:
ՆՍՏՈՅ ՏԵՂԻ, տե՛ս ԵՐԱՍՏԱՆՔ:
ՆՍՏՈՒԱԾ, տե՛ս ԿՂԿՂԱՆՔ:
ՆՍՏՈՒՑԱՆԵԼ, պբ. Բազմեցուցանել, հանգուցանել, զետեղել:
ՆՐԱՆ, գ. Սուսեր, սուր, թուր:
ՆՐԱՆԱԿՈՏՈՐ, ա. Սրակոտոր:
ՆՐԲԱԲԱՐ, մ. Նրբապէս, ճարտարաբար:
ՆՐԲԱԳՈՅՆ, ա. Անօսրագոյն, բարակ, մանր:
ՆՐԲԱԳՈՅՈՒԹԻՒՆ, գ. Նրբամասնութիւն:
ՆՐԲԱԼԵԶՈՒ, տե՛ս ՆՐԲԱՋԱՅՆ:
ՆՐԲԱԽՆԴԻՐ, տե՛ս ՆՐԲԱՀԱՅԵԱՑ:
ՆՐԲԱԿԱՆ, ա. Նուրբ, նեղ, անձուկ:
ՆՐԲԱՀԱՅԵԱՑ, ա. Նրբախնդիր:
ՆՐԲԱՋԱՅՆ, ա. Նրբալեզու:
ՆՐԲԱՄԱՍՆՈՒԹԻՒՆ, գ. Նրբագոյութիւն:
ՆՐԲԱՊԷՍ, մ. 1. Նուրբ, նրբաբար: 2. Ճշգիւ:
ՆՐԲԱՏԵՍԱԿ, ա. Բարակ, անօսր:
ՆՐԲԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Անօսրացուցանել, նրբել:
ՆՐԲԱՓՈՂՈՑ, գ. Նեղափողոց:
ՆՐԲԵԼ, տե՛ս ՆՐԲԱՑՈՒՑԱՆԵԼ:
ՆՐԲՈՒԹԻՒՆ, գ. 1. Անօսրութիւն, բարակութիւն: 2. Թաքնութիւն, գաղտնութիւն, խորութիւն:
ՆՔԹԵԼ, չբ. Նքողել, դորսովել, նուաղել, սովել, լուծանել:
ՆՔՈՂԵԼ (իմ), տե՛ս ՆՔԹԵԼ:

ՆՔՈՅՐ, տե՛ս ՄԱՂ (1):
ՆՈԹ, գ. Կարմրադեղ, բուռ:
ՆՈԹԻ, ա. Անսուաղ, անճաշակ, անհաց, նքթեալ, նքողեալ:
ՆՈԹՁԵԼ, նբ. 1. Աւետել, աւետաւորել, աւետաբանել: 2. Նիւթել, հիւսել, հայթայթել, առթել, հնարել, ճարտարել:
ՆՈԹՈՒԹԻՒՆ, գ. Անսուաղութիւն, ծոմապահք, պահացողութիւն, պահք:
ՆՕՍՐ, ա. Անօսր, անգայտ:
ՆՕՏԱՐ, գ. Նշանագիր, դպիր (արքունի կամ եկեղեցական):

## Շ

ՇԱԲԱԹ, գ. Եօթնեակ, եօթներորդ:
ՇԱԲԱԹԱԽՏԻՐ, տե՛ս ՇԱԲԱԹԱՊԱՀ:
ՇԱԲԱԹԱՆԱԼ, չբ. (եբրական ոճով) Հանգչել, դադարել, դատարկանալ:
ՇԱԲԱԹԱՊԱՀ, ա. գ. Շաբաթախտիր:
ՇԱԲԱԹԱՊԱՀՈՒԹԻՒՆ, գ. (եկեղց.) Սրբապահութիւն:
ՇԱԲԱԹԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Հանգուցանել, դադարեցուցանել:
ՇԱԲԱԹՈՒՄՆ, գ. Հանգիստ, դադարումն:
ՇԱԳԱՆԱԿ, գ. Մաշկամիրգ:
ՇԱԳՈՅՐ, գ. Պայուսակ, մախաղ:
ՇԱԼԱԿ, գ. 1. Պարկ: 2. Պատգարակ:
ՇԱԿԱՆՋԱՆԵԼ, ՇԱԿԱՆՋԵԼ, նբ. չբ. Ականջել:
ՇԱՀ, գ. 1. Օգուտ, արդիւնք, արգասիք, վաստակ: 2. Օգտակարութիւն, պիտանութիւն, շահաւէտութիւն:
- ՇԱՀ Է, մբ. Օգուտ է:
- Ի ՇԱՀ ԱԾԵԼ, Շահեցուցանել:
ՇԱՀՍ ԱՌՆԵԼ, Խաղալ, պարել:
ՇԱՀԱԲԵՐ, ա. Շահեկան, օգտակար:
ՇԱՀԱԶԱՒԱԿ, գ. Օգուտ, շահ:
ՇԱՀԱԺՈՂՈՎ, ա. Օգտածարաւ, զօշաքաղ, վաշխաժողով, վաշխառու:
ՇԱՀԱԿԱՆ, տե՛ս ՇԱՀԵԿԱՆ:
ՇԱՀԱԿԱՆԱՑՈՒ, տե՛ս ՇԱՀԵԿԱՆԱՑՈՒ:
ՇԱՀԱՆՇԱՀ, գ. Արքայից արքայ:
ՇԱՀԱՊ, գ. Տէր, իշխան, պետ, նախարար, նահապետ, ազգապետ, վերակացու, հազարապետ, ոստիկան:
ՇԱՀԱՊԵՏ, գ. 1. Շահապ: 2. Պահապան: 3. Ոգի, պարիկ:
ՇԱՀԱՍԷՐ, ա. Ագահ:
ՇԱՀԱՍԻՐԵԼ, չբ. Ագահել:
ՇԱՀԱՎԱՃԱՌ, գ. 1. Շահավաճառութիւն, վաճառաշահութիւն, տուրևառ: 2.Վաճառական, շահարար:
ՇԱՀԱՎԱՃԱՌՈՒԹԻՒՆ, տե՛ս ՇԱՀԱՎԱՃԱՌ (1):
ՇԱՀԱՏԱԿԵԼ (իմ), չբ. Յարձակել, գրոհել, սուրալ:
ՇԱՀԱՏԱԿԻՒՆ, ՇԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ, ՇԱՀԱՏԱԿՈՒՄՆ, գ. Արշաւանք, յարձակումն:
ՇԱՀԱՐԱՐ, տե՛ս ՇԱՀԱՎԱՃԱՌ (2):
ՇԱՀԱՒԵՏԱԳՈՅՆ, ա. Շահեկանագոյն, շահաւորագոյն, օգտակարագոյն:
ՇԱՀԱՒԵՏԱԿԱՆ, տե՛ս ՇԱՀԱՒԷՏ:
ՇԱՀԱՒԵՏԵԼ, չբ. Շահել, օգտել:
ՇԱՀԱՒԵՏՈՒԹԻՒՆ, գ. Օգտակարութիւն, շահեկանութիւն, օգուտ, շահ:
ՇԱՀԱՒԷՏ, ա. Շահաւոր, շահաբեր, շահեկան, մեծաշահ:
ՇԱՀԱՒՈՐ, տե՛ս ՇԱՀԱՒԷՏ:
ՇԱՀԱՒՈՐԱԲԱՐ, մ. Շահեկանաբար:
ՇԱՀԱՒՈՐԱԳՈՅՆ, տե՛ս ՇԱՀԱՒԵՏԱԳՈՅՆ:
ՇԱՀԱՒՈՐԵԼ, նբ չբ. Շահել, օգտել:
ՇԱՀԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Շահավաճառութիւն: 2. Շահաւետութիւն, օգտակարութիւն:
ՇԱՀԵԼ (իմ), հբ. Շահաւորել, օգտել, ստանալ, վաստակել:
- ՇԱՀԵԼ ԶԿԵԱՆՍ ԱՆՁԻՆ, Ապրեցուցանել:
ՇԱՀԵԿԱՆ, ա. 1. Շահաւոր, շահաւէտ,

օգտակար, պիտանի, արդիւնական, պտղաբեր: 2. Ձահւոր, դիպող:
ՇԱՀԵԿԱՆԱԲԱՐ, տե՛ս ՇԱՀԱԻՈՐԱԲԱՐ:
ՇԱՀԵԿԱՆԱԳՈՅՆ, տե՛ս ՇԱՀԱԻԵՏԱԳՈՅՆ:
ՇԱՀԵԿԱՆԱՑԵԱԼ, ա. Պիտանացոյն:
ՇԱՀԵԿԱՆԱՑՈԻ, ա. Շահեկան, պիտանացու, օգտակար:
ՇԱՀԵԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Օգտակարութիւն, պիտանութիւն: 2. Վայելչութիւն, վայելք, սփոփանք, զուարճութիւն: 3. Արգասաւորութիւն, պտղաբերութիւն:
ՇԱՀԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Ի շահ ածել, օգտեցուցանել, օգտել:
ՇԱՂ, տե՛ս ՑՕՂ:
ՇԱՂԱԽ, գ. 1. Ցիխ, ցեխ, տղախ: 2. Շաղախեալ, անմաքուր, պիղծ:
ՇԱՂԱԽԱՆԱԼ, չբ. Շաղախել, պղծել:
ՇԱՂԱԽԵԼ, նբ. Թաթաւել, թանալ, ներկանել, օծանել, աղտեղել, պղծել:
ՇԱՂԱԽՈՒՄՆ, գ. Թաթաւումն, պղծութիւն, աղտ:
ՇԱՂԱԿԱՊ, տե՛ս ՇԱՂԿԱՊ:
ՇԱՂԱԿՐԱՏ, ա. 1. Շատախօս, լեզուագար, շաղփաղփ, շաղաւաշուրթն, ունայնաբան, ընդունայնախորհ: 2. Շաղակրատութիւն:
ՇԱՂԱԿՐԱՏԵԼ, չբ. Շատախօս լինել, շաղփաղփել, բարբանջել, բանդագուշել:
ՇԱՂԱԿՐԱՏՈՒԹԻՒՆ, ՇԱՂԱԿՐԱՏՈՒՄՆ, գ. Շաղփաղփութիւն, բարբանջումն, բարբաջանք:
ՇԱՂԱՂԵԼ, նբ. Աղաւաղել, ծեքել, կակազել:
ՇԱՂԱՄԱԹ, գ. Թել, լար, առասան:
ՇԱՂԱՄԱՆՈՒԹԻՒՆ, գ. Շարամանութիւն, յարամանութիւն, յարակցութիւն:
ՇԱՂԱՇԱՐ, ա. 1. Յարակից: 2. (քեր.) Փաղառութիւն, վանկ, հեգ:
ՇԱՂԱՇԱՐԵԼ, նբ. 1. Շարակցել, յարակցել: 2. կ. չբ. Յարել, զուգել, կապակցել: 3. Զուգաւորել:
ՇԱՂԱՇԱՐՈՒԹԻՒՆ, ՇԱՂԱՇԱՐՈՒՄՆ, գ. Յարակցութիւն, միաւորութիւն, զուգաւորութիւն:
ՇԱՂԱՇՈՅՏ, ՇԱՂԱՇՈՒՏ, ա. Զածած, անարգ, ցոփ, խենէշ:
ՇԱՂԱՇՏՈՒԹԻՒՆ, գ. Խենէշութիւն, ցոփութիւն:
ՇԱՂԱՊԱՏ, ա. գ. 1. Մանուածոյ, ոլորեալ: 2. Մանուած, ոլորք, կնճիռն:
ՇԱՂԱՊԱՏԵԼ, նբ. Շարապատել, պատատել, փաթութել, ոլորել, բաղհիւսել:
ՇԱՂԱԻԱՇՈՒՐԹՆ, ա. 1. Շաղակրատ, շաղփաղփ, շատախօս: 2. Շողոմարար, քծնի:
ՇԱՂԵԼ, նբ. 1. Շաղապատել, պատատել, ոլորել, գալարել, կաշկանդել: 2. Շաղախել, թաթաւել:
ՇԱՂԻՂ, գ. 1. Միս: 2. Դիակն, գէշ, մեռելոտի:
ՇԱՂԿԱՊ, գ. 1. Զօդ, կապ, կապակցութիւն: 2. Աւարտ (խօսքի), եզրակացութիւն:
ՇԱՂԿԱՊԱԿՑԵԼ, նբ. Շաղկապել, կապակցել:
ՇԱՂԿԱՊԵԼ, նբ. 1. Կապակցել, կցել, զօդել, յարել, զուգել, միաւորել: 2. Կապել, կաշկանդել, պրկել, շաղել:
ՇԱՂԿԱՊՈՒԹԻՒՆ, ՇԱՂԿԱՊՈՒՄՆ, գ. Զօդումն, միաւորութիւն:
ՇԱՂՂԱԿԵՐ, ա. Հմակեր, գիշակեր, մսակեր:
ՇԱՂՂԱԿԵՐՈՒԹԻՒՆ, գ. Մսակերութիւն, հմակերութիւն:
ՇԱՂՂԱՅԵՂՑ, ա. Թանձրամարմին, մեծամարմին:
ՇԱՂՓԱԲԱՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ՇԱՂՓԱՂՓՈՒԹԻՒՆ:
ՇԱՂՓԱՂՓ, ա. 1. Շաղակրատ, ունայնախօս, շաղաշուրթն: 2. Անհիմն, այլանդակ, անհեթեթ:
ՇԱՂՓԱՂՓԱԲԱՆ, տե՛ս ՇԱՂՓԱՂՓՈՒՏ:

ՇԱՂՓԱՂՓԱԿԱՆ, տե՛ս ՇԱՂՓԱՂՓ:
ՇԱՂՓԱՂՓԱՆՔ, տե՛ս ՇԱՂՓԱՂՓՈՒԹԻՒՆ:
ՇԱՂՓԱՂՓԵԼ, չբ. նբ. Շաղակրատել, բարբաջել, բանդագուշել, բաջաղել, ցնորել:
ՇԱՂՓԱՂՓՈՒԹԻՒՆ, գ. 1. Շաղփաղփանք, շաղակրատանք, ունայնաբանութիւն: 2. Աղճատանք, ցնորք, զառանցանք, բանդագուշանք:
ՇԱՂՓԱՂՓՈՒՄՆ, գ. Շաղփաղփութիւն:
ՇԱՂՓԱՂՓՈՒՏ, ա. Շաղփաղփաբան, շաղակրատ:
ՇԱՄԱՆԴԱՂ, գ. Մէգ, մառախուղ, բալ:
ՇԱՄԱՆԴԱՂԱՁԵՒ, ՇԱՄԱՆԴԱՂԱՏԵՍԻԼ, ա. Բալաձև, բալատեսիլ:
ՇԱՄԱՆԴԱՂՈՒԹԻՒՆ, գ. Միգապատութիւն, մթագգածութիւն, մէգ:
ՇԱՄԲ, գ. Խարձ, շամբակ, եղեգնապուրակ, պրակ եղեգանց:
ՇԱՄԲԱԿ, տե՛ս ՇԱՄԲ:
ՇԱՄԲՇԱԲԱՆԵԼ, նբ. չբ. Շաղփաղփել, բաջաղել:
ՇԱՄԲՇԱԲԱՐ, մ. Յիմարաբար, մոլեգնաբար:
ՇԱՄԲՇԱԳՈՅՆ, ա. Անմիտ, անմտագոյն:
ՇԱՄԲՇԱՆՔ, տե՛ս ՇԱՄԲՇՈՒԹԻՒՆ:
ՇԱՄԲՇԵԼ (իմ) կամ ՇԱՄՇԵԼ (իմ), չբ. Ցնորել, յիմարել, անմտանալ, խելագարել, մոլեգնել, կատաղել, մոլել:
ՇԱՄԲՇՈՒԹԻՒՆ կամ ՇԱՄՇՈՒԹԻՒՆ, գ. 1. Շամբշանք, ցնորումն, խելագարութիւն, անմտութիւն, մոլեգնութիւն, մոլութիւն, աւիւն: 2. Պագշոտութիւն:
ՇԱՄԲՈՒՇ, ա. 1. Խելագար, խօլ, խօլական, անմիտ, յիմար, մոլի, մոլեգին, ցոփ: 2. Ցանկասէր:
ՇԱՄԲՈՒՏ, ա. Եղեգնուտ, խոտաւէտ:
ՇԱՄՇՏՈՒԹԻՒՆ, տե՛ս ՋՈՐՐՈՐԴՊԵՏՈՒԹԻՒՆ:
ՇԱՄՓՐԱԿ, գ. Պսակ, թագ:
ՇԱՆԱՁԳԵԱՑ, տե՛ս ՇՆԱԲԱՐՈՅ:
ՇԱՆԴ, տե՛ս ՇԱՆԹ:
ՇԱՆԹ, գ. Կայծակն, հրացան բարկութիւն:
ՇԱՆԹԱԿԱՆ, ա. Շանթային:
ՇԱՆԹԱՀԱՐ, ա. Երկնահար:
ՇԱՆԹԱՁԻԳ, ա. Շանթընկէց:
– ՇԱՆԹԱՁԻԳ ԲԱՐԿՈՒԹԻՒՆ, Կայծակն, շանթ:
ՇԱՆԹԱՅԻՆ, տե՛ս ՇԱՆԹԱԿԱՆ:
ՇԱՆԹԸՆԿԵՑ, տե՛ս ՇԱՆԹԱՁԻԳ:
ՇԱՋԵԼ, չբ. Շառաչել (կառքի), չչել (սողունների):
ՇԱՋԻՒՆ, ՇԱՋՈՒՄՆ, գ. 1. Շառաչիւն, շունչ: 2. Շչիւն, չչումն:
ՇԱՊԻԿ, գ. Բաղէն, լայնաբար՝ քոթանակ, պատմուճան:
ՇԱՌԱԳՈՅՆ, ա. 1. Կարմրագոյն, բոսորային, արիւնագոյն: 2. Շէկ, չիկակարմիր, հրաշէկ, խարտեաշ, դեղին:
ՇԱՌԱԳՈՒՆԱՆԱԼ, տե՛ս ՇԱՌԱԳՈՒՆԵԼ:
ՇԱՌԱԳՈՒՆԱՆՔ, տե՛ս ՇԱՌԱԳՈՒՆՈՒԹԻՒՆ:
ՇԱՌԱԳՈՒՆԵԼ, չբ. Շառագունանալ, կարմրանալ, շիկնել, պատկառել, զամօթի հարկանել:
ՇԱՌԱԳՈՒՆՈՒԹԻՒՆ, գ. Շառագունանք, պատկառանք, ամօթ:
ՇԱՌԱՅԼ, գ. Ճառագայթ, շող, նշոյլ:
ՇԱՌԱՇԻՂ, գ. Հատոր, հատուած, զանգուած:
ՇԱՌԱՉԵԼ, չբ. Շաչել, թնդել, ղօնչել, չկահել:
ՇԱՌԱՉԻՒՆ, գ. Շառաչուկ, շառաչումն:
ՇԱՌԱՉՈՒԿ, ՇԱՌԱՉՈՒՄՆ, տե՛ս ՇԱՌԱՉԻՒՆ:
ՇԱՌԱՒԻՂ կամ ՇԱՌԱՒԵՂ, գ. 1. Ստեղն, ուղէշ, բարունակ, ճիւղ, ընձիւղ, ջով, բողբոջ, ծիլ: 2. փխբ. Ծնունդ, սերունդ, զաւակ, յաջորդ: 3. Ճառագայթ, ճաճանչ, շող, ցոլք: 4. Շանթ:
ՇԱՌԱՒԻՂԱՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՇԱՌԱՒԻՂԵԼ:

ՇԱՌԱԻՂԵԼ, նբ. Շառաւիղացուցանել, բուսուցանել, ընձիւղել, արտադրել, ծնանել, սերել:
ՇԱՌԱԻՆ, տե՛ս ՈՒՂՏ:
ՇԱՏ, ա. 1. Բազում, յոլով, յոգն, առատ, բաւական, հերիք: 2. մ. Բազումս, կարի, ստէպ, յաճախ, յոյժ, յերկար:
- ՇԱՏ ԱՆԳԱՄ, տե՛ս ԲԱԶՈՒՄ ԱՆԳԱՄ:
- ՇԱՏ Է, մբ. Բաւական է:
ՇԱՏԱԲԱՆՈՒԹԻՒՆ, գ. Բազմաբանութիւն, երկայնաբանութիւն, շատախօսութիւն:
ՇԱՏԱԽՕՍ, ա. Շատխօս, երկայնաբան, շաղակրատ, լեզուանի:
- ՇԱՏԱԽՕՍ ԼԻՆԵԼ, Բազմաբանել, շաղակրատել:
ՇԱՏԱԽՕՍՈՒԹԻՒՆ, տե՛ս ՇԱՏԽՕՍՈՒԹԻՒՆ:
ՇԱՏԱԿԵԱՑ, տե՛ս ԵՐԿԱՅՆԱԿԵԱՑ:
ՇԱՏԱԿԵՐ, ա. Անյագ, որկորեայ, որկորամոլ:
ՇԱՏԱՀԱՆՃԱՐ, ա. Բազմահանճար, յոգնահանճար:
ՇԱՏԱՀՄՏՈՒԹԻՒՆ, գ. Բազմահմտութիւն:
ՇԱՏԱՄԱՐԴՈՒԹԻՒՆ, տե՛ս ԲԱԶՄԱՄԱՐԴՈՒԹԻՒՆ:
ՇԱՏԱՄԱՐՄԻՆ, ա. Մեծամարմին:
ՇԱՏԱՆԱԼ, չբ. 1. Շատել, բաւականանալ: 2. Բաւել, ձեռնհաս՝ կարող լինել: 3. Բազմանալ:
ՇԱՏԱՇՐՋՈՒԹԻՒՆ, գ. Բազմաշրջութիւն, թափառումն:
ՇԱՏԱՋՈՒՐ, ա. Ջրարբի, յորդաջուր:
ՇԱՏԱՍԵՐԵԼ, չբ. Բազմասերել (շատ սերունդ ունենալ):
ՇԱՏԱՏԵՍ, ա. Սրատես:
ՇԱՏԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Բազմացուցանել:
ՇԱՏԵԼ, տե՛ս ՇԱՏԱՆԱԼ (1):
ՇԱՏԻՄԱՑ, ա. Բազմիմաստ, բազմահմուտ:
ՇԱՏԽՕՍ, տե՛ս ՇԱՏԱԽՕՍ:
ՇԱՏԽՕՍԵԼ, հբ. Շատախօս լինել, բազմաբանել, երկայնաբանել:
ՇԱՏԽՕՍՈՒԹԻՒՆ, գ. Բազմաբանութիւն, շաղփաղփութիւն, շաղակրատութիւն, աղճատանք:
ՇԱՏԿԵՐՈՒԹԻՒՆ, գ. Որկրամոլութիւն, անյագութիւն:
ՇԱՏՈՒԹԻՒՆ, գ. Առատութիւն, յորդութիւն, յոլովութիւն, յաճախութիւն, բազմութիւն, հօծութիւն, բազմամարդութիւն:
ՇԱՏՈՒՍՈՒՄՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ԲԱԶՄՈՒՍՈՒՄՆՈՒԹԻՒՆ:
ՇԱՏՐՈՒԱՆ, գ. Վարագոյր, սրսկապան, կապերտ:
ՇԱՐ[1], գ. 1. Դաս, կարգ, տող, հիւսուած, յեռումն, շղթայ, գումարտակ: 2. Խումբ, բազմութիւն:
ՇԱՐ[2], գ. Շղարշատեռ, տեռ, քող:
ՇԱՐԱԲԱՆԵԼ, նբ. Տրամաբանել, հաւաքաբանել:
ՇԱՐԱԲԱՆՈՒԹԻՒՆ, գ. Հաւաքաբանութիւն:
ՇԱՐԱԲԱՌՆԱԼ, նբ. Ի բաց բառնալ, վերառել, կրել, ունել:
ՇԱՐԱԲԱՐ, մ. Շարունակաբար, յարակցաբար:
ՇԱՐԱԲՆԱԿՈՒԹԻՒՆ, գ. Կցորդութիւն:
ՇԱՐԱԳԻՐ, ա. գ. 1. Մատենագիր, վիպագիր: 2. Շարագրութիւն, շարադրութիւն, շարագրած: 3. Նշանագիրք:
ՇԱՐԱԳԾԵԼ, տե՛ս ՇԱՐԱԳՐԵԼ:
ՇԱՐԱԳՈՅԱՆԱԼ, չբ. Շարակայել:
ՇԱՐԱԳՈՒՆԱԿԵԼ (իմ), չբ. Որականալ, տրամակայել, զգածել, զգենուլ (զմարմին):
ՇԱՐԱԳՐԱԾ, գ. Շարագիր, շարագրութիւն, շարագրածութիւն, շարած, մատենագրութիւն, պատմագրութիւն, յիշատակարան:

ՇԱՐԱԳՐԱԾՈՒԹԻՒՆ, տե՛ս ՇԱՐԱԳՐԱԾ:
ՇԱՐԱԳՐԱԿԱՆ, ա. Գրաւոր, պատմագրական:
ՇԱՐԱԳՐԵԼ, նբ. Համագրել, մատենագրել, պատմագրել, արձանագրել:
ՇԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Համագրութիւն: 2. Շարագրած, շարագրումն, շարագրածութիւն, մատենագրութիւն, գրութիւն, ճառ:
ՇԱՐԱԳՐՈՒՄՆ, տե՛ս ՇԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ:
ՇԱՐԱԴԱՍԵԼ, նբ. Շարակարգել, կարգել, կարգաւորել, բաղդասել:
ՇԱՐԱԴԱՍՈՒԹԻՒՆ, գ. 1. Շարակարգութիւն, բաղդասութիւն, կապակցութիւն, բաղկացութիւն: 2. Շարադրութիւն, ճառ:
ՇԱՐԱԴՐԱԿԱՆ, ա. 1. Բաղադրական: 2. Շարադրեալ:
ՇԱՐԱԴՐԵԼ, նբ. 1. Յարադրել, յարել, բաղադրել, զօդել, կցել, միաւորել, խառնել, զանգանել, ձուլել, շաղկապել, կազմել, յօրինել: 2. Շարագրել:
ՇԱՐԱԴՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Բաղադրութիւն, բաղկացութիւն, շաղկապութիւն, հաւաքումն, միաւորութիւն: 2. Յարադրութիւն, յարմարութիւն: 3. Շարագրութիւն:
ՇԱՐԱԼԾԵԼ, նբ. Զուգել, զօդել, յօդել, լծակցել, լծորդել, կցել, յարել:
ՇԱՐԱԽԱՌՆԵԼ, նբ. Ջանգել, շաղել:
ՇԱՐԱԽԱՌՆՈՒԹԻՒՆ, ՇԱՐԱԽԱՌՆՈՒՄՆ, գ. Բաղադրութիւն, խառնուած:
ՇԱՐԱԾ, տե՛ս ՇԱՐԱԳՐԱԾ:
ՇԱՐԱԾԵԼ, նբ. Շարակարգել:
ՇԱՐԱԾՆԵԱԼ, ա. Համածին, ընդաբոյս:
ՇԱՐԱԿԱԼ, տե՛ս ՇԱՐԱԿԱՅԵԼ:
ՇԱՐԱԿԱԼԵԼ, նբ. Ըմբռնել, բովանդակել, շարունակել:
ՇԱՐԱԿԱԾԵԼ, նբ. Շարադասել, շարակարգել:
ՇԱՐԱԿԱՅԱՆԱԼ, ՇԱՐԱԿԱՅԵԼ, չբ. Բաղարկոցել, շարադրել, բաղկանալ:
ՇԱՐԱԿԱՅՈՒՄՆ, գ. Կապակցութիւն, բաղկացութիւն:
ՇԱՐԱԿԱՊԵԼ, նբ. Շաղկապել, յարել, զօդել:
ՇԱՐԱԿԱՐԳԵԼ, տե՛ս ՇԱՐԱԴԱՍԵԼ:
ՇԱՐԱԿԱՐԳՈՒԹԻՒՆ, տե՛ս ՇԱՐԱԴԱՍՈՒԹԻՒՆ:
ՇԱՐԱԿՑԵԼ, նբ. Շարալծել, յարակցել:
ՇԱՐԱՁԱՅՆ, տե՛ս ԲԱՂԱՁԱՅՆ:
ՇԱՐԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ՁԱՅՆԱԿՑՈՒԹԻՒՆ:
ՇԱՐԱՃԵՑԵԱԼ, ա. Սննդակից:
ՇԱՐԱՄԱՆԱԿԱՆ, ա. Յարամանական:
ՇԱՐԱՄԱՆԵԼ, նբ. Յարամանել, ընդելուզանել, յեռուլ, ներհիւսել, ոլորել, փաթութել, շաղապատել, զուգել, միաւորել, նիւթել:
ՇԱՐԱՄԱՆՈՒԹԻՒՆ, գ. Յարամանութիւն, հիւսուած, կապակցութիւն, բաղկացութիւն, միաւորութիւն, յօրինուած, շարագրութիւն:
ՇԱՐԱՄԵՐՁԵԼ[1], նբ. Մերձեցուցանել, շարամօտեցուցանել, յարել, զուգել, զօդել, շաղկապել:
ՇԱՐԱՄԵՐՁԵԼ[2] (իմ), չբ. Շարամօտել, հպել, յարել, միանալ, ընտանենալ:
ՇԱՐԱՄԵՐՁՈՒԹԻՒՆ, գ. Միաւորութիւն, հպումն, ընտանութիւն, զուգաւորութիւն:
ՇԱՐԱՄՕՏ, ա. Մօտաւոր, հպաւոր, կից:
ՇԱՐԱՄՕՏԵԼ (իմ), տե՛ս ՇԱՐԱՄԵՐՁԵԼ[2] (իմ):
ՇԱՐԱՄՕՏԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՇԱՐԱՄԵՐՁԵԼ[1]:
ՇԱՐԱՅԱՐԵԼ, նբ. Յարակցել, կցել, միաւորել:
ՇԱՐԱՅԱՐՄԱՐԵԼ, նբ. Զուգայարմարել:
ՇԱՐԱՅԱՐՄԱՐՈՂ, ա. գ. Որմաշէն:
ՇԱՐԱՅԱՐՈՒԹԻՒՆ, ՇԱՐԱՅԱՐՈՒՄՆ, գ. Յարակցութիւն, կապակցութիւն, միաւորութիւն:
ՇԱՐԱՆԻՒԹԵԼ, նբ. Յերիւրել, յօրինել:

ՇԱՐԱՊԱՏԵԼ, տե՛ս ՇԱՂԱՊԱՏԵԼ:
ՇԱՐԱՌԵԼ, նբ. Յարառնուլ, պարառել, բովանդակել:
ՇԱՐԱԽ, գ. 1. Թարախ, խղխայծ: 2. Ապականութիւն, նեխութիւն, ժահահոտութիւն:
ՇԱՐԱԽԱԼԻ, ՇԱՐԱԽԱԼԻՑ, ա. Թարախալից, շարաւոտեալ:
ՇԱՐԱԽԱՀՈՏ, ա. Զարահոտ, ժահահոտ:
ՇԱՐԱԽԱՀՈՏՈՒԹԻՒՆ, գ. Ժահահոտութիւն:
ՇԱՐԱԽԱՆԴՆ, գ. Կապ, չուան, պարանդ:
ՇԱՐԱԽՈՏԵԱԼ, տե՛ս ՇԱՐԱԽԱԼԻ:
ՇԱՐԱՓԱԿԵԼ, նբ. Պարփակել, շարակցել, ամփոփել:
ՇԱՐԵԼ, նբ. Տողել, շարադասել, շարակարգել, շարագրել, յարել, շարայարել:
ՇԱՐԺ, գ. 1. Շարժումն: 2. Գետնաշարժ, սասանութիւն:
ՇԱՐԺԱԿԱՆ, տե՛ս ՇԱՐԺՈՒՆ:
ՇԱՐԺԱՐԱՆ, գ. Շարժիչ:
ՇԱՐԺԵԼ, նբ. Շարժեցուցանել, տեղափոխել, դրդուել, խախտել, տատանել, փոփոխել:
ՇԱՐԺԵԼԱԿԱՆ, ա. Շարժողական, շարժիչ:
ՇԱՐԺԵԼՈՒԹԻՒՆ, տե՛ս ՇԱՐԺՈՒՄՆ:
ՇԱՐԺԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՇԱՐԺԵԼ:
ՇԱՐԺԻՉ, ա. Շարժողական:
ՇԱՐԺԻՒՆ, տե՛ս ՇԱՐԺՈՒՄՆ:
ՇԱՐԺԼԵԼ, նբ. 1. Շարժել, սասանել, տատանել, դղրդել: 2. Լլկել:
ՇԱՐԺՄԱԿՔ, տե՛ս ԺԱԺՄՈՒԿՔ:
ՇԱՐԺՆԱԳՈՅՆ, ա. Արագաշարժ:
ՇԱՐԺՈՂԱԿԱՆ, ա. 1. Շարժիչ: 2. Շարժուն:
ՇԱՐԺՈՂՈՒԹԻՒՆ, գ. Շարժութիւն, շարժումն:
ՇԱՐԺՈՒԹԻՒՆ, գ. Շարժումն, շարժողութիւն:
ՇԱՐԺՈՒՄՆ, գ. 1. Շարժ, շարժութիւն: 2. Գետնաշարժ, սասանութիւն:
ՇԱՐԺՈՒՆ, ա. 1. Շարժական: 2. Երերուն, փոփոխական, դիւրաշարժ, յողդողդ:
ՇԱՐԽԱՏ, տե՛ս ՎԱՇԽ:
ՇԱՐՈՒՄՆ, գ. Շար, հոյլք, ջոկ:
ՇԱՐՈՒՆԱԿ, ա. 1. Անընդհատ, շարունական: 2. Պարունական, բովանդակիչ:
ՇԱՐՈՒՆԱԿԱԲԱՐ, տե՛ս ՇԱՐՈՒՆԱԿԱՊԷՍ:
ՇԱՐՈՒՆԱԿԱԿԱՆ, ա. Պարունակական:
ՇԱՐՈՒՆԱԿԱՆ, տե՛ս ՇԱՐՈՒՆԱԿ:
ՇԱՐՈՒՆԱԿԱՊԷՍ, մ. 1. Շարունակաբար, անդադար: 2. Բովանդակապէս:
ՇԱՐՈՒՆԱԿԵԼ, նբ. Պարունակել, պարագրել, բովանդակել, ամփոփել, պատել, շարակալել:
ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹԻՒՆ, գ. 1. Պարունակութիւն, սերտութիւն: 2. Միայարութիւն, հանապազորդութիւն:
ՇԱԽԻՂ, գ. 1. Արահետ: 2. Հետք, ոտնատեղի:
ՇԱՓԻՂԱՅ, ՇԱՓԻՒՂԱՅ, գ. Յակինթ:
ՇԱՔԼԵԼ, չբ. Շառաւիղել, ընձիւղել, բողբոջել, փթթել:
ՇԵՂ, ա. գ. Խոտորնակ, զառ ի վայր, զառ ի թափ:
- ԱՌ Ի ՇԵՂ, ԱՌ ՇԵՂ, մ. ա. 1. Շեղապէս: 2. Ծուռ, թիւր:
ՇԵՂԱՊԷՍ, մ. Առ ի շեղ, առ շեղ, խոտորակի, խոտորնակի, կողմնակի:
ՇԵՂԵԼ (իմ), չբ. Խոտորել, հակամիտել, թեքել, ծռել:
ՇԵՂՈՒԹԻՒՆ, գ. Խոտորումն, թիւրութիւն, ծռութիւն, հակամիտութիւն:
ՇԵՂՋ, գ. Դէզ, կոյտ, կուտակ, կուտոց, կարկառ, շեղջակոյտ:
ՇԵՂՋԱԿՈՅՏ, տե՛ս ՇԵՂՋ:
ՇԵՂՋԱԿՈՒՏԵԼ, նբ. Շեղջել, կուտել, դիզել, բարդել:
ՇԵՂՋԱՇԵՂՋ, ա. Բազմակոյտ:
ՇԵՂՋԵԼ, տե՛ս ՇԵՂՋԱԿՈՒՏԵԼ:
ՇԵՇՏ, մ. Շեշտակի:

ՇԵՇՏԱԿԻ, տե՛ս ՇԵՇՏ:
ՇԵՇՏԵԼ, նբ. ծեղքել:
ՇԵՊ, ա. գ. Զառ ի վայր, զառ ի թափ:
ՇԵՐ, տե՛ս Ստիւրակ:
ՇԵՐԱՍ կամ ՇԷՐԱՍ, գ. (կենդբ.) Հնդիկ որդն, բոմբիւլոս:
ՇԵՐՏ, գ. Կտոր, կտորակ (փայտի):
ՇԵՐՏԱԿՏՈՐ ԱՌՆԵԼ, Ջարդել, կտորել, պատառել:
ՇԵՐՏԱԽՈՐ, ա. գ. Բրաւոր:
ՇԵՓՈՐ, ՇԵՓՈՐԱՅ, ՇԻՓՈՐ, ՇԻՓՈՐԱՅ, գ. Փող, յոբելի:
ՇԷԿ, ա. Խարտեաշ, ծիրանեգոյն, Հրագոյն, բոցագոյն:
ՇԷՆ, ա. 1. Մարդաբնակ, բարեզարդ, բարեկարգ: 2. Արգաւանդ, բերրի: 3. գ. Աւան, գիւղ: 4. Շինուած, չինութիւն:
ՇԷՐ, գ. Երգ, տաղ, նուագ:
ՇԹՔԵԼ, տե՛ս ՇՔԹԵԼ[1] (2):
ՇԻԳՂ, գ. Ծարմանդ, օղամանեակ:
ՇԻԹ, գ. Կաթ, կաթիլ, կայլակ:
– ՇԻԹ Ի ԲԵՐԱՆՈՅ. Լործն:
ՇԻԹԵԼ, տե՛ս ԽԱՅԹԵԼ:
ՇԻԹՈՑ, տե՛ս ԽԱՅԹՈՑ:
ՇԻԼ, ա. Խեղ:
ՇԻԿԱԳՈՅՆ, ա. Շիկատեսակ, չիկորակ, դեղնագոյն:
ՇԻԿԱԹԱՆ, գ. Ոսպնաթան:
ՇԻԿԱԿԱՐՄԻՐ, ա. Կարմրագոյն:
ՇԻԿԱՏԵՍԱԿ, տե՛ս ՇԻԿԱԳՈՅՆ:
ՇԻԿՆԵԼ, չբ. 1. Կարմրանալ, Հրանալ: 2. Շառագունել, պատկառել, ամաչել:
ՇԻԿՈՐԱԿ, ա. Շիկագոյն:
ՇԻՂ, գ. Շիւղ, ծղօտ:
ՇԻՂՋ, տե՛ս ՇԵՂՋ:
ՇԻՆԱԾ, տե՛ս ՇԻՆՈՒԱԾ:
ՇԻՆԱԿԱՆ, գ. ա. 1. Շինակեաց, չինացի, գեղջուկ, ռամիկ: 2. Ռամկական:
ՇԻՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Գեղականութիւն: 2. Հաւաք. Շինականք:
ՇԻՆԱԿԵԱՑ, տե՛ս ՇԻՆԱԿԱՆ (1):
ՇԻՆԱՄԷՋ, գ. Հրապարակ, քաղաքամէջ:
ՇԻՆԱՑԻ, տե՛ս ՇԻՆԱԿԱՆ (1):
ՇԻՆԵԼ, նբ. Կառուցանել, Հիւսնել, կերտել, կազմել, Հաստել, ստեղծանել, յօրինել, յարդարել, յարմարել, բարեկարգել, բարեզարդել:
ՇԻՆՈՂՈՒԹԻՒՆ, գ. Ճարտարապետութիւն:
ՇԻՆՈՒԱԾ, գ. 1. Շինումն, չինութիւն, չէն, կազմութիւն, կառուցումն: 2. Կազմած, յօրինուած: 3. Բարեկարգութիւն:
ՇԻՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Շինած, չինուած, չինումն, կազմութիւն, յօրինումն: 2. Բարեկարգութիւն, բարեզարդութիւն: 3. Խաղաղութիւն, յաջողութիւն:
ՇԻՆՈՒՄՆ, տե՛ս ՇԻՆՈՒԹԻՒՆ:
ՇԻՇ, գ. Ապակի, սրուակ:
ՇԻՇՔ, գ. Ծոծրակ:
ՇԻՋԱԿԱՆ, ա. Շիջանուտ, դիւրանց, դիւրանցուկ, Հարեւանցի:
ՇԻՋԱՆԵԼ, չբ. 1. Նուազել: 2. փխբ. Մեռանել, դադարել, մեղմանալ, Հանդարտել, անցանել:
ՇԻՋԱՆՈՒՏ, ա. Շիջական, անցաւոր:
ՇԻՋՈՒԹԻՒՆ, տե՛ս ՇԻՋՈՒՄՆ:
ՇԻՋՈՒՄՆ, գ. Շիջութիւն (չիջանելը):
ՇԻՋՈՒՑԱՆԵԼ, պբ. Խափուցանել, անցուցանել, դադարեցուցանել, բառնալ, մեռուցանել:
ՇԻՏ, տե՛ս ՇԻԹ:
ՇԻՏԻՏԻ, ա. Կաղեսիմ, տապզէ (իգացող տղամարդ):
ՇԻՐԻՄ- գ. 1. Գերեզման, դամբարան, դամբան, տապան: 2. Կոթող, արձան:
ՇԻՐԻՄԱԿԻՑ, ա. Գերեզմանակից:
ՇԻՒՂ, տե՛ս ՇԻՂ:
ՇԻՓՈՐ, ՇԻՓՈՐԱՅ, տե՛ս ՇԵՓՈՐ:
ՇԼԱԳՈՅՆ, ա. Մթնագոյն, նսեմագոյն, աղօտ:
ՇԼԱՆ, տե՛ս ՄՈԽԻՐ:
ՇԼԱՆԱԼ, չբ. 1. Բլչակնել, բլչանալ, չլել, մթագնել, նսեմանալ, աղօտանալ, խաւարել, կուրանալ: 2. Բթել:

ՇԼԱՑՈՒԹԻՒՆ, ՇԼԱՑՈՒՄՆ, գ. Շլութիւն, բլշակնութիւն, կուրութիւն, անտեսութիւն:
ՇԼԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. 1. Մթացուցանել, խաւարեցուցանել, կուրացուցանել: 2. Բթել, բլշացուցանել, բթացուցանել:
ՇԼԵԼ (իմ), տե՛ս ՇԼԱՆԱԼ:
ՇԼՄՈՐԵԼ (իմ), չբ. Վարանել, շփոթել:
ՇԼՄՈՐԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Վարանեցուցանել, վարանել, շփոթել:
ՇԼՈՌՈՍ, ա. Կանաչորակ:
ՇԼՈՒԹԻՒՆ, տե՛ս ՇԼԱՑՈՒԹԻՒՆ:
ՇԿՕԹԱԿ ԱՌՆԵԼ. Տարագրել, արտասահմանել:
ՇՂԱՐՇԱՏԵՌ, գ. 1. տե՛ս ՇԱՐ²: 2. ա. Բեհեզեայ:
ՇՂԹԱՅ, գ. 1. Կապանք, ոտնակապ, ձեռակապ: 2. փխբ. Շար, կարգ, դասաւորութիւն:
ՇՂԹԱՅԱԳՈՐԾ, ա. Շղթայաձեւ, շղթայատող:
ՇՂԹԱՅԱՁԵՒ, ՇՂԹԱՅԱՏՈՂ, տե՛ս ՇԸՂԹԱՅԱԳՈՐԾ:
ՇՂՈՒԱԲԱՐՈՅ, ա. Շողոմարար, քծնի, շողոքորթ:
ՇՄԲՐՈՅ, գ. Պարկ, քուրձ, մախաղ:
ՇՆԱԲԱՐՈՅ, ա. Շանազգեաց, անառակ, անամօթ:
ՇՆԱԲԵՐԱՆ, ա. Զարախօս:
ՇՆԱԼ, չբ. Խառնակել:
- ՇՆԱՑԵԱԼ, ՇՆԱՑՈՂ, տե՛ս ՇՈՒՆ (2):
ՇՆԱՆՈՒՆ, ա. Վատանուն, չնաբարոյ, պիղծ:
ՇՆԻԿ, գ. Սկունդ:
ՇՆՈՐԴԻ, գ. Պոռնկորդի:
ՇՆՈՐՀ, գ. 1. Ձիր, պարգեւ, ողորմութիւն: 2. Վայելչութիւն: 3. Հաճութիւն: 4. Շնորհակալութիւն, գոհութիւն:
- ՇՆՈՐՀՍ ԱՌՆԵԼ ՈՒՄԵՔ. Շնորհել, ներել:
- ՇՆՈՐՀ ՈՒՆԵԼ (իմ). Շնորհակալ լինել, գոհանալ:
ՇՆՈՐՀԱԲԱՇԽ, ա. Շնորհաբաշխական, շնորհապարգեւ:
ՇՆՈՐՀԱԲԱՇԽԱԿԱՆ, տե՛ս ՇՆՈՐՀԱԲԱՇԽ:
ՇՆՈՐՀԱԳԻՐ, ա. Հոգելից, հոգեշահ:
ՇՆՈՐՀԱԴՐՈՒԱՏ, ա. Շնորհալի, գեղեցիկ:
ՇՆՈՐՀԱԶԱՐԴ, ա. Վայելչազարդ, բարեշուք, առաքինի:
ՇՆՈՐՀԱԶԱՐԴՈՒԹԻՒՆ, գ. Փառաւորութիւն, վայելչութիւն:
ՇՆՈՐՀԱԼԻ, տե՛ս ՇՆՈՐՀԱԼԻՑ:
ՇՆՈՐՀԱԼԻՑ, ա. 1. Շնորհալի, շնորհաւոր, շնորհազարդ, բարեշնորհ: 2. Գեղեցիկ, սիրուն, վայելուչ, չքնաղ: 3. Ուրախ, զուարթ:
ՇՆՈՐՀԱԼՈՅՍ, ա. Լուսափայլ:
ՇՆՈՐՀԱԿԱԼ, ա. Շնորհակալու, երախտաւոր, գոհ:
-ՇՆՈՐՀԱԿԱԼ ԼԻՆԵԼ. Գոհանալ, շնորհակալել:
ՇՆՈՐՀԱԿԱԼԵԼ (իմ), տե՛ս ՇՆՈՐՀԱԿԱԼ ԼԻՆԵԼ:
ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ, գ. 1. Շնորհակալութիւն: 2. Հաճութիւն:
ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒ, տե՛ս ՇՆՈՐՀԱԿԱԼ:
-ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒՔ, գ. յոգն. Շնորհակալիք, հաճութիւն:
ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ, գ. Գոհութիւն, գոհացողութիւն:
ՇՆՈՐՀԱԿԱՆ, ա. Պարգեւական, շնորհատուր:
ՇՆՈՐՀԱԿՈՐՈՅՍ, ա. Ապաշնորհ:
ՇՆՈՐՀԱՀԱՏՈՅՑ՝ ՇՆՈՐՀԱՀԱՏՈՒՑՈՒ ԼԻՆԵԼ. Շնորհակալ լինել, վարձատրել:
ՇՆՈՐՀԱՁԻՐ, ա. Պարգեւատու, նուիրաձիր:
ՇՆՈՐՀԱՆՈՐՈԳ, ա. Շնորհազարդ:
ՇՆՈՐՀԱՇԱՌԱՒԻՂ, ա. Գեղեցկաստեղն, գեղեցկուղէշ:
ՇՆՈՐՀԱՇԱՒԻՂ, ա. Ուղղընթաց:
ՇՆՈՐՀԱՇՈՒՔ, ա. Շնորհազարդ, վայելչապանծ:

ՇՆՈՐՀԱՊԱՏԱՐ, ա. Շնորհալից:
ՇՆՈՐՀԱՊԱՐԳԵՒ, ա. Շնորհաբաշխ:
ՇՆՈՐՀԱՏՈՒ, ՇՆՈՐՀԱՏՈՒՈՂ, ա. Պարգեւատու, շնորհաբաշխ:
ՇՆՈՐՀԱՏՈՒՈՒԹԻՒՆ, գ. Շնորհատրութիւն:
ՇՆՈՐՀԱՏՈՒՐ, ա. 1. Աստուածապարգեւ, երկնաձիր: 2. Շնորհական: 3. Շնորհատու:
ՇՆՈՐՀԱՏՐՈՒԹԻՒՆ, տե՛ս ՇՆՈՐՀԱՏՈՒՈՒԹԻՒՆ:
ՇՆՈՐՀԱՐԱՐ, ա. Բարերար, երախտաւոր:
ՇՆՈՐՀԱՒՈՐ, տե՛ս ՇՆՈՐՀԱԼԻՑ:
ՇՆՈՐՀԱՒՈՐԵԼ, նբ. Շնորհել, պարգեւել: – ՇՆՈՐՀԱՒՈՐԵԱԼ, ա. Շնորհազարդ, շնորհալից, շնորհաւոր:
ՇՆՈՐՀԵԼ, նբ. 1. Պարգեւել, առատաձեռնել, բաշխել: 2. Ներել, զիջանել: 3. Շնորհուկս առնել, մարդահաճել:
ՇՆՈՐՀԸՆԿԱԼ, ա. Պարգեւառու:
ՇՆՈՐՀՈՒԿՍ կամ ԱՌ ՇՆՈՐՀՈՒԿՍ ԱՌՆԵԼ՝ ԱՍԵԼ՝ ԽՕՍԵԼ. Շնորհել, շնորհս առնել, մարդահաճել:
ՇՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Խառնակութիւն: 2. Կռապաշտութիւն:
ՇՆՋԱԲԵՐ ԵՐԱԿՔ. (կզմխս.) Շնչերակք:
ՇՆՋԱԾՆՈՒԹԻՒՆ, գ. Ոգեծնութիւն:
ՇՆՋԱԿԱԼ ԱՆՕԹՔ, տե՛ս ԹՈՔ:
ՇՆՋԱԿԱՆ, ա. 1. Զգայական, կենդանական: 2. Շնչաւոր, կենդանի: 3. Բանական, հոգեկան, հոգեւոր:
ՇՆՋԱԿԱՊՈՒԹԻՒՆ, գ. Համաշնչութիւն:
ՇՆՋԱԿԵԱՑ, ա. Շնչական, շնչաւոր:
ՇՆՋԱԿԻՐ, ա. Շնչակեաց:
ՇՆՋԱԿԻՑ, ա. Համաշունչ, միաբան:
ՇՆՋԱԿՑՈՒԹԻՒՆ, գ. Համաշնչութիւն, շնչակապութիւն, միաբանութիւն:
ՇՆՋԱՀԵՂՁՈՅՑ, ա. Հոգեկորոյս, մահաւիթ:
ՇՆՋԱՆԱԼ, չբ. Շնչաւորել, շնչել, կենդանանալ:
ՇՆՋԱՍՊԱՌ, ա. Հեղձամղձուկ, ոգեսպառ:
ՇՆՋԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Շնչաւորել, կենսացուցանել, կենդանածնել:
ՇՆՋԱՒՈՐ, տե՛ս ՇՆՋԱԿԱՆ:
ՇՆՋԱՒՈՐԵԼ, տե՛ս ՇՆՋԱՑՈՒՑԱՆԵԼ:
ՇՆՋԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Կենդանութիւն: 2. փխբ. Մարմնասիրութիւն: 3. Անբանութիւն:
ՇՆՋԱՓՈՂ, գ. (կզմխս.) 1. Փող, փողակ (շնչառական): 2. Թոք:
ՇՆՋԵԼ, նբ. 1. Փչել: 2. չբ. Հնչել (քամի): 3. Շշնջել: 4. Արտաշնչել:
ՇՆՋԵՐԱԿՔ, գ. (կզմխս.) Խչրտականք, շնչաբեր, երակք:
ՇՆՋԻՒՆ, գ. Շշնջիւն:
ՇՆՋՈՒՄՆ, գ. 1. Փչումն: 2. Շնչիւն:
ՇՇՆՋԵԼ, չբ. նբ. Հծծել, քրթմնջել, տրտնջել, մրմնջել:
ՇՇՆՋԻՒՆ, ՇՇՆՋՈՒՄՆ, գ. Շշունջ, հըծծանք, մրմունջ:
ՇՇՈՒԿ, գ. Խառնակութիւն, շփոթ, յոյզ, աղմուկ:
ՇՇՈՒՆՋ, տե՛ս ՇՇՆՋԻՒՆ:
ՇՈԳԱՆԱԼ, չբ. Գոլորշանալ:
ՇՈԳԷՏԵՍԱԿ, ա. Գոլորշատեսակ:
ՇՈԳԻ, գ. 1. Գոլոշի, գոլորշի, շոգոլի: 2. Շունչ: 3. Ճառագայթ (արեգակի):
ՇՈԳԻԱՄԷԳ, ա. Միգապատ, աղջամղջին:
ՇՈԳՄՈԳ: ա. 1. Բանսարկու, քսու, փասքուս, քսմոս, բամբասասէր: 2. Բամբասական:
ՇՈԳՄՈԳԵԼ, չբ. Շաղակրատել, շողոքորթել, մարդահաճել:
ՇՈԳՄՈԳՈՒԹԻՒՆ, գ. Բանսարկութիւն, քսութիւն, չաղակրատութիւն:
ՇՈԳՈԼԻ, գ. 1. տե՛ս ՇՈԳԻ (1): 2. Յոգւոցհանութիւն, հեծութիւն:
ՇՈՂ, գ. 1. Նշող, նշոյլ, շառաւիղ, ճառագայթ: 2. ա. Լուսափայլ:
ՇՈՂԱԶԱՐԴ, տե՛ս ՆՇՈՒԼԱԶԱՐԴ:

ՇՈՂԱԼ, չբ. 1. Նշողել, շողշողել, փայլել, փայլատակել, ճաճանչել: 2. Լողալ, սլանալ, ճեմել: 3. Երևալ:
ՇՈՂԱՆԱԼ, չբ. Տապանալ:
ՇՈՂԱԻՈՐ, ա. Լուսանշոյլ:
ՇՈՂԵԼ (իմ), տե՛ս ՇՈՂԱԼ:
ՇՈՂԻՒՆ, գ. Շողումն, փայլիւն, փայլատակումն:
ՇՈՂՇՈՂԵԼ (իմ), չբ. Փայլակել, փայլատակել:
ՇՈՂՇՈՂԵՆԻ, ա. Փայլուն, փաղփուն:
ՇՈՂՈՄԱՐԱՐ, ա. Շողոքորթ, ողոքող, մարդահաճոյ, մարդելոյզ, քծնի:
ՇՈՂՈՄԵԼ, նբ. չբ. Շողոքորթել, քծնել, ողոքել:
ՇՈՂՈՄՈՒԹԻՒՆ, գ. Շողոքորթութիւն:
ՇՈՂՈՒՄՆ, գ. Շողիւն, փայլումն, ցոլացումն, ցոլումն:
ՇՈՂՈՔՈՐԹ, ա. Շողոմարար, փաղաքուշ, քծնի, սուտակասպաս:
ՇՈՂՈՔՈՐԹԱՆՔ, տե՛ս ՇՈՂՈՔՈՐԹՈՒԹԻՒՆ:
ՇՈՂՈՔՈՐԹԵԼ, տե՛ս ՇՈՂՈՄԵԼ:
ՇՈՂՈՔՈՐԹՈՒԹԻՒՆ, գ. Շողոմութիւն, քծնումն, սուտակասպասութիւն, պաշտօնուկք:
ՇՈՃ, ՇՈՃԻ, տե՛ս ՍՈՃԻ:
ՇՈՅՏ, ա. 1. Փոյթ, արագաշարժ, աջողակ, ժիր, ճարտար, կայտառ: 2. մ. Շուտով, փութով:
ՇՈՇԵԼ (իմ), տե՛ս ՇՕՇԵԼ (իմ):
ՇՈՇՈԿԱՆՍ ԱՌՆԵԼ, տե՛ս ՇՈՇՈԿԵԼ:
ՇՈՇՈԿԵԼ, չբ. Շոշոկանս առնել, նազել:
ՇՈՊԵԼ, նբ. 1. Շպշոպել, յափշտակել, կորզել, ձրձել, չորթել, կապտել: 2. Ծողոպրել, փրծուցանել:
ՇՈՊՇՈՊԵԼ, տե՛ս ՇՈՊԵԼ:
ՇՈՐԹԵԼ, տե՛ս ՇՈՊԵԼ (1):
ՇՈՐԻԿ, ա. Քսու:
ՇՈՒԱՅՏ, տե՛ս ՇՈՒԱՅՏՈՏ:
ՇՈՒԱՅՏԱԲԱՐՈՅ, ա. Ցոփ, գեղխ, խենէշ, անառակ:
ՇՈՒԱՅՏԱՆԱԼ, տե՛ս ՇՈՒԱՅՏԵԼ (իմ):
ՇՈՒԱՅՏԱՆՔ, տե՛ս ՇՈՒԱՅՏՈՒԹԻՒՆ:
ՇՈՒԱՅՏԱՍԷՐ, ա. Զեխասէր:
ՇՈՒԱՅՏԵԼ (իմ), չբ. Շուայտանալ, գեղխել, շռայլել, անառակել, խենեշանալ, յղփանալ, յօրանալ, փափկանալ:
ՇՈՒԱՅՏՈՏ, ա. Շուայտ, շուայտասէր, կամծոտ, պագշոտ:
ՇՈՒԱՅՏՈՒԹԻՒՆ, գ. Շուայտանք, գեղխութիւն, յղփութիւն, շռայլութիւն, անյագութիւն, ցոփութիւն, խենեշութիւն, հեշտասիրութիւն, անառակութիւն:
ՇՈՒԹԱՓ, ա. Վաղվաղկոտ:
ՇՈՒԹԱՓԵԼ, չբ. Շտապել, ճեպել, աճապարել, արագել, փութալ, վաղվաղել:
ՇՈՒԹԱՓՈՒԹԻՒՆ, գ. Արագաշարժութիւն, արագութիւն, վաղվաղումն:
ՇՈՒԿԱՏ, ա. Խաբեբայ:
ՇՈՒՄՐԱՅ, գ. (բսբ.) Սամիթ վայրենի:
ՇՈՒՆ, գ. 1. (կենդբ.) Բարակ: 2. փխբ. Շնացեալ, շնացող (կին կամ տղամարդ): 3. Շնիկ, սկունդ:
ՇՈՒՆՉ, գ. 1. Շոգի: 2. Տուրևառ շնչոյ: 3. Սիւք, սիք: 4. Շնչաւոր: 5. Հոգի, ոգի, անձն:
- ՇՈՒՆՉ ԿԼԱՆԵԼ. Ոգի առնուլ:
ՇՈՒՇԵԼ, չբ. Ծուլանալ, Թուլանալ:
ՇՈՒՏԱԲԱՆ, ա. Արագախօս:
ՇՈՒՏԱԳՈՅՆ, ա. Փութակամ, ուսումնասէր:
ՇՈՒՏԱԺԻՐ, ա. Արագ (շուտ և ժիր):
ՇՈՒՏԱԽՕՍ, ա. Արագախօս, յանդուգն:
ՇՈՒՏԱՆԱԼ, չբ. Փութալ, աճապարել:
ՇՈՒՏԱՍԱՂԱՊ, ա. Դիւրագայթ:
ՇՈՒՏԱՓՈՅԹ, ա. Վաղվաղկոտ, արագաշարժ:
ՇՈՒՏՈՎ, մ. Շոյտ, փութով:
ՇՈՒՏՈՒԹԻՒՆ, գ. Արագութիւն:
ՇՈՒՐԹՆ, գ. 1. Շրթունք: 2. լայնաբար Բերան, լեզու, բարբառ: 3. փխբ. Ափն, եզր:
ՇՈՒՐՋ, նխդ. մ. Շուրջանակի:

– ՇՈՒՐՋ ԱԾԵԼ. 1. Շրջեցուցանել: 2. Հոլովել, շրջել:
– ՇՈՒՐՋ ԳԱԼ, տե՛ս ՇՐՋԱԳԱՅԵԼ[2] (իմ):
ՇՈՒՐՋԱՆԱԿԱՒ, մ. Շրջանակաւ, շուրջանակի:
ՇՈՒՐՋԱՆԱԿԻ, մ. 1. Շուրջանակաւ: 2. նխդ. Շուրջ: 3. ա. Շրջակայ:
ՇՈՒՐՋԱՌ, տե՛ս ՆԱՓՈՐՏ:
ՇՈՒՐՋԲՆԱՅՈՒՑԱՆԵԼ, պբ. Բնացուցանել:
ՇՈՒՐՋԾԱՆԱՊԱՐՀ, գ. Շրջաբերութիւն, շրջան:
ՇՈՒՔ, գ. 1. Ստուեր, հովանի: 2. Քող: 3. փխբ. Հովանաւորութիւն: 4. Պատիւ, մեծարանք, փառք:
ՇՋԵԼ, չբ. Շաչել:
ՇՋԻՒՆ, ՇՋՈՒՄՆ, տե՛ս ՇԱՋԻՒՆ, ՇԱՋՈՒՄՆ:
ՇՊԱՐ, գ. Սնգոյր:
ՇՊԱՐԱՐ, գ. Ներկագործ:
ՇՊԱՐԵԼ (իմ), չբ. Սնգուրել:
ՇՊԵՏ, գ. Հովիւ:
ՇՌԱՅԼ, տե՛ս ՇՌԱՅԼՈՒԹԻՒՆ:
ՇՌԱՅԼԱԿԱՆ, ա. Շուայտ, գեղխ, ցոփ:
ՇՌԱՅԼԱՄԻՏ, ա. Շուայտոտ, ցանկասէր, հեշտասէր:
ՇՌԱՅԼԵԼ (իմ), չբ. Ձեղխել, անառակել, շուայտել:
ՇՌԱՅԼՈՒԹԻՒՆ, գ. Ձեղխութիւն, շուայտութիւն, անչափութիւն, անժուժութիւն, անառակութիւն, անխառնութիւն:
ՇՌԻՆԴ, գ. Ժխոր:
ՇՌԻՆՋ, գ. Շաչիւն, շչիւն:
ՇՌՆԻԾ, ՇՌՆԻՏ, գ. Կոնք, տաշտ, լական, լեկան:
ՇՌՆՋԱՆ, գ. Սունչանք:
ՇՏԱՊ, գ. 1. Խուճապ, ճեպումն, վաղվաղումն, փոյթ: 2. ա. Խուճապական: 3. մ. Ստիպաւ, ճեպով, տագնապաւ, արագ:
– ՇՏԱՊ ՏԱԳՆԱՊԻ. Վարանք, չփոթ, աղմուկ, վտանգ, տառապանք:
ՇՏԱՊԱՆԱԼ, տե՛ս ՇՏԱՊԵԼ[2] (իմ):
ՇՏԱՊԱՆԱԿԻ, մ. Շտապ, փութանակի:
ՇՏԱՊԵԼ[1], նբ. Ստիպել, փութացուցանել, հարկեցուցանել, նեղել, վտանգել:
ՇՏԱՊԵԼ[2] (իմ) չբ. Շտապանալ, խուճապել, փութալ:
ՇՏԵՄԱՐԱՆ, գ. Մառան, ամբար, ամբարանոց, մթերանոց:
ՇՏԵՄԱՐԱՆԱՊԱՀ, գ. Շտեմարանապետ, մատակարար:
ՇՏԵՄԱՐԱՆԱՊԵՏ, գ. 1. Շտեմարանապահ, մատակարար, տնտես, հազարապետ: 2. Տնօրէն:
ՇՏԵՄԱՐԱՆԵԼ, նբ. Ամբարել, մթերել, ժողովել, պահել, գանձել, թաքուցանել:
ՇՏՈԳԱՆԵԼ, նբ. Շփոթել, խառնել, խառնակել:
ՇՐՇԻՒՆ, գ. Խարշափ, խօշիւն, սօսափիւն:
ՇՐՇՆՋԵԼ, տե՛ս ՇՇՆՋԵԼ:
ՇՐՈՒՇԱԿ, գ. Ցուկակապ:
ՇՐՈՒՇԱՆԱԿՔ, տե՛ս ՇՐՕՇԱԿՔ:
ՇՐՋԱԲԵՐ, ա. Բոլորակ, բոլորշի:
ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ, ա. 1. Ընդհանրական: 2. Թափառական:
ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ՇՐՋԱԲԵՐՈՒԹԻՒՆ:
ՇՐՋԱԲԵՐԱՁԵՒ, ա. Բոլորաձեւ:
ՇՐՋԱԲԵՐԵԼ (իմ), չբ. Շրջանակել, շրջագայանալ, պարաբերել, պտուտել:
ՇՐՋԱԲԵՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Շրջաբերականութիւն, պարաբերութիւն, հոլովումն, պարբերութիւն, պարագայութիւն, շրջագարձ, շրջան: 2. (քեր.) Հոլով:
ՇՐՋԱԳԱՅ, ա. 1. Շրջաբերական, թափառական: 2. գ. Շրջանակ, շրջաբերութիւն, բոլորումն, շրջագարձ:
ՇՐՋԱԳԱՅԱՆԱԼ, տե՛ս ՇՐՋԱԳԱՅԵԼ[2] (իմ):
ՇՐՋԱԳԱՅԵԼ[1], նբ. Շրջապատել, պարփակել:
ՇՐՋԱԳԱՅԵԼ[2] (իմ), չբ. 1. Շուրջ գալ,

պարագայել, շրջայածել, հեռ գալ, շրջել, զգնալ: 2. Շրջաբերել:
ՇՐՋԱԳԱՅՈՒԹԻՒՆ, գ. 1. Շրջաբերութիւն, պարագայութիւն, ընթացք, շրջադարձ, շրջան: 2. Երթեւեկութիւն: 3. Վերադարձ:
ՇՐՋԱԳՆԱՅՈՒԹԻՒՆ, գ. Թափառումն, յածումն:
ՇՐՋԱԴԱՐՁ, գ. Շրջան:
ՇՐՋԱԴՐՈՒԹԻՒՆ, գ. Շրջափակութիւն, պահպանութիւն, պաշարումն:
ՇՐՋԱԽՈՅԶ ԱՌՆԵԼ. Խուզել, հետախուզել, հետազօտել:
ՇՐՋԱԾՈՒԹԻՒՆ, գ. Խնկարկութիւն:
ՇՐՋԱԾՑՈՒՑԻԿ, ա. Հանդիսական:
ՇՐՋԱԿԱՅ, ա. 1. Մօտակայ: 2. գ. Պարագայ, հանգամանք:
ՇՐՋԱՆ, գ. Շրջաբերութիւն, շրջադարձ, շրջանակ, պտոյտ:
- ՇՐՋԱՆ ԱՌՆՈՒԼ. Շրջաբերել, պտուտկել, պտուտել:
ՇՐՋԱՆԱԿ, գ. 1. Շրջան: 2. Պարունակ, գօտի, ծիր, բոլորակ: 3. Ծղխնի, 4. Ճեմելիք:
- ՇՐՋԱՆԱԿԱՒ, ՇՐՋԱՆԱԿԻՒ, մ. Շուրջանակի:
ՇՐՋԱՆԱԿԵԼ, նբ. Շրջել, հոլովել, բոլորել, շրջշրջել, յեղանակել:
ՇՐՋԱՆԱՊՏՈՅՏ, ա. Յորձանուտ:
ՇՐՋԱՆԿԵԱԼ, ա. Դիմադարձ:
ՇՐՋԱՁԱՓՈՒԹԻՒՆ, ՇՐՋԱՁԱՓՈՒՄՆ, տե՛ս ՊԱՐԱԳԻԾ:
ՇՐՋԱՊԱՀ, ա. Թիկնապահ:
ՇՐՋԱՊԱՏԵԼ, նբ. Պարփակել, պատ առնուլ, շրջափակել, պարունակել, պաշարել, պարսպել, ամրացուցանել:
ՇՐՋԱՊԱՏՈՒԹԻՒՆ, գ. Շրջաչափութիւն, պարագիծ:
ՇՐՋԱՊԱՐՈՒԹԻՒՆ, գ. Պարառութիւն, շրջափակութիւն:
ՇՐՋԱՍՏԵՂԾԵԼ, ՇՐՋԱՍՏԵՂԾՈՒԼ, նբ. Յարմարել, պատկանել:
ՇՐՋԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ, գ. Կազմութիւն, յօրինուած:
ՇՐՋԱՐԿՈՒԹԻՒՆ, գ. 1. Հովանաւորութիւն: 2. Բոլորակութիւն:
ՇՐՋԱՑԱՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Սրսկումն, լուացումն (ըստ մովսիսական օրէնքի): 2. Մշտիկ:
ՇՐՋԱՑԱՆՔ, տե՛ս ՇՐՋԱՑԱՆՈՒԹԻՒՆ:
ՇՐՋԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. Պարառութիւն:
ՇՐՋԱՓԱԿ, ա. Պարուրափակ:
- ՇՐՋԱՓԱԿ ՏԱԼ. Շրջափակել, շրջապատել:
ՇՐՋԱՓԱԿԵԼ, տե՛ս ՇՐՋԱՊԱՏԵԼ:
ՇՐՋԱՓԱԿՈՒԹԻՒՆ, ՇՐՋԱՓԱԿՈՒՄՆ, գ. Պարփակումն, շրջապատութիւն:
ՇՐՋԵԼ[1], նբ. 1. Դարձուցանել, փոխել, յեղաշրջել, յեղափոխել, այլայլել, շրջանակել, հոլովել:
ՇՐՋԵԼ[2] (իմ), չբ. Շուրջ գալ, շրջագայել, քայլել, գնալ, զգնալ, ճեմել, յածել, թափառել, պտուտել, դեգերել, զեռալ:
ՇՐՋԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. 1. Շրջել, դարձուցանել, յեղափոխել, յեղյեղել: 2. Շուրջ ածել, յածեցուցանել, ճեմեցուցանել:
ՇՐՋԿԷՆ, ա. Շրջշրջուն:
ՇՐՋՇՐՋԵԼ[1], նբ. 1. Փոփոխել: 2. Շրջեցուցանել, յածեցուցանել:
ՇՐՋՇՐՋԵԼ[2] (իմ), չբ. Խաղալ, դառնալ, դարձդարձել, յածել:
ՇՐՋՇՐՋԻՒՆ, ՇՐՋՇՐՋՈՒՄՆ, գ. Յեղյեղումն, փոփոխումն:
ՇՐՋՇՐՋՈՒՆ, տե՛ս ՇՐՋԿԷՆ:
ՇՐՋՈՒԱԾ, գ. Դարձուած, շրջադարձ, փոփոխութիւն:
ՇՐՋՈՒՄՆ, գ. 1. Յածումն, շրջագայութիւն, երթեւեկութիւն: 2. Շրջան, դարձ, շրջաբերութիւն, փոփոխութիւն, յեղյեղումն, յեղանակումն: 3. Եղանակ:
ՇՐՏՆՈՒԼ, չբ. 1. Խրտնուլ, խրտչել, սարտնուլ, պակնուլ: 2. Ապշել: 3. Շլանալ:
ՇՐՏՈՒՑԱՆԵԼ, պբ. Խրտուցանել, սարտուցանել, պակուցանել, շլացուցանել:

ՇՐՕՇԱԿՔ, գ. Շրուշանակք:
ՇՓԱՆԱԼ, չբ. Մեծամտել, գոռոզանալ, փքանալ, յոխորտալ, խրոխտալ:
ՇՓԱՅՈՒԹԻՒՆ, գ. Սիգութիւն, ամբարհաւաճութիւն, սնապարծութիւն, պարծանք, ճոխութիւն:
ՇՓԵԼ, նբ. 1. Ճմլել, լեսուլ, մանրել, մաշել, քերել: 2. Շաղել, շաղախել, մրել:
ՇՓՈԹ, գ. Շփոթումն, խառնակութիւն, խռովութիւն, աղմուկ, վրդով:
ՇՓՈԹԱԲԱՆՈՒԹԻՒՆ, գ. Խառն(ա)խօսութիւն:
ՇՓՈԹԱԲԱՐ, մ. Շփոթապէս, խառնիխուռն, անխտիր:
ՇՓՈԹԱԿԱՆ, ա. 1. Խառնակ: 2. Խուճապական:
ՇՓՈԹԱՆՔ, տե՛ս ՇՓՈԹՈՒՄՆ:
ՇՓՈԹԱՊԷՍ, տե՛ս ՇՓՈԹԱԲԱՐ:
ՇՓՈԹԵԼ, նբ. Խառնակել, յուզել, պղտորել, վրդովել:
ՇՓՈԹՈՒՄՆ, գ. Շփոթ, շփոթանք, խառնակութիւն, պղտորումն:
ՇՔԱԴԻՐ, ա. Պատուադիր:
ՇՔԱԼ, չբ. Պանծալ, շփանալ:
ՇՔԱԼԻՑ, ա. Մեծաշուք:
ՇՔԵՂ, ա. Մեծաշուք, փառաւոր, փառացի, հոյակապ, պատկառելի:
ՇՔԵՂԱԲԱՐ, մ. ա. Շքեղակերպ, փառացի:
ՇՔԵՂԱԳՈՅՆ, ա. մ. Մեծաշուք, պատկառելի:
ՇՔԵՂԱԳՈՐԾԵԼ, տե՛ս ՇՔԵՂԱԶԱՐԴԵԼ:
ՇՔԵՂԱԶԱՐԴ, ա. Պերճազարդ, շքեղաշուք:
ՇՔԵՂԱԶԱՐԴԱՓԱՅԼ, ա. Հոյակապ:
ՇՔԵՂԱԶԱՐԴԵԼ, նբ. Շքեղացուցանել, պճնազարդել, փառաւորել:
ՇՔԵՂԱԿԵՐՊ, ա. Գեղապանծ, վայելուչ, պատուական:
ՇՔԵՂԱՃՈԽ, ա. Մեծապանծ, փառացի:
ՇՔԵՂԱՆԱԼ, չբ. Պայծառանալ, պերճանալ, ճոխանալ:
ՇՔԵՂԱՇՈՒՔ, ա. Շքեղազարդ, մեծավայելուչ, մեծափառ, վայելչապանծ, գեղեցիկ, պայծառ, փառաւոր:
ՇՔԵՂԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Պատուասիրել, երևելի առնել, շքեղազարդել, փառաւորել:
ՇՔԵՂԱՒՈՐ, ա. Փառացի:
ՇՔԵՂՈՒԹԻՒՆ, գ. Շուք, փառաւորութիւն, մեծավայելչութիւն:
ՇՔԹԵԼ[1], նբ. 1. Շքթեցուցանել: 2. Շրթքել:
ՇՔԹԵԼ[2] (իմ), չբ. Անամօթել, լրբել:
ՇՔԹԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՇՔԹԵԼ[1] (1):
ՇՕԹ, գ. Նկան, նկանակ:
ՇՕՇԱՆՔ, գ. Շաղփաղփանք, բանդագուշանք:
ՇՕՇԱՓԵԼ, չբ. նբ. 1. Մատչել, հպել: 2. փխբ. Փորձել, զննել:
ՇՕՇԱՓԵԼԻՔ, գ. Հպելիք, հպելութիւն, շօշափութիւն:
ՇՕՇԱՓԻՒՆ, գ. Սօսափիւն, չչիւն:
ՇՕՇԱՓՈՒԹԻՒՆ, ՇՕՇԱՓՈՒՄՆ, գ. 1. Հպաւորութիւն: 2. Շօշափելիք:
ՇՕՇԵԼ (իմ), չբ. Քայքայել, նեխել:

# Ո

Ո[1], դ. Ով:
Ո[2], ձ. 1. Ո՛հ: 2. Բա՛բէ, աւա՛ղ:
– Ո՛Ո՛, ձ. Ո՛հ ո՛հ:
ՈԳԵԹԱՓ ԼԻՆԵԼ. Վհատել, նուաղել, անչքանալ:
ՈԳԵԼ, նբ. Ասել, արտասանել:
ՈԳԵԽԱՌՆԵԼ (իմ), չբ. Հոգեխառնել, վերախառնել:
ՈԳԵԾՆՈՒԹԻՒՆ, գ. Շնչածնութիւն:
ՈԳԵԿԱՆ, տե՛ս ՀՈԳԵԿԱՆ:
ՈԳԵԿԻՐ, տե՛ս ՀՈԳԵԿԻՐ:
ՈԳԵՂԱԲԱՐԲԱՌ, ա. Ուժգին (ձայնի մասին):
ՈԳԵՇԱՀ, տե՛ս ՀՈԳԵՇԱՀ:
ՈԳԵՇՈՒՆՉ, տե՛ս ՀՈԳԵՇՈՒՆՉ:

ՈԳԵՊԱՀ, գ. Պիհ, պարէն:
ՈԳԵՊԱՀԱՆՁ, ա. Մահառիթ:
ՈԳԵՍԷՐ, տե՛ս ՀՈԳԵՍԷՐ:
ՈԳԵՍՊԱՌ, ա. 1. Շնչասպառ: 2. Հոգեկորոյս:
ՈԳԵԽՈՐ, ա. 1. տե՛ս ՀՈԳԵԽՈՐ: 2. Ուժաւոր, հզօր:
ՈԳԵԽՈՐՈՒԹԻՒՆ, տե՛ս ՀՈԳԵԽՈՐՈՒԹԻՒՆ:
ՈԳԻ, գ. 1. Հոգի, շունչ: 2. Կեանք: 3. Անձն: 4. Հողմ:
- ՈԳԻ ԱՌՆՈՒԼ, Հոգի առնուլ, շունչ կլանել, հանգչել:
- ՅՈԳԻՈՅ ՀԱՆԵԼ կամ ԵԼԱՆԵԼ. Հեծել, հեծեծել, հառաչել:
- ՅՈԳԻՍ ԱՊԱՍՏԱՆ ԼԻՆԵԼ, տե՛ս ՀԱՏԿԼԵԼ (իմ):
- ՀԱՆԵԼ ՅՈԳԻՈՅՆ. Մեռանել:
- ՀԱՐԿԱՆԵԼ ԶՈՔ ՅՈԳԻ. Սպանանել:
ՈԳՈՐԵԼ (իմ), չբ. Խեթկել, բախել, մաքառել, կռուել, մրցել, մարտնչել, հակառակել:
ՈՁՈՐԱԾԵԾ ԱՌՆԵԼ, Ջաղկել, խոշտանգել:
ՈՁՈՒՄՆ, տե՛ս ԹԵՁԱՆ:
ՈԼՈՐ, գ. 1. Ոլորակ, ոլորումն, պրկումն, գելումն: 2. Պնդութիւն, սերտութիւն:
ՈԼՈՐԱԿ, տե՛ս ՈԼՈՐ:
ՈԼՈՐԵԼ, նբ. 1. Գալարել, փաթութել: 2. փխբ. Հիւսել, նիւթել (չարիք): 3. Փոյթ ընդ փոյթ շարժել:
ՈԼՈՐՈՒՄՆ, գ. 1. Ոլոր, ոլորակ, պրկումն, ուժգնութիւն: 2. Մանուած, հիւսուած: 3. Գլումն, գլորումն:
ՈԼՈՐՏԱՆԱԼ, չբ. Ամփոփել, պարագրել, բովանդակել, սահմանել, եզերանալ, պարուրել:
ՈԼՈՐՏԱՊԷՍ, մ. Շուրջանակաւ, պարագրապէս:
ՈԼՈՐՏՔ, գ. Պարունակ, շրջանակ:
ՈԼՈՔ, գ. (կցմխս.) Սրունք, կարթ:
ՈԽԱԼ, տե՛ս ՈԽԱՆԱԼ:
ՈԽԱԿԱԼ, ա. Ջարայուշ, ոխապահ, քինաւոր:
ՈԽԱԿԱԼԵԼ, չբ. Ոխանալ, քինալ:
ՈԽԱԿԱԼՈՒԹԻՒՆ, գ. Ոխք, ոխութիւն, քինապահութիւն:
ՈԽԱՆԱԼ, չբ. Ոխալ, ոխակալել, չարայուշ լինել, մախալ, խեռալ:
ՈԽԱՊԱՀ, տե՛ս ՈԽԱԿԱԼ:
ՈԽԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Գրգռել, զայրացուցանել:
ՈԽԵՐԻՄ, ՈԽԵՐԻՄԱՑ, ՈԽՈՐԻՄ, ա. 1. Թշնամի, հակառակորդ, ախոյեան, ոսոխ: 2. Յոխորտ, ժանտ:
ՈԽՈՐՏ, ա. Յոխորտ, յանդուգն:
ՈԽՈՒԹԻՒՆ, տե՛ս ՈԽԱԿԱԼՈՒԹԻՒՆ:
ՈԽՔ, գ. 1. Ոխակալութիւն, ոխութիւն, խէթ, քէն: 2. Թշնամանք, ատելութիւն:
Ո՜Հ, ձ. Աւա՜ղ, եղո՜ւկ, վա՜յ, վա՜հ, ո՜վ, ո՜:
ՈՂԲ, գ. Լալիւն, աշխար, կական, կոծ, ճիչ:
ՈՂԲԱԳԻՆ, տե՛ս ՈՂԲԱԼԻՑ:
ՈՂԲԱԼ, չբ. նբ. Աշխարել, կոծել, կականել, ճչել, սգալ, աւաղել, արտասուել:
ՈՂԲԱԼԻ, ա. Ողբերգագին:
ՈՂԲԱԼԻՑ, ա. Ցաւագին, վշտալից:
ՈՂԲԱԿԱՆ, ա. Լալական:
ՈՂԲԱԿԻՑ, ա. Արտասուակից, արտասուակցորդ, սգակից:
ՈՂԲԱԿՑԱԲԱՐ, մ. Ցաւակցաբար, կարեկցաբար:
ՈՂԲԱԿՑԵԼ, չբ. Ցաւակցել:
ՈՂԲԱՁԱՅՆ, ա. 1. Լալական: 2. գ. Ողբաձայնութիւն:
ՈՂԲԱՁԱՅՆԵԼ, նբ. Ողբերգել:
ՈՂԲԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ, գ. Ողբերգութիւն:
ՈՂԲԱՐԿ, ՈՂԲԱՐԿՈՒԹԻՒՆ, գ. Ողբ, ողբերգութիւն:
ՈՂԲԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Լացուցանել:
ՈՂԲԵՐԳԱԳԻՆ, ա. Ողբերգական, ողբալի:
ՈՂԲԵՐԳԱԿ, ա. 1. Նոխազերգու: 2. Լալական: 3. Ողբերգական, ողբերգային:
ՈՂԲԵՐԳԱԿԱՆ, ա. 1. Ողբալի, ողբերգագին: 2. Ողբերգակ, լալական: 3. մ. Ողբերէն:

ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ, գ. 1. Յիշատակագրութիւն, արձանագրութիւն: 2. Յիշատակ: 3. (յունական ոճով) Յիշատականոց, շիրիմ: 4. Յիշողութիւն:
ՅԻՇԱՏԱԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ, տե՛ս ՅԻՇԱՏԱԿ (1):
ՅԻՇԱՏԱԿԵԼ, նբ. Յիշել, յիշեցուցանել:
ՅԻՇԵԼ, նբ. Յուշ բերել, յուշ ածել, յիշատակել:
ՅԻՇԵԼԻՔ, տե՛ս ՅԻՇԱՏԱԿ (2):
ՅԻՇԵԼՈՒԹԻՒՆ, գ. Յիշումն, յիշատակ:
ՅԻՇԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Յուշ առնել, յուշ արկանել, ազդ առնել, զեկուցանել, զգուշացուցանել:
ՅԻՇԵՑՈՒՑԱՆՈՂ, տե՛ս ՅԻՇԵՑՈՒՑԻՉ:
ՅԻՇԵՑՈՒՑԻՉ, ա. Յիշեցուցանող, յուշարար, զգացուցիչ:
ՅԻՇՈՂԱԿԱՆՆ, ՅԻՇՈՂԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Յիշողութիւն:
ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆ, գ. Յիշելութիւն, յիշումն, յիշատակ:
- ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆ ԱՌՆԵԼ. Յիշեցուցանել:
- ՅԻՇՈՂՈՒԹԵԱՆ ՎԵՐԱԿԱՑՈՒ. Յիշատակագիր:
ՅԻՇՈՅ, գ. Հայհոյանք, հայհոյութիւն, պղծաբանութիւն, լուտանք, նախատինք:
ՅԻՇՈՅԱՏՈՒ, ա. Հայհոյիչ, պղծագործախօս:
ՅԻՇՈՒՄՆ, գ. Յիշելութիւն, յիշողութիւն, յիշատակ:
- ՅԻՇՈՒՄՆ ԱՌՆԵԼ. Յիշեցուցանել:
ՅԻՍՆԵՐԵԱԿ, տե՛ս ՅՈԲԵԼԵԱՆ:
ՅԻՐԱՒԻ, մ. Իրաւամբք, ստուգապէս, իրաւ, իրաւացի, արդարև, ի դէպ:
ՅԻՐԵԼ, ՅԻՐԵՑՈՒՑԱՆԵԼ, ՅԻՒՐԵԼ, նբ. պբ. 1. Յեռուլ: 2. Մխել: 3. Յարել: 4. Կարկառել, երկայնել:
ՅՂԱՆԱԼ, չբ. Յղենալ, սերմն առնուլ, սերմնառել, սաղմնանալ:
ՅՂԱՐԿԵԼ, նբ. Յուղարկել, յղել:
ՅՂԱՐԿՈՒՄՆ, տե՛ս ՅՈՒՂԱՐԿՈՒՄՆ:
ՅՂԱՑՈՒԹԻՒՆ, տե՛ս ՅՂՈՒԹԻՒՆ:
ՅՂԱՑՈՒՄՆ, տե՛ս ՅՂՈՒԹԻՒՆ:
ՅՂԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Սաղմնառել:
ՅՂԱՑՈՒՑԻՉ, ա. Սերմանարկու:
ՅՂԵԼ, նբ. Յղարկել, յուղարկել, առաքել:
ՅՂԵՆԱԼ, տե՛ս ՅՂԱՆԱԼ:
ՅՂԿԵԼ, նբ. Ողորկել, հարթել, կոկել, տաշել, քերել, յարդարել:
ՅՂՈՒԹԻՒՆ, գ. Յղացութիւն, յղացումն, սաղմնառութիւն, սերմնարկութիւն:
ՅՂՓԱՆԱԼ, չբ. Յղփիլ, լիանալ, առաւելուլ, մեծանալ, բարձրանալ, յօրանալ, յափրանալ:
ՅՂՓԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Լիացուցանել, ճոխացուցանել, պարարել:
ՅՂՓԻԼ, տե՛ս ՅՂՓԱՆԱԼ:
ՅՂՓՈՒԹԻՒՆ, գ. Լիութիւն, առատութիւն, զեղումն, զեղխութիւն, յագուրդ, պարպատումն, պարուրումն:
ՅՈ՞, ՅՈ՞Վ, դ. Ո՞ւր:
ՅՈԲԵԼԵԱՆ, գ. Յիսներեակ:
ՅՈԲԵԼԻ, տե՛ս ՇԵՓՈՐ:
ՅՈԲԵԼԻԿ, գ. Բուրգն, կոթող:
ՅՈԳՆ, Բազում, յոլով, շատ:
ՅՈԳՆԱԲԱՐ, ա. մ. Բազմապատիկ, բազմատեսակ, յոգնակի:
ՅՈԳՆԱԲԱՐԲԱՌ, ա. Բազմաձայն, մեծաձայն:
ՅՈԳՆԱԲԵՂՈՒՆ, ա. 1. Բազմաբեղուն, բերրի, յուռթի: 2. Բազմապատիկ, բազմատեսակ:
ՅՈԳՆԱԲԻԾ, ա. Բազմաբիծ, պիղծ:
ՅՈԳՆԱԲՈՒՆ, ա. 1. Բազմադիմի, ազգի ազգի: 2. Յոլովակի:
ՅՈԳՆԱԳԷՏ, տե՛ս ԲԱԶՄԱԳԷՏ:
ՅՈԳՆԱԳԼՈՒԽ, տե՛ս ԲԱԶՄԱԳԼՈՒԽ:
ՅՈԳՆԱԳՆԱԼԻ, ա. Բազմայեղանակ, բազմատեսակ:
ՅՈԳՆԱԳՈՅՆ, ա. Բազմագոյն, բազմապատիկ, բազում:
ՅՈԳՆԱԳՈՒՆԱԿ, ա. մ. Բազմադիմի, յոգնաբար:

ՅՈԳՆԱԶԱՆ, ա. Բազմազան, բազմադիմի, բազմապատիկ, զանազան, ազգի ազգի:
ՅՈԳՆԱԶԱՆԱԳՈՒՆԱԿ, ա. Յոգնազան, յոգնագունակ:
ՅՈԳՆԱԹԱԽԱՆՁ, տե՛ս ՅՈԳՆԱԹԱԽԻԾ:
ՅՈԳՆԱԹԱԽԻԾ, ա. Յոգնաթախանձ:
ՅՈԳՆԱԹԻԻ, տե՛ս ԲԱԶՄԱԹԻԻ:
ՅՈԳՆԱԺՈՂՈՎ, տե՛ս ԲԱԶՄԱԺՈՂՈՎ:
ՅՈԳՆԱԽՈՒՄԲ, տե՛ս ԲԱԶՄԱԽՈՒՄԲ:
ՅՈԳՆԱԽՈՒՌՆ, տե՛ս ԲԱԶՄԱԽՈՒՌՆ:
ՅՈԳՆԱԾԱՂԻԿ, տե՛ս ԲԱԶՄԱԾԱՂԻԿ:
ՅՈԳՆԱԿԱՆ, ա. 1. Բազմաթիւ, յոլով, բազում, բազմապատիկ: 2. Բազմաւոբական, յոգնակի:
ՅՈԳՆԱԿԻ, ա. 1. Յոգնական, բազմաթիւ, բազում, յոլով, շատ: 2. մ. Յոգնաբար:
ՅՈԳՆԱԿՈՐՈՎ, տե՛ս ՔԱԶԱԿՈՐՈՎ:
ՅՈԳՆԱՀԱՄԱՐ, ա. Բազմաթիւ:
ՅՈԳՆԱՀԱՆՃԱՐ, տե՛ս ԲԱԶՄԱՀԱՆՃԱՐ:
ՅՈԳՆԱՀԱՌԱՋ, տե՛ս ԲԱԶՄԱՀԱՌԱՋ:
ՅՈԳՆԱՀԱՒԱՔ, տե՛ս ԲԱԶՄԱՀԱՒԱՔ:
ՅՈԳՆԱՀԵՂ, ա. Բազմազեղ, յորդառատ:
ՅՈԳՆԱՀՈՅԼ, տե՛ս ԲԱԶՄԱՀՈՅԼ:
ՅՈԳՆԱՀՈՍԱՆ, ա. Յորդահոս, յորդառատ:
ՅՈԳՆԱՀՌՉԱԿ, ա. Բազմահռչակ, մեծահռչակ, մեծանուն:
ՅՈԳՆԱՀՌՉԱԿՈՒԹԻՒՆ, գ. Գերապանծութիւն, չքեղութիւն:
ՅՈԳՆԱՁԱՅՆ, ա. 1. տե՛ս ԲԱԶՄԱՁԱՅՆ (1): 2. գ. Մեծաձայնութիւն:
ՅՈԳՆԱՃԱՃԱՆՉ, ա. Բազմաճաճանչ, բազմափայլ:
ՅՈԳՆԱՄԱՆԱԿ, ՅՈԳՆԱՄԱՆԱԿԱԳՈՅՆ, ՅՈԳՆԱՄԱՆԱԿԵԱՆ, ա. 1. Բազմաժամանակեայ, տոկուն: 2. Վաղեմի:
ՅՈԳՆԱՄԱՍՆԵԱՅ, տե՛ս ԲԱԶՄԱՄԱՍՆԵԱՅ:
ՅՈԳՆԱՄԻՏ, տե՛ս ԲԱԶՄԻՄԱՍՏ:
ՅՈԳՆԱՅԱԾՈՒԿ, տե՛ս ԲԱԶՄԱՅԱԾԵԱՆ:
ՅՈԳՆԱՆՈՒՆ, տե՛ս ԲԱԶՄԱՆՈՒՆ և ԲԱԶՄԱՆՈՒՆՈՒԹԻՒՆ:
ՅՈԳՆԱՇԱՀ, ա. Մեծաշահ, բազմագին:
ՅՈԳՆԱՇՆՈՐՀ, տե՛ս ԲԱԶՄԱՇՆՈՐՀ:
ՅՈԳՆԱՋԵԱՅ, տե՛ս ԲԱԶՄԱՋԵԱՅ:
ՅՈԳՆԱՊԱՃՈՅՃ, տե՛ս ԲԱԶՄԱՊԱՃՈՅՃ:
ՅՈԳՆԱՊԱՆԾԱՅԵԱԼ, տե՛ս ԲԱԶՄԱՀՌՉԱԿ:
ՅՈԳՆԱՊԱՏ, ա. Բազմամանուած, շաղապատ:
ՅՈԳՆԱՊԱՏԻԿ, տե՛ս ԲԱԶՄԱՊԱՏԻԿ:
ՅՈԳՆԱՊԱՏԻՐ, տե՛ս ԲԱԶՄԱՊԱՏԻՐ:
ՅՈԳՆԱՊԱՏԻՒ, ա. Բազմապատիւ, մեծաշուք, մեծավայելուչ:
ՅՈԳՆԱՊԱՏԿԱԲԱՐ, տե՛ս ԲԱԶՄԱՊԱՏԿԱԲԱՐ:
ՅՈԳՆԱՊԱՐԳԵՒ, տե՛ս ԲԱԶՄԱՊԱՐԳԵՒ:
ՅՈԳՆԱՊԻՍԻ, տե՛ս ԲԱԶՄԱՊԻՍԻ:
ՅՈԳՆԱՊՏՈՒՂ, տե՛ս ԲԱԶՄԱՊՏՈՒՂ:
ՅՈԳՆԱՋԱՆ, տե՛ս ԲԱԶՄԱՋԱՆ:
ՅՈԳՆԱՍԱՂԱՐԹ, ա. Սաղարթազուարճ:
ՅՈԳՆԱՍԵՐԵԼ, տե՛ս ԲԱԶՄԱՍԵՐԵԼ:
ՅՈԳՆԱՍՏՈՒԱԾ, տե՛ս ԲԱԶՄԱՍՏՈՒԱԾ:
ՅՈԳՆԱՍՏՈՒԱԾՈՒԹԻՒՆ, տե՛ս ԲԱԶՄԱՍՏՈՒԱԾՈՒԹԻՒՆ:
ՅՈԳՆԱՎՐԴՈՎ, տե՛ս ԲԱԶՄԱՎՐԴՈՎ:
ՅՈԳՆԱՏԱՐ, տե՛ս ԲԱԶՄԱՏԱՐ:
ՅՈԳՆԱՏԱՐԱԾ, ա. Բազմատարած, լայնածաւալ:
ՅՈԳՆԱՏԵՍԱԿ, ՅՈԳՆԱՏԵՍԱԿԱՊԷՍ, տե՛ս ԲԱԶՄԱՏԵՍԱԿ:
ՅՈԳՆԱՏԵՍԻԼ, ա. Բազմատեսիլ, բազմադիմի, յոգնատեսակ:
ՅՈԳՆԱՏԽՈՒՐ, տե՛ս ԲԱԶՄԱՏԽՈՒՐ:
ՅՈԳՆԱՓԱՅԼ, տե՛ս ԲԱԶՄԱՓԱՅԼ:
ՅՈԳՆԵԼ (իմ), չբ. Խոնջել, վաստակել, աշխատել, պարտասել:

ՅՈԳՆԵՐԱՆԵԱՆ, տե՛ս ԲԱԶՄԵՐԱՆԵԱՆ:
ՅՈԳՆԵՐՋԱՆԻԿ, տե՛ս ԲԱԶՄԵՐՋԱՆԻԿ:
ՅՈԳՆՈՐԱԿԱԿԱՆ կամ ՅՈԳՆՈՐԱԿԱՆ, ա. Բազմապիսի, բազմագունի, բազմերանգ, պէսպէս:
ՅՈԳՆՈՒՍՏ, մ. Ի բազմաց հետէ, անդըստին:
ՅՈԳՆՕՐԷՆ, մ. Յոգնօրինակաբար, բազմօրինակաբար:
ՅՈԳՆՕՐԻՆԱԿԱԲԱՐ, տե՛ս ՅՈԳՆՕՐԷՆ:
ՅՈԳՒՈՅՉԱՆՈՒԹԻՒՆ, գ. Հառաչանք, հեծութիւն:
ՅՈԼՈՎ, ա. 1. Բազում, շատ, յաճախ, յոգն: 2. մ. Շատ, բազումս, յոյժ, առաւել, ստէպ:
- ՅՈԼՈՎՔ, գ. Բազումք:
- ՅՈԼՈՎ ԱՆԳԱՄ, մ. Յոլովաբար, յոլովակի, յաճախակի, յոլովիցս անգամ:
ՅՈԼՈՎԱԲԱՐ, մ. Յոլովակի, յոլով անգամ:
ՅՈԼՈՎԱԳՈՅՆ, ա. մ. 1. Բազմագոյն, առաւելագոյն, երկարագոյն: 2. Յոլովակի, աւելի, առաւելապէս, մեծապէս, մեծաւ մասամբ, յաճախ, յերկար, ստէպ:
ՅՈԼՈՎԱԳՈՒԹ, տե՛ս ԲԱԶՄԱԳՈՒԹ:
ՅՈԼՈՎԱԽՈՒՄԲ, տե՛ս ԲԱԶՄԱԽՈՒՄԲ:
ՅՈԼՈՎԱԾԻՆ, տե՛ս ԲԱԶՄԱԾԻՆ:
ՅՈԼՈՎԱԿԵԱՑ, տե՛ս ԵՐԿԱՅՆԱԿԵԱՑ:
ՅՈԼՈՎԱԿԻ, մ. 1. Յոլով անգամ: 2. ա. Յոլով, յոլովագոյն:
ՅՈԼՈՎԱՋԵՌՆ, տե՛ս ԲԱԶՄԱՋԵՌՆ:
ՅՈԼՈՎԱՄԵՂԾ, ա. Աղտեղի, փիծ:
ՅՈԼՈՎԱՆԱԼ, չբ. Բազմանալ, առաւելուլ, յորդել, յոլովել, յաճախել:
ՅՈԼՈՎԱՊԱՏԻԿ, տե՛ս ԲԱԶՄԱՊԱՏԻԿ:
ՅՈԼՈՎԱՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՅՈԼՈՎԵԼ[1] (1):
ՅՈԼՈՎԵԼ[1], նբ. 1. Յոլովացուցանել, բազմացուցանել, առաւելուլ, յաճախել, յերկարել: 2. չբ. տե՛ս ՅՈԼՈՎԵԼ[2] (իմ):
ՅՈԼՈՎԵԼ[2] (իմ), չբ. Յաճախել, բազմանալ, յաւելուլ:

ՅՈԼՈՎԻՑՍ ԱՆԳԱՄ, տե՛ս ՅՈԼՈՎ ԱՆԳԱՄ:
ՅՈԼՈՎՈՒԹԻՒՆ, գ. Շատութիւն, բազմութիւն, յաճախութիւն, առաւելութիւն, յորդութիւն:
ՅՈԽՈՐՏ, ա. 1. տե՛ս ՅԱԽՈՐՏ: 2. մ. տե՛ս ՅՈԽՈՐՏԱԲԱՐ:
ՅՈԽՈՐՏԱԲԱՐ, մ. Յոխորտօրէն, յանդըգնաբար, անխորհրդաբար, յախուռն:
ՅՈԽՈՐՏԱԼ, ՅՈԽՈՐՏԱՆԱԼ, չբ. 1. Յանդըգնել, խրոխտալ, եղջիւր ածել: 2. Սպառնալ:
ՅՈԽՈՐՏԱՆՔ, ՅՈԽՈՐՏՈՒԹԻՒՆ, գ. Խըրոխտումն, յաւհրութիւն, յանդգնութիւն:
ՅՈԽՈՐՏՕՐԷՆ, տե՛ս ՅՈԽՈՐՏԱԲԱՐ:
ՅՈՂԱԼ, չբ. 1. Յուլանալ, յողնել, ընդողնել, յառել: 2. Դիտել, հսկել, դարանել, սպասել:
ՅՈՂԴՈՂԴ, ա. Անհաստատ, անկայուն, դողդոջուն, խախուտ, խարխուլ, դիւրաշարժ, զաղփաղփուն, տկար:
ՅՈՂԴՈՂԴԵԼ, նբ. Յողդողդեցուցանել, խախտել, խարխարել, շարժլել, տատանել, յուզել, վրդովել:
ՅՈՂԴՈՂԴԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՅՈՂԴՈՂԴԵԼ:
ՅՈՂԴՈՂԴՈՒՄՆ, գ. Խախտումն, տատանումն, ծփումն, յուզումն:
ՅՈՂԴՈՂԴՈՒՆ, ա. Յողդողդ, խախուտ:
ՅՈՂՆԵԼ (իմ), տե՛ս ՅՈՂԱԼ և ԸՆԴՈՂՆԵԼ (իմ):
ՅՈՅԶ, գ. 1. Խոյզ և խնդիր, քննութիւն: 2. Ծփումն, չփոթ, վրդով:
ՅՈՅԺ, մ. ա. Ուժգին, սաստկապէս, կարի, խիստ մեծապէս, շատ:
- ՅՈՅԺ ՅՈՅԺ, ԱՌԱՒԵԼ ՔԱՆ ԶՅՈՅԺ, մ. Կարի յոյժ, ևս քան զևս, առաւել քան զառաւել:
ՅՈՅԼ, ա. Ծոյլ, դանդաղկոտ, հեղգ, պղերգ:
ՅՈՅՆ, տե՛ս ԵԼԼԵՆԱՑԻ:
ՅՈՅՍ, գ. Ակնկալութիւն, վստահութիւն,

ապաւինութիւն, ապաւէն:
ՅՈՅՐ, ա. Գէր, պարարտ, թանձր, ստուար, թաւ:
ՅՈՊՆԱԿ, գ. Սայլակ, սայլիկ:
ՅՈՌԱԳՈՅՆ, ա. Յոռեգոյն, վատթարագոյն, յետին:
ՅՈՌԱԾԻՆ, ա. Վատթարազգի, վատատոհմակ, վատատոհմիկ:
ՅՈՌԱՆԱԼ, չբ. Վատթարանալ:
ՅՈՌԱՊԷՍ, մ. Յոռի, չարաչար:
ՅՈՌԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Յոռեցուցանել, ընդ վայր հարկանել, անտեսել:
ՅՈՌԵԱԿ, ա. Արհամարհ, չնչին, անշուք:
ՅՈՌԵԳՈՅՆ, տե՛ս ՅՈՌԱԳՈՅՆ:
ՅՈՌԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՅՈՌԱՑՈՒՑԱՆԵԼ:
ՅՈՌԻ, ա. 1. Վատթար, չար, անպիտան, անարգ, ստորին, նուաստ, խոտան, չընչին, թերի, անտեղի, անարժան, գարշ: 2. մ. տե՛ս ՅՈՌԱՊԷՍ:
ՅՈՌԻՆ, տե՛ս ՅՈՌԻ (1):
ՅՈՌՈՒԹԻՒՆ, գ. Վատթարութիւն, անպիտանութիւն, անտեղութիւն:
ՅՈ՞Վ, տե՛ս ՅՈ՞:
ՅՈՎԱՋ, տե՛ս ԻՆԾ, ԻՆՁ:
ՅՈՎԱՆԱԿ, տե՛ս ՅԱՒԱՆԱԿ:
ՅՈՎԱՏԱԿ, տե՛ս ՁԻ:
ՅՈՏԱՆԱՒՈՐ, ա. մ. Ոտնաւոր:
ՅՈՏԱՆԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. Ոտնակցութիւն:
ՅՈՐԴ, ա. 1. Առատ, լիաբուղխ, բազմահոսան: 2. գ. Յորդութիւն, լիութիւն:
ՅՈՐԴԱԲԱՆՈՒԹԻՒՆ, գ. Ճոխաբանութիւն, պերճաբանութիւն:
ՅՈՐԴԱԲՈՐԲ, ա. Տօթագին:
ՅՈՐԴԱԲՈՒ(Ղ)Խ, ա. 1. տե՛ս ԱՌԱՏԱԲՈՒՂԽ: 2. Լիապէս:
ՅՈՐԴԱԳՆԱՑ, տե՛ս ՅՈՐԴԱԽԱՂԱՑ:
ՅՈՐԴԱԳՈՅՆ, ա. մ. Առատագոյն, ճոխագոյն, առաւելապէս, մեծապէս:
ՅՈՐԴԱԳՈՒԹ, ա. Բազմագութ:
ՅՈՐԴԱԴԷՄ, ա. Յորդախաղաց:
ՅՈՐԴԱԼԻ, ա. Յորդառատ, երկար:
ՅՈՐԴԱԼՈՅՍ, ա. Լուսափայլ, պայծառաբորբոք:
ՅՈՐԴԱԽԱՂԱՑ, ա. Յորդագնաց, յորդէգնաց, յորդահոս, յորդաբուղխ:
ՅՈՐԴԱԽՕՍ, ա. Ճոխաբան:
ՅՈՐԴԱՀԵՂԵՂ, ա. Յորդահոս:
ՅՈՐԴԱՀԵՂՈՒ, ա. Յորդահոս:
ՅՈՐԴԱՀՈՍ, ՅՈՐԴԱՀՈՍԱԿ, ՅՈՐԴԱՀՈՍԱՆ, ա. 1. Մեծահոսան, առատահոս, յորձանախաղաց: 2. Յորդաբուղխ, առատաբուղխ:
ՅՈՐԴԱՀՈՍԵԱՆ, տե՛ս ՅՈՐԴԱՀՈՍ:
ՅՈՐԴԱՋՈՒՐ, ա. Շատաջուր, ջրալից, յորդահոս:
ՅՈՐԴԱՌԱՏ, ա. 1. Առատահոս, յորդահոսան, բազմազեղ: 2. մ. Յորդագոյնս:
ՅՈՐԴԱՍԱՀ, ա. Յորդախաղաց, յորդահոս:
ՅՈՐԴԱՍԱՑ, ա. Ճոխաբան:
ՅՈՐԴԵԼ$^1$, նբ. 1. Առատացուցանել, հեղուլ, բղխել, հոսել, ծաւալել, յաճախել: 2. չբ. տե՛ս ՅՈՐԴԵԼ$^2$ (իմ):
ՅՈՐԴԵԼ$^2$ (իմ), չբ. Առատանալ, բազմանալ, առաւելուլ, բղխել, սորել, ծորել:
ՅՈՐԴԵՌԱՆԴ, ՅՈՐԴԵՌԱՆԴՆ, ա. Ջերմեռանդն, ջերմագութ, գորովալից:
ՅՈՐԴԷԳՆԱՑ, տե՛ս ՅՈՐԴԱԳՆԱՑ:
ՅՈՐԴՈՐ, ա. մ. Յօժար, յօժարամիտ, փոյթ, մտադիւր, կամակար, ինքնակամ, դիւրին, դիւրապատրաստ:
ՅՈՐԴՈՐԱԳՈՅՆ, ա. 1. Ինքնայորդոր, ինքնայօժար, յօժարագոյն, մտադիւրագոյն: 2. Յորդեռանդն, յորդագոյն:
ՅՈՐԴՈՐԱԿԱՆ, ա. 1. Յորդորիչ, մխիթարական: 2. Յորդորամիտ:
ՅՈՐԴՈՐԱՄԻՏ, ա. Յօժարամիտ:
ՅՈՐԴՈՐԵԼ, նբ. 1. Յորդորեցուցանել, յօժարեցուցանել, թելադրել, խրատել, սադրել, գրգռել, հրապուրել, մխիթարել: 2. Քաջալերել: 3. Յորդել, յաճախել, ծաւալել, զեղուլ:

ՅՈՐԴՈՐԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՅՈՐԴՈՐԵԼ (1):
ՅՈՐԴՈՐԵՑՈՒՑԻՉ, ա. Յորդորիչ:
ՅՈՐԴՈՐԻՉ, տե՛ս ՅՈՐԴՈՐԵՑՈՒՑԻՉ:
ՅՈՐԴՈՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Յորդորումն: 2. Յորդումն, յորդութիւն:
ՅՈՐԴՈՐՈՒՄՆ, տե՛ս ՅՈՐԴՈՐՈՒԹԻՒՆ (1):
ՅՈՐԴՈՒԹԻՒՆ, գ. Առատութիւն, յորդումն:
ՅՈՐԴՈՒՄՆ, գ. Յորձան, ծաւալումն, զեղումն:
ՅՈՐԺԱՄ, մ. 1. Երբ, իբրև: 2. շ. Մինչ, որովհետև:
- ՅՈ՞ՐԺԱՄ կամ ՅՈ՞Ր ԺԱՄ, դ. Ե՞րբ:
ՅՈՐՉ, գ. Ոչխար (արու):
ՅՈՐՋԱՀՈՍ, ա. Յորձանահոս:
ՅՈՐՋԱՆ, գ. 1. Յորդումն, յորդութիւն: 2. Հեղեղ: 3. Սահանք: 4. Յորձանուտ: 5. Ալիք:
- ՅՈՐՋԱՆՍ ԱՌՆՈՒԼ, տե՛ս ԵՌԱԼ (1):
ՅՈՐՋԱՆԱԽԱՂԱՑ, ա. Յորդահոս:
ՅՈՐՋԱՆԱԽՈՐ, ա. Խորայորձան:
ՅՈՐՋԱՆԱՀՈՍ, տե՛ս ՅՈՐՋԱՀՈՍ:
ՅՈՐՋԱՆՈՒՏ, գ. 1. տե՛ս ՅՈՐՋԱՆ (4): 2. ա. Շրջանապտոյտ:
ՅՈՐՈՆՋԵԼ, տե՛ս ՅՕՐԱՆՋԵԼ:
ՅՈՐՋՈՐՋԱՆՔ, գ. Յորջորջումն, կոչումն, անուանակոչութիւն, մականուն:
- ՅՈՐՋՈՐՋԱՆՕՔ, մ. Պիտակաբար, խառնակաբան:
ՅՈՐՋՈՐՋԵԼ, նբ. 1. Կոչել, անուանել: 2. Մականուանել:
ՅՈՐՋՈՐՋՈՒՄՆ, տե՛ս ՅՈՐՋՈՐՋԱՆՔ:
- ՅՈՐՋՈՐՋՈՒՄՆ ՓՈՓՈԽԵԱԼ՝ ՓՈՓՈԽԱԿԱՆ. Այլաբանութիւն, փոխաբերութիւն:
ՅՈ՞Ր ՍԱԿՍ, եղբ. Ընդէ՞ր, վասն է՞ր:
ՅՈՐՍԱՅՍ, մ. Յորսայսեալ, պորտ ի վեր:
- ՅՈՐՍԱՅՍ ԱՌՆԵԼ, տե՛ս ՅՈՐՍԱՅՍԵԼ:
- ՅՈՐՍԱՅՍ ԼԻՆԵԼ՝ ԿԱԼ. Յորսայսեալ անկանել՝ կալ:
ՅՈՐՍԱՅՍԵԱԼ, տե՛ս ՅՈՐՍԱՅՍ:
- ՅՈՐՍԱՅՍԵԱԼ ԱՆԿԱՆԵԼ՝ ԿԱԼ, տե՛ս ՅՈՐՍԱՅՍ ԼԻՆԵԼ՝ ԿԱԼ:
ՅՈՐՍԱՅՍԵԼ, նբ. Յորսայս առնել, զգետնել, տապաստ արկանել:
ՅՈՒԶԱԽՆԴԻՐ ԼԻՆԵԼ. Յուզել, խուզել:
ՅՈՒԶԱԿ, ա. 1. Խնդրակ: 2. Գրգռիչ, չարժիչ: 3. Յուզական:
ՅՈՒԶԱԿԱՆ, ա. 1. Ծփական, ալէկոծ: 2. Յուզակ, խուզարկու:
ՅՈՒԶԱԿՈՅՏ, ա. Մրրկայոյզ, ալէկոծ:
ՅՈՒԶԱՐԿՈՒ, ա. Յելուզակ, աւարառու, կողոպտիչ:
ՅՈՒԶԵԼ, նբ. 1. Ի խնդիր ելանել, խուզել, քննել, հետազօտել: 2. Շարժել, յեղյեղել, խռովել, վրդովել, չփոթել, խարբալել, գրգռել, արծարծել:
ՅՈՒԶՈՒՄՆ, գ. 1. Յոյզ, խոյզ և խնդիր: 2. Շարժումն:
ՅՈՒԼԱԲԱՐ, մ. Դանդաղաբար:
ՅՈՒԼԱՆԱԼ, չբ. Յողալ, ծուլանալ, դանդաղել:
ՅՈՒԼԱՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՅՈՒՂԱՑՈՒՑԱՆԵԼ:
ՅՈՒԼԻԿ, տե՛ս ՈՒԼԻԿ:
ՅՈՒԼՈՒԹԻՒՆ կամ ՅՈՒՂՈՒԹԻՒՆ, գ. Դանդաղութիւն, դանդաղանք, ծուլութիւն, պղերգութիւն, թուլամորթութիւն, անհոգութիւն:
ՅՈՒԿԱՄ, եղբ. Յուպէտ:
ՅՈՒՂԱԼ, չբ. Յողալ, յուլանալ:
ՅՈՒՂԱՐԿ ԵՐԹԱԼ կամ ԼԻՆԵԼ. Յուղարկել:
ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐ, ա. Յուղարկող, ուղարկաւոր:
ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. Յուղարկութիւն, յուղարկումն:
ՅՈՒՂԱՐԿԵԼ, նբ. Ուղևորել, ուղարկել:
ՅՈՒՂԱՐԿՈՒԹԻՒՆ, ՅՈՒՂԱՐԿՈՒՄՆ, տե՛ս ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ:
ՅՈՒՂԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Յուլացուցանել, թուլացուցանել, մեղկացուցանել:

ՅՈՒՂՈՒԹԻՒՆ, տե՛ս ՅՈՒԼՈՒԹԻՒՆ:
ՅՈՒՆ, ՅՈՒՆՔ, տե՛ս ՅՈՆ, ՅՈՆՔ:
ՅՈՒՆԱԿԱՆ, տե՛ս ԵԼԼԱԴԱԿԱՆ:
ՅՈՒՇԱԽԱՂԱՑ, ա. Յամրաշարժ, ծանրաշարժ:
ՅՈՒՇԱՐԱՐ, ա. Յիշեցուցիչ, զգուշացուցիչ:
ՅՈՒՇԱՐԱՐՈՒԹԻՒՆ, գ. Մտարկումն, ազդումն, խրատ:
ՅՈՒՇԿԱՊԱՐԻԿ, գ. 1. Իշացուլ: 2. Համբարու: 3. Ձիացուլ:
ՅՈՒՊԷՏ, տե՛ս ՅՈՒԿԱՄ:
ՅՈՒՌԹԵԼ, նբ. Դիւթել, հմայել, թովել, ուռթել:
ՅՈՒՌԹԻ, ա. Ջրարբի, արգաւանդ, բերրի:
ՅՈՒՌԹԻՉ, ա. Դիւթ, կախարդ:
ՅՈՒՌԹՈՒԹԻՒՆ, գ. Կախարդութիւն, հմայք, մոգութիւն:
ՅՈՒՌՄԱՐԵԼ, չբ. Քինախնդիր լինել:
ՅՈՒՌՄԱՐՈՒԹԻՒՆ, գ. Ոխակալութիւն, քինախնդրութիւն:
ՅՈՒՌՈՒԹ, մանաւանդ՝ ՅՈՒՌՈՒԹՔ, գ. Հմայք, բժժանք, կախարդութիւն, թովչութիւն:
ՅՈՒՍԱԲԵՐ, ա. Յուսակիր:
ՅՈՒՍԱԴԻՐ, ա. Քաջալերիչ, մխիթարիչ:
ՅՈՒՍԱԴՐԱՆՔ, տե՛ս ՅՈՒՍԱԴՐՈՒԹԻՒՆ:
ՅՈՒՍԱԴՐԵԼ, նբ. Քաջալերել, յուսացուցանել:
ՅՈՒՍԱԴՐՈՒԹԻՒՆ, գ. Յուսադրանք, քաջալերութիւն:
ՅՈՒՍԱԼ, չբ. 1. Ակն ունել: 2. Ապաւինել, ապաստանել, հաւատալ, վստահել, վստահանալ:
ՅՈՒՍԱԼԻՐ, տե՛ս ՅՈՒՍԱԼԻՑ:
ՅՈՒՍԱԼԻՑ, ա. Յուսալիր, յուսապատար:
ՅՈՒՍԱԿԻՐ, ա. Յուսաբեր:
ՅՈՒՍԱԿՈՐՈՅՍ, ա. մ. Անյոյս, յուսահատ:
ՅՈՒՍԱԿՏՈՒՐ, ա. մ. Յուսակորոյս:
ՅՈՒՍԱՀԱՏ, ա. 1. Յուսակորոյս, անյոյս, յուսակտուր: 2. Անյուսալի:
- ՅՈՒՍԱՀԱՏ ԱՌՆԵԼ. Յուսահատել:
- ՅՈՒՍԱՀԱՏ ԼԻՆԵԼ՝ ԳՈԼ. Սրտաբեկել, վարանել, վհատել, լքանել:
ՅՈՒՍԱՀԱՏԵԼ[1], նբ. տե՛ս ՅՈՒՍԱՀԱՏ ԱՌՆԵԼ:
ՅՈՒՍԱՀԱՏԵԼ[2] (իմ), չբ. տե՛ս ՅՈՒՍԱՀԱՏ ԼԻՆԵԼ:
ՅՈՒՍԱՀԱՏՈՒԹԻՒՆ, գ. Անյուսութիւն, լքութիւն, լքումն, վհատութիւն:
ՅՈՒՍԱՊԱՏԱՐ, տե՛ս ՅՈՒՍԱԼԻՑ:
ՅՈՒՍԱՏՐՈՒԹԻՒՆ, գ. Յուսադրութիւն, քաջալերութիւն:
ՅՈՒՍԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Վստահացուցանել:
ՅՈՒՐԱԼ, նբ. Արձակել, տեղալ (նետեր):
ՅՈՒՐԱՆ, գ. ՊՈՒՏՈՒԿ:
ՅՈՒՐԱՍՏ, տե՛ս ՈՒՐԱՍՏ:
ՅՍՏԱԿ, ա. 1. Զուտ, անխառն, անաղտ, ջինջ, մաքուր, վճիտ, պայծառ, ականակիտ: 2. Թափանցիկ: 3. Դիւրալուր: 4. մ. Յստակաբար, յստակապէս:
ՅՍՏԱԿԱԲԱՐ, տե՛ս ՅՍՏԱԿ (4):
ՅՍՏԱԿԱԳՈՅՆ, ա. մ. Ջինջ, պայծառ, թափանցիկ:
ՅՍՏԱԿԱՄԻՏ, ա. Պարզամիտ, անխարդախ, անկեղծ:
ՅՍՏԱԿԱՄՏԱԲԱՐ, մ. Պարզամտաբար:
ՅՍՏԱԿԱՄՏՈՒԹԻՒՆ, գ. Պարզամտութիւն, միամտութիւն, անկեղծութիւն:
ՅՍՏԱԿԱՆԱԼ, չբ. Յստակել, մաքրանալ:
ՅՍՏԱԿԱՊԱՏՈՒՄ ԱՌՆԵԼ. Պարզաբանել:
ՅՍՏԱԿԱՊԷՍ, տե՛ս ՅՍՏԱԿ (4):
ՅՍՏԱԿԱՍՊԱՍ, ա. Ամենապայծառ, անաղօտ:
ՅՍՏԱԿԱՏԵՍՈՒԹԻՒՆ, գ. Սրատեսութիւն:
ՅՍՏԱԿԵԼ, նբ. Մաքրել, սրբել, զտել, պարզել, որոշել, պայծառացուցանել:
ՅՍՏԱԿԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՅՍՏԱԿԵԼ:
ՅՍՏԱԿՈՒԹԻՒՆ, գ. 1. Մաքրութիւն,

սրբութիւն, զտութիւն, պարզութիւն, պայծառութիւն: 2. Յստակամտութիւն, անկեղծութիւն:
ՅՕԴ, գ. 1. (կզմխս.) Կրկնուած: 2. Անդամ (մարմնի մասերից իւրաքանչիւրը): 3. Կապ, շաղկապ: 4. (քեր.) Արթր, յաւելադրութիւն:
– ՅՕԴ ՅՕԴ, մ. Անդամ անդամ:
ՅՕԴԱԲԱՆ, ա. Ստաբան, ստախօս:
ՅՕԴԱԼՈՅԾ, ա. Անդամալոյծ:
ՅՕԴԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Յօդաւորութիւն, բաղկացութիւն, բաղադրութիւն:
ՅՕԴԱԿԱՊ, գ. Յօդ, զօդ, կապ, շաղկապ:
ՅՕԴԱԿՑԵԼ (իմ), չբ. Կապակցել (յօդերով կցուել):
ՅՕԴԱՆԱԼ, չբ. Յարմարել, կազմել, ձեւանալ, տարրանալ:
ՅՕԴԱՊԱՏ, ա. Մարմնեղէն, տարրեղէն:
ՅՕԴԱՏԵՍԱԿ, ա. Յօդաւոր, տարրեղէն:
ՅՕԴԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Յօդել:
ՅՕԴԱՒՈՐ, ա. 1. Տարրեղէն, մարմնեղէն, նիւթական: 2. Բարեյօդ, բարեյարմար, պատկանաւոր: 3. Նշանական, տարորոշ, որոշյալ:
ՅՕԴԱՒՈՐԱԲԱՐ, տե՛ս ՅՕԴԱՒՈՐԱՊԷՍ:
ՅՕԴԱՒՈՐԱԿԱՆ, տե՛ս ՅՕԴԱՒՈՐ:
ՅՕԴԱՒՈՐԱՊԷՍ, մ. 1. Յօդաւորաբար, մարմնապէս: 2. Բարեյարմար, յարմարապէս: 3. Զուգաձայնապէս:
ՅՕԴԱՒՈՐԵԼ, նբ. Յօդացուցանել, յօդել:
ՅՕԴԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. Զափակցութիւն, համաձայնութիւն, համեմատութիւն, յարմարութիւն:
ՅՕԴԵԼ, նբ. 1. Զօդել, շաղկապել, բաղադրել, յարմարել, յերիւրել, պատկանել: 2. Յարմարել, կցկցել, հայթայթել, կարկատել, ձեւացուցանել, խոխոտել:
ՅՕԴՈՒԱԾ, գ. 1. Բաղկացութիւն, բաղադրութիւն, կապակցութիւն, յօրինուած, կազմած: 2. Յօդ, կցուած, կարան:
ՅՕԴՈՒԱԾՈՅ, ա. Բաղադրեալ, յարմարեալ:
ՅՕԴՈՒՄՆ, գ. Շաղկապումն:
ՅՕԺԱՐ, ա. 1. Ինքնայորդոր, դիւրապատրաստ, կամակար: 2. մ. Յօժարաբար, յօժարապէս, մտադիւր, յօժարութեամբ:
ՅՕԺԱՐԱԲԱՐ, տե՛ս ՅՕԺԱՐ (2):
ՅՕԺԱՐԱԿԱՆ, ա. Ախորժական, դիւրապատրաստ, կամաւոր, ընտրողական:
– ՅՕԺԱՐԱԿԱՆՆ, գ. (յունական ոճով) Կամաւորութիւն, ինքնակամութիւն, յօժարամտութիւն, ընտրողականութիւն:
ՅՕԺԱՐԱՄԻՏ, ա. Ինքնայօժար, ինքնակամ, ինքնայորդոր:
ՅՕԺԱՐԱՄՏԱԲԱՐ, մ. Կամովին:
ՅՕԺԱՐԱՄՏԱԿԱՆ, ա. Յօժարական, ընտրողական, կամաւոր:
ՅՕԺԱՐԱՄՏՈՒԹԻՒՆ, գ. Նախայօժարութիւն, յառաջամտութիւն, դիւրամըտութիւն:
ՅՕԺԱՐԱՆԱԼ, տե՛ս ՅՕԺԱՐԵԼ$^{2}$ (իմ):
ՅՕԺԱՐԱՊԷՍ, տե՛ս ՅՕԺԱՐ (2):
ՅՕԺԱՐԱՍԷՐ, ա. Կամակար:
ՅՕԺԱՐԱՍԻՐՈՒԹԵԱՄԲ, մ. Սրտի մտօք:
ՅՕԺԱՐԱՏՐԱԿԱՆ, ա. Յօժարամիտ, առատաձեռն:
ՅՕԺԱՐԱՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՅՕԺԱՐԵՑՈՒՑԱՆԵԼ:
ՅՕԺԱՐԵԼ$^{1}$, նբ. 1. Յօժարեցուցանել, հաւանեցուցանել, յորդորել: 2. չբ. տե՛ս ՅՕԺԱՐԵԼ$^{2}$ (իմ):
ՅՕԺԱՐԵԼ$^{2}$ (իմ), չբ. Յօժարանալ, հաճել, ախորժել, ցանկալ, կամել, հաւանել, յանձըն առնուլ:
ՅՕԺԱՐԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՅՕԺԱՐԵԼ$^{1}$:
ՅՕԺԱՐՄՏՈՒԹԻՒՆ, տե՛ս ՅՕԺԱՐԱՄԸՏՈՒԹԻՒՆ:
ՅՕԺԱՐՈՒԹԻՒՆ, գ. Կամք, հաճութիւն, ցանկութիւն, կամեցողութիւն, բերումն, հակամիտութիւն:
– ՅՕԺԱՐՈՒԹԵԱՄԲ, տե՛ս ՅՕԺԱՐ (2):
ՅՕՆ, մանաւանդ՝ ՅՕՆՔ, գ. Յուն, յունք:
ՅՕՆԵՂ, ա. Թաւայօն:
ՅՕՇԱՏԵԼ, տե՛ս ՅՕՇԵԼ:

ՌՈՇՆԱԿԱՆ, ա. Լուսաւոր, պայծառ, մաքրափայլ:
ՌՈՇՆՈՒԹԻՒՆ, գ. Լուսաւորութիւն, պայծառութիւն, փխբ. պարզամտութիւն, պարզութիւն:
ՌՈՒՄԲ, գ. Պարսաքար, վիրգ:
ՌՈՒՆԳՆ կամ ՌՈՒՆԿՆ, գ. Քիթ, ունչք:

# Ս

ՍԱ ԱՒԱՍԻԿ, մ. չ. եւ արդ, բայց արդ:
ՍԱԲԱ, ա. գ. Ծեր, երէց, աւագ:
ՍԱԲԵԿ, տե՛ս ՑԻՐԴ:
ՍԱԴԱՅԷԼ, գ. Սատանայ:
ՍԱԴՐԱՆՔ, գ. Հրապուրանք, հրապոյրք, թելադրութիւն, դաւ:
ՍԱԴՐԵԼ, նբ. 1. Յորդորել, հրապուրել, թելադիր լինել, թելադրել, գրգռել, դրդել: 2. Ջեռնտու լինել, յանձնել, ապսպարել: 3. Հայթայթել, միջնորդել:
ՍԱԴՐԻՉ, ա. գ. Հակառակայորդոր, թելադիր:
ՍԱԹ, գ. Ելեկտրիոն:
ՍԱԹՆՈՒԿ, տե՛ս ՍՊՈՒՆԳ:
ՍԱԼԱԿԱՊ, տե՛ս ՍԱԼԱՅԱՏԱԿ:
ՍԱԼԱՄԲ, գ. (կենդբ.) Կիքրիս:
ՍԱԼԱՅԱՏԱԿ, ա. Սալակապ:
ՍԱԼԱՆԱԼ, չբ. Կարծրանալ, խստանալ, քարանալ:
ՍԱԼԱՐ, տե՛ս ՍԱՂԱՐ:
ՍԱԼԱՐԵԼ (իմ), չբ. 1. Թաքչել, ղօղել: 2. Ապաստան լինել:
ՍԱԿ[1], գ. 1. Պայման, չափ, որքանութիւն: 2. Կարգ, դաշն, օրէնք:
- ՍԱԿ ԱՐԿԱՆԵԼ. Գին հատանել՝ արկանել:
ՍԱԿ[2] , գ. Տուրք, հարկ:
ՍԱԿԱՅՆ, չ. Բայց, այլ, համայն, իսկ:
ՍԱԿԱՌ, ՍԱԿԱՌԻ, գ. Սապատ, կողով:
ՍԱԿԱՒ, ա. մ. Փոքր, նուազ, պակաս, խուն, դոյզն, դուզնաքեայ, սուղ:
- ԱՌ ՍԱԿԱՒ ՄԻ, մ. Փոքր մի, փոքր ինչ, խուն մի:
- ՍԱԿԱՒ ՍԱԿԱՒ, ԱՌ ՍԱԿԱՒ ՍԱԿԱՒ, մ. Փոքր փոքր, առ փոքր փոքր, ըստ սակաւ սակաւ:
- ԸՍՏ ՍԱԿԱՒ ՍԱԿԱՒ, տե՛ս ՍԱԿԱՒ ՍԱԿԱՒ:
ՍԱԿԱՒԱԳԻՆ, տե՛ս Դիւրագին:
ՍԱԿԱՒԱԳՈՅՆ, ա. մ. Նուազագոյն:
ՍԱԿԱՒԱԹԻՒ, ա. Նուաստախումբ:
ՍԱԿԱՒԱԺԱՄԱՆԱԿ, ՍԱԿԱՒԱԺԱՄԱՆԱԿԵԱՅ, ՍԱԿԱՒԱԺԱՄԱՆԱԿԵԱՆ, ա. Դոյզնաժամանակեայ, դուզնամանակեան, սակաւօրեայ:
ՍԱԿԱՒԱԽՕՍ, ա. Նուազաբան:
ՍԱԿԱՒԱԿԵԱՑ, ա. 1. Կարճակեաց: 2. Սակաւապէտ:
ՍԱԿԱՒԱՀԱՒԱՏ, ա. Թերահաւատ:
ՍԱԿԱՒԱՀԱՒԱՏՈՒԹԻՒՆ, գ. Թերահաւատութիւն:
ՍԱԿԱՒԱՋԵՌՆ, ա. 1. Պակասաձեռն, սակաւաթիւ, սակաւաւոր: 2. փխբ. Թոյլ, տկար, անզօր: 3. Դոյզն, չափաւոր:
ՍԱԿԱՒԱՄԱՍՆԵԱՅ, ա. Զափաւոր, դուզնաքեայ, սուղ, համառօտ:
ՍԱԿԱՒԱՄԱՍՆՈՒԹԻՒՆ, գ. Զափաւորութիւն, համառօտութիւն:
ՍԱԿԱՒԱՄԻՏ, ա. Պակասամիտ, կարճամիտ:
ՍԱԿԱՒԱՆԱԼ, չբ. Պակասել, նուազել:
ՍԱԿԱՒԱՆՇԱՆ, ա. Աննշանակ:
ՍԱԿԱՒԱՊԵՏՈՒԹԻՒՆ, գ. Սուղ իշխանութիւն:
ՍԱԿԱՒԱՊԷՏ, ա. Պակասապէտ, ժուժկալ, պահացող:
ՍԱԿԱՒԱՊԻՏՈՒԹԻՒՆ, գ. Զափաւորութիւն, ժուժկալութիւն:
ՍԱԿԱՒԱՎԱԽՃԱՆ, ա. Արագավախճան:
ՍԱԿԱՒԱՏԵՍՈՒԹԻՒՆ, գ. Կարճատեսութիւն:
ՍԱԿԱՒԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Նուազեցու-

ցանել, պակասեցուցանել:
ՍԱԿԱՒԱՒՈՐ, ա. 1. Սակաւ, սուղ, նուազ: 2. Չքաւոր:
ՍԱԿԱՒԱՒՈՐԱԿԻ, մ. Դուն ուրեք:
ՍԱԿԱՒԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. Սակաւութիւն:
ՍԱԿԱՒԺԱՄԱՆԱԿԵԱՑ, ՍԱԿԱՒԺԱՄԱՆԱԿԵԱՆ, տե՛ս ՍԱԿԱՒԱԺԱՄԱՆԱԿԵԱՑ:
ՍԱԿԱՒԻԿ ԻՆՉ, ՍԱԿԱՒԻԿ ՄԻ, մ. Դոյզն, դոյզն ինչ, խուն մի, փոքր ինչ, փոքր մի:
ՍԱԿԱՒՈՒԹԻՒՆ, գ. Նուազութիւն, սակաւաւորութիւն:
ՍԱԿԱՒՕՐԵԱՑ, ա. Սակաւաժամանակեայ:
ՍԱԿՈՒՌ, գ. Տապար, վաղակաւոր, վաղր, սակր:
ՍԱԿՍ, Ի ՍԱԿՍ, նխդ. Յաղագս, վասն:
- ՍԱԿՍ ՉԻ, չ. Վասն զի, քանզի:
- ՍԱԿՍ Է՞Ր. Յո՞ր սակս:
- ՅԱՅՆ ՍԱԿՍ. Վասն այնորիկ:
- ՅՈ՞Ր ՍԱԿՍ, տե՛ս ՍԱԿՍ Է՞Ր:
ՍԱԿՐ, տե՛ս ՍԱԿՈՒՌ:
ՍԱԿՐԱՒՈՐ, ա. Տապարաւոր:
ՍԱՀ, գ. Գունդ, փաղանգ, բանակ:
ՍԱՀԱՆԱԲԱՑ, ա. Տեղատարափ:
ՍԱՀԱՆԱԿԱՐԿԱՋ, ա. Կարկաջահոս:
ՍԱՀԱՆԱՀՈՍ, ա. Յորձանահոս:
ՍԱՀԱՆՔ, գ. 1. Յորձան: 2. Ալէկոծութիւն:
ՍԱՀԱՒՈՐ, ա. Սահուն, անհաստատ:
ՍԱՀԵԼ (իմ), չբ. 1. Յածել, շարժել, տարաբերել, տատանել, յուզել, ծփել: 2. Հոսել, յորդել:
ՍԱՀԵՑՈՒՄՆ, գ. Յածումն, յոյզք, ծուփք, տարաբերումն, թարթափումն:
ՍԱՀԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Տարաբերել, տատանել:
ՍԱՀՄԱՆ, գ. 1. Կողմն, եզր, կէտ, ծայր, վերջ: 2. Չափ: 3. Կանոնադրութիւն, կարգ, օրէնք: 4. Ժամադրութիւն, ուխտադրութիւն: 5. Բան (բանական պատճառ): 6. Բառ (տրամաբանական եզր):
ՍԱՀՄԱՆԱԲԱՐ, մ. Որոշաբար, սահմանօրէն:
ՍԱՀՄԱՆԱԴԻՐ, ա. Օրինադիր:
ՍԱՀՄԱՆԱԴՐԵԼ, նբ. Որոշել, կարգաւորել, կարգել, օրինադրել, սահմանել:
ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Կետահաւութիւն: 2. Կարգաւորութիւն, օրինադրութիւն, վճիռ:
ՍԱՀՄԱՆԱԾ, ա. Սահմանեալ:
ՍԱՀՄԱՆԱԿԱԼ, գ. ա. 1. Կուսակալ, կողմնակալ, սահմանապահ: 2. Սահմանակից:
ՍԱՀՄԱՆԱԿԱՆ, ա. Սահմանիչ, որոշիչ, որոշողական, վճռական:
ՍԱՀՄԱՆԱԿԻՑ, ա. Սահմանորդ, սահմանակողմն, մերձաւոր:
ՍԱՀՄԱՆԱԿՈՂՄՆ, տե՛ս ՍԱՀՄԱՆԱԿԻՑ:
ՍԱՀՄԱՆԱՊԱՀ, ա. գ. Սահմանակալ, կուսակալ, բդեշխ:
ՍԱՀՄԱՆԵԼ, նբ. Սահմանադրել, որոշել, բացորոշել, կարգել, կարգաւորել, չափել:
- ՅԱՌԱՋԱԳՈՅՆ՝ ՅԱՌԱՋ ՍԱՀՄԱՆԵԼ. Նախասահմանել:
ՍԱՀՄԱՆԻՉ, ա. 1. Սահմանական: 2. Հրահանգիչ:
ՍԱՀՄԱՆՈՐԴ, տե՛ս ՍԱՀՄԱՆԱԿԻՑ:
ՍԱՀՄԱՆՕՐԷՆ, տե՛ս ՍԱՀՄԱՆԱԲԱՐ:
ՍԱՀՈՒՆ, ա. 1. Թափառական: 2. Շարժուն, հոսանուտ, փոփոխական:
ՍԱՂԱՊ, ա. Զաղփաղփուն, անհաստատ, դողդոջ, յողդողդ, յեղյեղուկ, խոտորնակ, թիւր:
ՍԱՂԱՊԵԼ (իմ), չբ. Դեգերել, շրջել, կրթել:
ՍԱՂԱՊԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Խոտորեցուցանել, շրջել:
ՍԱՂԱՊՈՒՄՆ, գ. Դեգերանք, կրթանք:
ՍԱՂԱՐ, գ. Սպասալար, զօրավար, սպարապետ:
ՍԱՂԱՐԹ, գ. 1. Տերև: 2. Նման. Գէս:
ՍԱՂԱՐԹԱԲԵՐ, ա. Տերևաբեր:

ՍԱՂԱՐԹԱԳԵՂ, տե՛ս ՍԱՂԱՐԹԱԽԻՏ:
ՍԱՂԱՐԹԱՋԳԵՑՈՒՄՆ, գ. Դալարություն:
ՍԱՂԱՐԹԱՋՈՒԱՐԹ, տե՛ս ՍԱՂԱՐԹԱՋՈՒԱՐՃ:
ՍԱՂԱՐԹԱՋՈՒԱՐՃ, ա. Սաղարթազուարթ, սաղարթագեղ, ոստազուարճ, սաղարթաճեմ:
ՍԱՂԱՐԹԱԹԱՓ, ա. Տերևաթափ, տերևընկէց:
ՍԱՂԱՐԹԱԽԻՏ, ա. Տերևախիտ, ոստախիտ, սաղարթաճոխ, տերևասաղարթ, սաղարթագեղ:
ՍԱՂԱՐԹԱԾԱՂԻԿ, ա. Ծաղկազուարճ, ծաղկափթիթ, զուարթածաղիկ:
ՍԱՂԱՐԹԱՃԵՄ, տե՛ս ՍԱՂԱՐԹԱՋՈՒԱՐՃ:
ՍԱՂԱՐԹԱՃԵՄԱՓԹԻԹ, ա. Դալարագեղ, անթառամ:
ՍԱՂԱՐԹԱՃՈԽ, տե՛ս ՍԱՂԱՐԹԱԽԻՏ:
ՍԱՂԱՐԹԱՆԱԼ, չբ. 1. Սաղարթել, սաղարթաւորել, տերևել: 2. փխբ. Ուռճանալ:
ՍԱՂԱՐԹԱՊԱՏ, ա. Տերևապատ, սաղարթարկու:
ՍԱՂԱՐԹԱՐԿՈՒ, տե՛ս ՍԱՂԱՐԹԱՊԱՏ:
ՍԱՂԱՐԹԱՒՈՐ, ա. Վարսաւոր, տերևալի:
ՍԱՂԱՐԹԱՒՈՐԵԼ (իմ), տե՛ս ՍԱՂԱՐԹԱՆԱԼ:
ՍԱՂԱՐԹԵԼ (իմ), տե՛ս ՍԱՂԱՐԹԱՆԱԼ:
ՍԱՂԱՐՈՒԹԻՒՆ, գ. Առաջնորդութիւն, վերակացութիւն:
ՍԱՂԱՒԱՐՏ, գ. 1. Գլխանոց, գլխապան, կորդակ: 2. Խոյր:
ՍԱՂՄ, ՍԱՂՄՆ, գ. Սերմն:
ՍԱՂՄՆԱՆԱԼ, տե՛ս ՍԱՂՄՆԱՌԵԼ:
ՍԱՂՄՆԱՌԵԼ, նբ. Սաղմնանալ, յղանալ:
ՍԱՂՄՆԱՌՈՒԹԻՒՆ, գ. Յղութիւն, յղացումն:
ՍԱՂՄՈՍ, տե՛ս ՍԱՂՄՈՍԱՐԱՆ (2):
ՍԱՂՄՈՍԱԲԱՆԵԼ, տե՛ս ՍԱՂՄՈՍԵԼ:
ՍԱՂՄՈՍԱԿԱՆ, ա. Սաղմոսանուագ:
ՍԱՂՄՈՍԱԿԻՑ, ա. Երգակից, պաշտօնակից:
ՍԱՂՄՈՍԱՆՈՒԱԳ, ա. գ. 1. Սաղմոսարան: 2. տե՛ս ՍԱՂՄՈՍԱՍԱՑ: 3. Սաղմոսական:
ՍԱՂՄՈՍԱՍԱՑ, ա. գ. Սաղմոսերգու, սաղմոսանուագ, սաղմոսերգ, սաղմոսերգեաց, սաղմոսերգիչ, սաղմոսերգող:
ՍԱՂՄՈՍԱՍԱՑՈՒԹԻՒՆ, տե՛ս ՍԱՂՄՈՍԵՐԳՈՒԹԻՒՆ:
ՍԱՂՄՈՍԱՐԱՆ, գ. 1. Տաւիղ: 2. Սաղմոս: 3. Սաղմոսանուագ:
ՍԱՂՄՈՍԵԼ, նբ. չբ. Սաղմոսաբանել:
ՍԱՂՄՈՍԵՐԳ, ՍԱՂՄՈՍԵՐԳԵԱՑ, ՍԱՂՄՈՍԵՐԳԻՉ, ՍԱՂՄՈՍԵՐԳՈՂ, ՍԱՂՄՈՍԵՐԳՈՒ, տե՛ս ՍԱՂՄՈՍԱՍԱՑ:
ՍԱՂՄՈՍԵՐԳՈՒԹԻՒՆ, գ. Սաղմոսասացութիւն, սաղմոսողութիւն, սաղմոսութիւն, փսաղտութիւն:
ՍԱՂՄՈՍՈՂՈՒ, գ. Սաղմոսաց, դպիր, փսաղտ:
ՍԱՂՄՈՍՈՂՈՒԹԻՒՆ, ՍԱՂՄՈՍՈՒԹԻՒՆ, տե՛ս ՍԱՂՄՈՍԵՐԳՈՒԹԻՒՆ:
ՍԱՄԵՏԷ, ՍԱՄԵՏԻ, գ. Սամոտիք:
ՍԱՄԻԹ ՎԱՅՐԵՆԻ, տե՛ս ՇՈՒՄՐԱՅ:
ՍԱՄԻՔ, տե՛ս ՔԵՂԻ:
ՍԱՄՈՅՐ, գ. Սամուրենի:
ՍԱՄՈՏԻՔ, տե՛ս ՍԱՄԵՏԷ(Ք), ՍԱՄԵՏԻ(Ք):
ՍԱՄՈՒՐԵՆԻ, տե՛ս ՍԱՄՈՅՐ:
ՍԱՄՍԱՐԵԼ, չբ. Նազել:
ՍԱՅԱՊԷՍ, տե՛ս ՍԱՊԷՍ:
ՍԱՅԹԱՔ, ա. 1. Գայթոտ, դիւրափոփոխ, յողդողդ: 2. Աջողակ, արագաշարժ:
ՍԱՅԹԱՔԵԼ, չբ. 1. Գայթել, գթել, դեդևել, տատանել, գայթագղել, խախտել, խոտորել: 2. նբ. Սայթաքեցուցանել, գթեցուցանել, տատանել: 3. Ջանց առնել, անտեսել:
ՍԱՅԹԱՔՈՒԹԻՒՆ, ՍԱՅԹԱՔՈՒՄՆ, գ. Գայթումն, դանդաչումն, վրիպումն, խոտորումն:

ՍԱՅԼ, գ. 1. Վաչ, կառք, սայլակառք: 2. Սայլակերպ աստեղք: 3. Սռնակ:
ՍԱՅԼԱԿ, գ. Սայլիկ:
ՍԱՅԼԱԿԱՌՔ, տե՛ս ՍԱՅԼ:
ՍԱՅԼԱԿԵՐՊ ԱՍՏԵՂՔ, տե՛ս ՍԱՅԼ (2):
ՍԱՅԼԱՏՈՒՆ, տե՛ս ՎԱԳՈՆԱՏՈՒՆ:
ՍԱՅԼԻԿ, տե՛ս ՍԱՅԼԱԿ:
ՍԱՅՐ, գ. Բերան (սուր ծայր, սրի հատող սուր մասը), ստոմ:
ՍԱՅՐԱԴԻՐ, գ. Սայր, բերան (երկաթի սուր ծայրը):
ՍԱՅՐԱՍՈՒՐ, ա. Ցեսանասուր, հատու:
ՍԱՆ[1], գ. Պոյտն, կաթսայ:
ՍԱՆ[2], գ. 1. Խոշտար: 2. Որդեգիր:
ՍԱՆԳԱՍՏԱԿ, տե՛ս ՍԱՆԳԱՍՏԱԿԱՆՔ:
ՍԱՆԳԱՍՏԱԿԱՆՔ, գ. Նախատինք, թշնամանք:
ՍԱՆԴ, գ. Անկան:
ՍԱՆԴԱԼ, գ. Սանդալիկ, հողաթափ, մուճակ, մոյկ:
ՍԱՆԴԱԼԻԿ, տե՛ս ՍԱՆԴԱԼ:
ՍԱՆԴԱՐԱՄԵՏ, գ. 1. Անդունդք, վիհ: 2. Դժոխք:
ՍԱՆԴԱՐԱՄԵՏԱԿԱՆ, ա. 1. Դժոխային: 2. Անդնդային, ստորերկրեայ:
ՍԱՆԴՂԱՁԵՒ, ա. Սանդղատեսակ:
ՍԱՆԴՂԱՄԱՏՆ, գ. Որոշ, աստիճան:
ՍԱՆԴՂԱՏԵՍԱԿ, տե՛ս ՍԱՆԴՂԱՁԵՒ:
ՍԱՆԴՈՒՂՔ, գ. Ելանելի, աստիճան:
ՍԱՆՁ, գ. Դանդանաւանդ, երասանակ:
ՍԱՆՁԱԲԵԿ ԱՌՆԵԼ, տե՛ս ՍԱՆՁԱՀԱՐԵԼ:
ՍԱՆՁԱԿՈԾ ԱՌՆԵԼ, տե՛ս ՍԱՆՁԱԿՈԾԵԼ:
ՍԱՆՁԱԿՈԾԵԼ, նբ. Սանձակոծ առնել, սանձահարել, երասանակակոծել, նուաճել, ըմբերանել:
ՍԱՆՁԱՀԱՐԵԼ, նբ. Սանձակոծել, սանձել, նուաճել, ընկճել, նկուն առնել, կրթել:
ՍԱՆՁԱՀԱՐՈՒԹԻՒՆ, գ. Սանձումն:
ՍԱՆՁԵԼ, նբ. Սանձակոծել, սանձահարել:
ՍԱՆՁՈՒՄՆ, տե՛ս ՍԱՆՁԱՀԱՐՈՒԹԻՒՆ:
ՍԱՊԱՏ, գ. 1. Սակառ, կողով: 2. Արկղ:
ՍԱՊԱՏԱԿ, գ. Արկղիկ, տապանակ:
ՍԱՊԱՏԱՒՈՐ, ա. գ.Վաճառական, սեղանաւոր:
ՍԱՊԱՏՈՂՆ, ա. Հղնի, քամակակոր:
ՍԱՊԷՍ, մ. Այսպէս, սոյնպէս, սայապէս:
ՍԱՊՈՆ, գ. Աճառ, օճառ:
ՍԱՌԵԼ (իմ), չբ. Սառչել, պաղանալ, պաղել:
ՍԱՌՆ, գ. Պաղ:
ՍԱՌՆԱԿԱՆ, ա. Սառնային:
ՍԱՌՆԱԿԵՐՊ, ա. Սառնանման, սառնաձեւ, սառնատեսակ:
ՍԱՌՆԱՀԱՐ, ա. Ցրտահար, ցրտաբեկ:
ՍԱՌՆԱՁԵՒ, ա. Սառնակերպ, սառնատեսակ:
ՍԱՌՆԱՄԱԾ, տե՛ս ՍԱՌՆԱՊԱՏ:
ՍԱՌՆԱՄԱՆԻՔ, գ. Սառն, սառոյց, պարզ, սառնացրտութիւն:
ՍԱՌՆԱՅԻՆ, ա. Սառնական, սառնակերպ, սառնատեսակ:
ՍԱՌՆԱՆՄԱՆ, ա. Սառնակերպ, սառնաձեւ, սառնատեսակ:
ՍԱՌՆԱՇԷՆ, ա. Սառնեղէն:
ՍԱՌՆԱՊԱՏ, ա. Սառնամած:
ՍԱՌՆԱՍԱՌՈՅՑ, ա. Սառնային, սառնական, սաստկասառոյց:
ՍԱՌՆԱՍԵՐ, ա. Սառնակերպ, սառնային:
ՍԱՌՆԱՍՈՅՑ, ա. Սառնասառոյց:
ՍԱՌՆԱՏԵՍԱԿ, ա. Սառնակերպ:
ՍԱՌՆԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Սառուցանել:
ՍԱՌՆԱՑՐՏՈՒԹԻՒՆ, գ. Սառնամանիք:
ՍԱՌՆԵՂԷՆ, ա. Սառնային, սառնաչէն:
ՍԱՌՆՈՒԹԻՒՆ, գ. Սառնացրտութիւն, սառնամանիք:
ՍԱՌՈՅՑ, ա. գ. 1. Սառուցեալ: 2. Պաղ, սառն:
ՍԱՌՈՒՄՆ, գ. Պաղումն:
ՍԱՌՈՒՑԱՆԵԼ, պբ. Սառնացուցանել:
ՍԱՌՉԵԼ (իմ), տե՛ս ՍԱՌԵԼ (իմ):

ՍԱՍԱՆԵԼ, նբ. Սասանեցուցանել, տատանել, շարժել, տարաբերել, դղրդել, խախտել:
ՍԱՍԱՆԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՍԱՍԱՆԵԼ:
- Ի ԲԱՑ ՍԱՍԱՆԵՑՈՒՑԱՆԵԼ. Թօթափել:
ՍԱՍԱՆՈՒԹԻՒՆ, ՍԱՍԱՆՈՒՄՆ, գ. 1. Տատանումն, երերումն: 2. Գետնաշարժ, շարժ: 3. փխբ. Խռովութիւն, յոյզք:
ՍԱՍՏ, գ. Ցասումն, սաստումն, յանդիմանութիւն, կշտամբանք, կշտամբութիւն, պատուհաս:
ՍԱՍՏԱԼԻՑ, ա. Ահաւոր, ահագին:
ՍԱՍՏԱՐԱՐ, ա. Սաստիչ, յանդիմանիչ:
ՍԱՍՏԵԼ, չբ. Յանդիմանել, կշտամբել, սպառնալ, ցասնուլ, պատուհասել:
ՍԱՍՏԻԿ, ա. մ. 1. Ուժգին, հզօր, ահագին, բուռն, դժնդակ, խիստ, յոյժ: 2. Մեծ, շատ, կարի:
ՍԱՍՏԻՉ, ա. Յանդիմանիչ, պատուհասիչ:
ՍԱՍՏԿԱԲԱՐ, մ. Սաստիկ, սաստկապէս, ուժեղապէս:
ՍԱՍՏԿԱԿՍԿԻԾ, ա. Դառնակսկիծ:
ՍԱՍՏԿԱՁԱՅՆ, ա. Մեծաձայն, ահագին:
ՍԱՍՏԿԱՅԱՂԹ, տե՛ս Քաջայաղթ:
ՍԱՍՏԿԱՆԱԼ, չբ. Զօրանալ, առաւելուլ, առատանալ, յորդել, զայրանալ:
ՍԱՍՏԿԱՆԴԱՄ, ա. Յաղթանդամ, ուժեղակ, ամեհի:
ՍԱՍՏԿԱՊԱՀԱՆՋ, ա. Ճշդապահանջ, անաչառ, անվրէպ:
ՍԱՍՏԿԱՊԷՍ, տե՛ս ՍԱՍՏԿԱԲԱՐ:
ՍԱՍՏԿԱՋԻՆՋ, ա. Բնաջինջ:
ՍԱՍՏԿԱՍԱՌՈՅՑ, տե՛ս ՍԱՌՆԱՍԱՌՈՅՑ:
ՍԱՍՏԿԱՏԵՍԱԿ, ա. Ահագին, ահաւոր:
ՍԱՍՏԿԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Զօրացուցանել, պնդել, ուժգնացուցանել:
ՍԱՍՏԿՈՒԹԻՒՆ, գ. 1. Ուժգնութիւն, ույժ, բռնութիւն, խստութիւն, սաստ: 2. Առաւելութիւն:
ՍԱՍՏՈՒՄՆ, գ. 1. Սաստ, յանդիմանութիւն: 2. Սաստկութիւն:
ՍԱՏԱԿ, ա. 1. Պարզ, զուտ, սոսկ, լոկ, համակ, ողջոյն: 2. Անչուք, անզարդ, միակերպ:
ՍԱՏԱԿԵԼ, նբ. 1. Ցատակել, ապականել, բնաջինջ առնել: 2. Սպանանել, կոտորել, կորուսանել:
ՍԱՏԱԿԻՉ, ա. գ. Կորուսիչ, մահացուցիչ:
ՍԱՏԱԿՈՒՄՆ, գ. Կոտորած, մահ, աւեր:
ՍԱՏԱԿՉԱԿԱՆ, ա. Ապականիչ, մահացուցիչ, սպանողական:
ՍԱՏԱՆ, ա. գ. 1. Հակառակ, հակառակորդ, մատնիչ, չարախօս: 2. Սատանայ:
ՍԱՏԱՆԱՅ, գ. 1. Սատան, հակառակորդ, դիմակաց: 2. (կրօն.) Սաղայէլ:
ՍԱՏԱՆԱՅԱԶԳԵԱՑ, տե՛ս ՍԱՏԱՆԱՅԱԿԻՐ:
ՍԱՏԱՆԱՅԱՁԷՆ, ա. Դիւազգեաց:
ՍԱՏԱՆԱՅԱԿԱՆ, ա. Դիւական, սատանայաւոր:
ՍԱՏԱՆԱՅԱԿԻՐ, ա. 1. Սատանայազգեաց, սատանայոտ, դիւազգեաց, այսահար: 2. Սատանայական:
ՍԱՏԱՆԱՅԱԿՈՒՐ, ա. Սատանայակիր:
ՍԱՏԱՆԱՅԱՒՈՐ, տե՛ս ՍԱՏԱՆԱՅԱԿԱՆ:
ՍԱՏԱՆԱՅՈՏ, տե՛ս ՍԱՏԱՆԱՅԱԿԻՐ:
ՍԱՏԱՆԱՅՈՒԹԻՒՆ, գ. Բանսարկութիւն, չարութիւն:
ՍԱՏԱՐ, ա. գ. 1. Գործօնեայ, գործաւոր, մշակ: 2. Տարազագործ, ոստայնանկ, սարագործ: 3. Ձեռնտու, գործակից, նպաստամատոյց: 4. Նպաստ, ձեռնտուութիւն: 5. Պատճառ, առիթ:
ՍԱՏԱՐՈՒԹԻՒՆ, գ. 1. Ձեռնտուութիւն, օգնականութիւն, նպաստ, գործակցութիւն: 2. Գործաւորութիւն, աշխատութիւն: 3. Տարազագործութիւն:
ՍԱՏԵՐ, գ. Զորեքդրամեան, կարբանոց:
ՍԱՏՐԱՊ, ՍԱՏՐԱՊԵՏ, գ. Նախարար, նախարարապետ, կուսակալ, բդեշխ:
ՍԱՏՐԱՊՈՒԹԻՒՆ, գ. Նախարարութիւն,

կուսակալություն, բդեշխություն:
ՍԱՐ, գ. 1. Ծագ, ծայր, կատար, գլուխ, գագաթն, լեռն (սուր գագաթով): 2. Բարձրավանդակ, սարավանդ: 3. Գահ, դար, ժայռ:
– ՍԱՐՔ. Կազմած, կահ, սպաս:
ՍԱՐԱԲԱՐՁՐ, ա. Լեռնաբերձ, բարձրագագաթն:
ՍԱՐԱԿ, տե՛ս ԲԼՐԱԿ:
ՍԱՐԱՀԱՐԹ, ա. Հովտաձև:
ՍԱՐԱՆԱԼ, չբ. Բարձրամտել, դժվարել, զայրանալ, գչարել:
ՍԱՐԱՊԵՏ, գ. Գլխավոր, իշխան:
ՍԱՐԱՍ, գ. 1. Ձև, կերպ, կերպարան, օրինակ, եղանակ, նմանություն, տիպ: 2. Ունակություն, սովորություն:
ՍԱՐԱՍԵԼ (իմ), չբ. Զգածել, համակել:
ՍԱՐԱՒԱՆԴ, ՍԱՐԱՒԱՆԴԱԿ, գ. ա. 1. Դարավանդ, գահավանդ, բարձրավանդակ: 2. (աշխգր.) Պարանոց:
ՍԱՐԴ, տե՛ս ՄԱՅՐ[3]:
ՍԱՐԴԱՆԿՈՒ, ա. Բարակաման:
ՍԱՐԴԻ, ՍԱՐԴԻԱՏՈՒՆԿ, տե՛ս ԴԱՓՆԻ:
ՍԱՐԴԻՈՍՏԱՅՆ, գ. Ոստայն:
ՍԱՐԻՔ, գ. Ջուան, տոռն, շղթայ, կապ, կապանք:
ՍԱՐԿԱՐԱՆ, գ. Նուիրակ, նուիրանոց:
ՍԱՐԿԱՒԱԳ, գ. 1. Սպասավոր, ծառայ: 2. (եկեղց.) Պաշտոնեայ:
ՍԱՐԿԱՒԱԳԱԿԻՑ, գ. Պաշտոնակից, ծառայակից:
ՍԱՐԿԱՒԱԳԱՆՈՑ, գ. 1. Սարկավագատուն, սարկավագարան: 2. Սպասատուն:
ՍԱՐԿԱՒԱԳԱՊԵՏ, գ. (եկեղց.) Արքիդիակոն:
ՍԱՐԿԱՒԱԳԱՏՈՒՆ, ՍԱՐԿԱՒԱԳԱՐԱՆ, տե՛ս ՍԱՐԿԱՒԱԳԱՆՈՑ:
ՍԱՐԿԱՒԱԳԵԼ, նբ. Պաշտել, սպասավորել, արբանեկել:
ՍԱՐԿԱՒԱԳՈՒԹԻՒՆ, գ. Պաշտոն, սպասավորություն:
ՍԱՐՈՅ, գ. (բսբ.) Նոճ, նոճի:
ՍԱՐՈՏ, ա. Լեռնային:
ՍԱՐՍԱՏԵԼ (իմ), չբ. Զորանալ, ցամաքել:
ՍԱՐՍԱՏԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Զորացուցանել, ցամաքեցուցանել:
ՍԱՐՍԱՓ, գ. Սոսկումն, սարսումն:
ՍԱՐՍԱՓԱԾԻՆ, ա. Ահավոր:
ՍԱՐՍԱՓԵԼ, չբ. Սարսել, սոսկալ, դողալ, զարհուրել, քստմնել, խռովել:
ՍԱՐՍԱՓԵԼԻ, ա. Ահարկու, ահագին, սոսկալի, սարսելի, քստմնելի:
ՍԱՐՍԱՓԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Դողացուցանել, սարսեցուցանել, զարհուրեցուցանել, սոսկացուցանել, պակուցանել:
ՍԱՐՍԱՓԻՒՆ, ՍԱՐՍԱՓՈՒՄՆ, գ. Սարսափ, դողումն, սարսումն, սոսկումն, քստմնություն, սարսուռ, ապշություն:
ՍԱՐՍԵԼ, տե՛ս ՍԱՐՍԱՓԵԼ:
ՍԱՐՍԵԼԻ, տե՛ս ՍԱՐՍԱՓԵԼԻ:
ՍԱՐՍԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՍԱՐՍԱՓԵՑՈՒՑԱՆԵԼ:
ՍԱՐՍՈՒՄՆ, գ. Սարսափումն, դողումն:
ՍԱՐՍՈՒՌ, գ. Դողումն, սոսկումն, սարսումն, սարսափումն, քստմնումն:
ՍԱՐՍՌԱԳԻՆ, տե՛ս ՍԱՐՍՌԱԼԻՑ:
ՍԱՐՍՌԱԼ, չբ. Ջոփալ, դողալ, գնդալ, սարսել, սարսափել:
ՍԱՐՍՌԱԼԻ, ա. 1. Սարսռելի, սարսռալից, քստմնելի, սոսկալի, ահագին: 2. Ցրտագոյն:
ՍԱՐՍՌԱԼԻՑ, ա. Սարսռագին, սարսռալի:
ՍԱՐՍՌԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Դողացուցանել:
ՍԱՐՍՌԵԼ (իմ), տե՛ս ՍԱՐՍՌԱԼ:
ՍԱՐՍՌԵԼԻ, տե՛ս ՍԱՐՍՌԱԼԻ:
ՍԱՐՏՆՈՒԼ, չբ. 1. Հարթնուլ, շրտնուլ, խրտնուլ, խռովել: 2. Օցտել, մեկնել, զատչել:
ՍԱՐՏՈՒՑԱՆԵԼ, պբ. Խրտուցանել, ընդոստուցանել:
ՍԱՐՏՈՒՑԻՉ, ա. Ընդոստուցիչ, զարթուցիչ:

ՍԱԽԱՌՆԱՆԱԼ, տե՛ս ՍԱԽԱՌՆԵԼ (իմ):
ՍԱԽԱՌՆԱՊԱՏ, ա. Թևատարած, թևաաքօղեալ:
ՍԱԽԱՌՆԵԼ (իմ), չբ. Սաւառնանալ, թևապարել, թևակոխել, սլանալ:
ՍԱԽԱՌՆՈՒՄՆ, գ. Սլացումն:
ՍԱՓԱՍՈՒՏ, ա. Սուտմուտ, ստապաճոյճ:
ՍԱՓՈՐ, գ. 1. Կուժ, կաՀոյր, խաւեակ: 2. Դորակ:
ՍԱՓՐԵԼ, նբ. Գերծուլ, կտրել, յապաւել, վիրալ:
ՍԱՓՐԻՉ, գ. Վարսավիրայ:
ՍԱՔԱՓԱԹԱՆՔ, գ. Զրպարտութիւն, մատնութիւն:
ՍԱՔԹԱՔԵԼ, չբ. Սայթաքել:
ՍԱՔՐԵԼ, չբ. Ղօղել, թաքչել, սալարել, ծածկել, պատսպարել, ապաստան լինել:
ՍԳԱՉԳԱԾ, ա. Սգապատ, տխրական:
ՍԳԱԼ, նբ. չբ. 1. Սուգ առնուլ՝ ունել, կոծել, ողբալ, աշխարել: 2. Տխրել, տրտմել, վշտանալ:
ՍԳԱԿԻՑ ԼԻՆԵԼ, ՍԳԱԿՑԵԼ, չբ. Ողբակցել:
ՍԳԱՊԱՏ, ա. Սգաւոր, սգազգած:
ՍԳԱՒՈՐ, ա. 1. Սգազգած, սգապատ: 2. Սգաւորական, տրտմական:
ՍԳԱՒՈՐԱԿԱՆ, տե՛ս ՍԳԱՒՈՐ (2):
ՍԳԱՒՈՐԵԼ (իմ), չբ. Սուգ առնուլ, սգալ:
ՍԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ, գ. Տխրութիւն:
ՍԵԱՒ, ա. 1. Սեաւական, արջնագոյն: 2. գ. Սևադեղ, սևակ, մելան:
ՍԵԱՒԱԿԱՆ, տե՛ս ՍԵԱՒ (1):
ՍԵԹԵՒԵԹԵԼ, նբ. Պաճուճել, պճնել, արուեստակել, Հայթայթել, յարդարել, յերիւրել:
ՍԵՂԱՆ, գ. 1. Կերակուր, Հացկերոյթ, կոչունք, բազմական: 2. Բագին, զոՀանոց, զոՀարան: 3. Պատարագարան, խորան:
– ՍԵՂԱՆ ՈՒՂՂԵԼ. Բազմական առնել՝ արկանել:
ՍԵՂԱՆԱԲՈՅԾ, ա. Պատառաբոյծ, պորտաբոյծ:
ՍԵՂԱՆԱՁԵՐԾ, տե՛ս ՍԵՂԱՆԱԿԱՊՈՒՏ:
ՍԵՂԱՆԱԿԱՁՄ, ա. Սեղանայարդար, սեղանայօրէն:
ՍԵՂԱՆԱԿԱՊՈՒՏ, ա. Սեղանազերծ, սեղանակողոպուտ, տաճարակապուտ, տաճարակողոպուտ:
ՍԵՂԱՆԱԿԻՑ, ա. Հացակից, ըմպակից, խմբակից, բարձակից, բազմականակից, սեղանորդ:
ՍԵՂԱՆԱԿՈՂՈՊՈՒՏ, տե՛ս ՍԵՂԱՆԱԿԱՊՈՒՏ:
ՍԵՂԱՆԱԿՈՂՈՊՏՈՒԹԻՒՆ, գ. ՄեՀենազերծութիւն:
ՍԵՂԱՆԱԿՑՈՒԹԻՒՆ, գ. Հաղորդակցութիւն:
ՍԵՂԱՆԱՅԱՐԴԱՐ, ՍԵՂԱՆԱՅՕՐԷՆ, տե՛ս ՍԵՂԱՆԱԿԱՁՄ:
ՍԵՂԱՆԱՆԵՆԳ, ա. Սեղանակապուտ:
ՍԵՂԱՆԱՒՈՐ, գ. Հատավաճառ, լումայափոխ, լումափոխ:
ՍԵՂԱՆԱՒՈՐԵԼ, նբ. Մատակարարել:
ՍԵՂԱՆՈՐԴ, տե՛ս ՍԵՂԱՆԱԿԻՑ:
ՍԵՂԵԽ, ա. գ. Հոմանի, տափող, չնացող, չուն:
ՍԵՂՄ, ա. Հոծ, խիտ, ամփոփ, կուռ, սերտ, Հաստ, Հաստատուն:
ՍԵՂՄԱՆԱԼ, չբ. Սերտանալ:
ՍԵՂՄԵԼ, նբ. Զսպել, պնդել, խնուլ, ամրացուցանել, մածուցանել, զանգել:
ՍԵՂՄՈՒԹԻՒՆ, գ. Հոծութիւն, խտութիւն, սերտութիւն, Հաստատութիւն, պնդութիւն:
ՍԵՄԱԳԻՐ, ՍԵՄԻԱՐ, ա. գ. Նշանագիր (արագագիր գրիչ):
ՍԵՆԵԱԿ, գ. 1. Օթանոց, օթարան, խուց: 2. Սրսկապան: 3. Կանանոց: 4. Շտեմարան, մթերանոց, գանձարան: 5. Հարսն, Հարճ:
ՍԵՆԵԿԱՊԱՆ, գ. Սենեկապետ, մարմնապաՀ, թիկնապաՀ:
ՍԵՆԵԿԱՊԵՏ, տե՛ս ՍԵՆԵԿԱՊԱՆ:

ՍԵՆԵԿԻԿ, գ. Խուց, խուղ, խրճիթ:
ՍԵՊ, գ. Ժայռ, քարաժայռ:
ՍԵՊԵԱՆ, տե՛ս ՍԻՊԷ:
ՍԵՊՀԱԿԱՆ, ա. 1. Առանձնական, իւրական, անձնական, յատուկ: 2. Բուն, բնիկ, հայրենի: 3. Ընտիր, իսկագոյն:
ՍԵՊՀԱԿԱՆԱԲԱՐ, մ. Տիրապէս:
ՍԵՊՀԱԿԱՆԱԳՈՅՆ, ա. Հարազատագոյն:
ՍԵՊՀԱԿԱՆԱՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՍԵՊՀԱԿԱՆԵՑՈՒՑԱՆԵԼ:
ՍԵՊՀԱԿԱՆԵԼ, նբ. Սեպհականեցուցանել, իւրացուցանել, ստանալ, ժառանգել, ժառանգեցուցանել:
ՍԵՊՀԱԿԱՆԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՍԵՊՀԱԿԱՆԵԼ:
ՍԵՊՀԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. 1. Յատկութիւն: 2. Ժառանգութիւն (բնիկ), պայազատութիւն, ազատութիւն:
ՍԵՊՈՒՀ, գ. ա. Ասպետ, պայազատ, ազատ:
ՍԵՌ, գ. 1. Ազգ, ցեղ, զարմ, տոհմ: 2. Տեսակ:
ՍԵՌԱԲԱՐ, մ. Սեռականապէս, ընդհանրականապէս:
ՍԵՌԱԿԱՆ, ա. Հանրական, ընդհանուր, ընդհանրական:
ՍԵՌԱԿԱՆԱԳՈՅՆ, ա. Ընդհանրականագոյն, համատարած, լայնածաւալ:
ՍԵՌԱԿԱՆԱՊԷՍ, տե՛ս ՍԵՌԱԲԱՐ:
ՍԵՌԱԿՈՏՈՐ, ա. Ազգէ ազգէ, պէսպէս:
ՍԵՌԵԼ, իլ, չբ. Պնդել, ամրանալ:
ՍԵՌՆ[1], գ. Սունակ:
ՍԵՌՆ[2], ա. 1. Հարազատ, անխառն, պարզ, յստակ, զուտ, անապակ, ջինջ: 2. Սերտ, հօծեալ:
ՍԵՌՆՈՒԹԻՒՆ, գ. Յստակութիւն:
ՍԵՌՈՒԹԻՒՆ, գ. Ազգ:
ՍԵՐ, գ. Սեռ, սերունդ, զարմ, տոհմ, ցեղ, ազգ:
ՍԵՐԱՆԱԼ, տե՛ս ՍԵՐԵԼ[2](իմ):
ՍԵՐԿԵԱՆ, ա. 1. Այսօրեան: 2. մ. գ. Այսօր:
ՍԵՐՄԱՆԱԿԱՆ, տե՛ս ՍԵՐՄՆԱԿԱՆ:
ՍԵՐՄԱՆԱՀԱՆ, ա. գ. Սերմանացան, սերմանիչ:
ՍԵՐՄԱՆԱՀԱՆՈՒԹԻՒՆ, գ. Ցան:
ՍԵՐՄԱՆԱՄԱՏՈՅՑ, ա. Սերմանաւոր:
ՍԵՐՄԱՆԱՆԱԼ, չբ. Սերմնանալ:
ՍԵՐՄԱՆԱՐԿՈՒ, ա. Յղացուցիչ:
ՍԵՐՄԱՆԱՑԱՆ, տե՛ս ՍԵՐՄԱՆԱՀԱՆ:
ՍԵՐՄԱՆԱՑՈՒ, ա. Սերմանելի:
ՍԵՐՄԱՆԱՒՈՐ, ա. Սերմանամատոյց:
ՍԵՐՄԱՆԱՔԱՂ, ա. փխբ. Շաղակրատ, ունայնաբան, բանորսակ, պարսաւադէտ, բանսարկու:
ՍԵՐՄԱՆԵԼ, նբ. 1. Սերմնարկել, ցանել: 2. Տարածանել, յարուցանել: 3. (յունական ոճով) Սերել, ծնանել:
ՍԵՐՄԱՆԵԼԻ, ա. Սերմանացու:
ՍԵՐՄԱՆԻՋ, տե՛ս ՍԵՐՄԱՆԱՀԱՆ:
ՍԵՐՄՆ, գ. 1. Ունդ, հունդ: 2. (կենսբ.) Սաղմն, բեղուն: 3. Ցանումն: 4. փխբ. Սերունդ, ծնունդ, զաւակ:
- ՍԵՐՄՆ ԱՌՆՈՒԼ. Յղանալ:
ՍԵՐՄՆԱԲԱՆԵԼ, նբ. (յունական ոճով) Շաղփաղփել, չաղակրատել, բամբասել:
ՍԵՐՄՆԱԿԱԹ, ա. գ. Մշտակաթ, կաթոտ:
ՍԵՐՄՆԱԿԱԹՈՒԹԻՒՆ, գ. Սերմնահեղութիւն, սերմներթութիւն:
ՍԵՐՄՆԱԿԱՆ, ա. Սերմանական:
ՍԵՐՄՆԱՀԵՂՈՒԹԻՒՆ, տե՛ս ՍԵՐՄՆԱԿԱԹՈՒԹԻՒՆ:
ՍԵՐՄՆԱՆԱԼ, տե՛ս ՍԵՐՄԱՆԱՆԱԼ:
ՍԵՐՄՆԱՌԵԼ (իմ), չբ. Սերմն առնուլ, յղանալ:
ՍԵՐՄՆԱՌՈՒԹԻՒՆ, գ. Սաղմնառութիւն, յղութիւն:
ՍԵՐՄՆԱՐԿԵԼ, տե՛ս ՍԵՐՄԱՆԵԼ:
ՍԵՐՄՆԱՐԿՈՒԹԻՒՆ, գ. Յղութիւն:
ՍԵՐՄՆԵՐԹՈՒԹԻՒՆ, տե՛ս ՍԵՐՄՆԱԿԱԹՈՒԹԻՒՆ:
ՍԵՐՄՆԸՆԿԱԼ, ա. Յղացեալ:
ՍԵՐՈՒՄՆ, տե՛ս ՍԵՐՈՒՆԴ:
ՍԵՐՈՒՆ, ա. Բեղուն, բեղնաւոր:

ՍԵՐՈՒՆԴ, գ. 1. Սերումն: 2. Սեր, ազգ, ծնունդ, զաւակ:
ՍԵՐՏ, ա. 1. Պինդ, ամուր, կարծր, հաստատուն, անխզելի, հոծ, խիտ, ճիգ, անխախուտ: 2. Ստոյգ: 3. Մտերիմ, հարազատ, սեպհական: 4. մ. տե՛ս ՍԵՐՏԻՒ:
ՍԵՐՏԱՆԱԼ, տե՛ս ՍԵՐՏԵԼ[2] (իմ):
ՍԵՐՏԵԼ[1], նբ. Պնդել, հաստատել, ամրացուցանել, զետեղել:
ՍԵՐՏԵԼ[2] (իմ), չբ. Սերտանալ, ամրանալ, արմատանալ, սեղմանալ:
ՍԵՐՏԻՒ, մ. Սերտ, պնդապէս, ստուգիւ, տիրապէս, ամենայնիւ:
ՍԵՐՏՈՒԹԻՒՆ, գ. Պնդութիւն, հաստատութիւն:
ՍԵՒԱԳԻՐ, տե՛ս ՍԵՒԱԴԵՂ:
ՍԵՒԱԳՈՅՆ, ա. Սեւաթոյր, սեւաներկ:
ՍԵՒԱԳՈՒՆԴ, ա. գ. Սեւերամ:
ՍԵՒԱԴԵՂ, գ. Սեաւ, սեւակ, սեւագիր, մելան, թանաք:
ՍԵՒԱԶԳԱԾ, ՍԵՒԱԶԳԵՍՏ, ա. Արջնազգեստ, փխբ. սգաւոր, տխուր:
ՍԵՒԱԹՈՅՐ, ա. Սեւագոյն, թխագոյն, սեւաներկ:
ՍԵՒԱԿ, տե՛ս ՍԵՒԱԴԵՂ:
ՍԵՒԱՆԱԼ, չբ. Թխանալ, մթագնել:
ՍԵՒԱՆԵՐԿ, ա. Սեւագոյն, սեւաթոյր:
ՍԵՒԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Սեւել, թխացուցանել:
ՍԵՒԵԼ, նբ. Սեւացուցանել:
ՍԵՒԵՌ, գ. Բեւեռ, հեղոյս:
ՍԵՒԵՌԱԳՈՅՆ, ա. Պնդագոյն, սերտ, հաստատուն:
ՍԵՒԵՌԱԿԱՊ, ա. Երկաթագամ, պընդակապ:
ՍԵՒԵՌԱՊԷՍ, մ. Պնդագոյնս:
ՍԵՒԵՌԵԼ, նբ. Բեւեռել, հեղուսել, մածուցանել, պնդել, հաստատել, զօդել, յարել:
ՍԵՒԵՐԱՄ, տե՛ս ՍԵՒԱԳՈՒՆԴ:
ՍԵՒՈՒԹԻՒՆ, գ. Թխութիւն:
ՍԵՓԱԿԱՆ, տե՛ս ՍԵՊՀԱԿԱՆ:
ՍԷԳ, ա. 1. Ամբարտաւան, հպարտ, խրոխտ: 2. Սնապարծ, աղաջուր: 3. Պերճ, գեղապանծ:
– ՍԷԳ ԱՌՆՈՒԼ. Սիգալ:
ՍԷՐ, գ. 1. Ցանկութիւն, յօժարութիւն, հաճութիւն, բարեկամութիւն, շնորհ, բարերարութիւն, գութ, գգուանք: 2. Տարփումն, տռփանք:
ՍԷՐԱՐՓԻ, տե՛ս ՍՐՈՎԲԷ:
ՍԹԱՓ, ա. Զգաստ, արթուն, ժիր, փոյթ, զուարթ:
ՍԹԱՓԿԱՆ, ա. Զգաստական, զուարթական:
ՍԹԱՓԱՆՔ, գ. 1. Զուարթութիւն, սփոփանք: 2. Արթնութիւն:
ՍԹԱՓԱՌՈՒՄՆ, գ. Թափառումն:
ՍԹԱՓԵԼ[1], նբ. Սթափեցուցանել, զգաստացուցանել, զարթուցանել, զուարթացուցանել, սփոփել:
ՍԹԱՓԵԼ[2] (իմ), չբ. 1. Զգաստանալ, զարթնուլ, զուարթանալ, խելաբերել, ուշաբերել: 2. Զբօսնուլ, սփոփել, ոգի առնուլ:
ՍԹԱՓԵՑՈՒՑԱՆԵԼ, տե՛ս ՍԹԱՓԵԼ[1]:
ՍԹԱՓՈՒԹԻՒՆ, գ. Սթափումն:
ՍԹԱՓՈՒՄՆ, տե՛ս ՍԹԱՓՈՒԹԻՒՆ:
ՍԻԳԱԼ, չբ. 1. Պերճանալ, հպարտանալ, յոխորտալ, փքանալ, պարծել, նազել: 2. Ջեղխել, մեղկանալ, կնատել, իգանալ:
ՍԻԳԱՆՔ, գ. Շուք, փառաւորութիւն:
ՍԻԳԱՒՈՐ, ա. Սէգ, խրոխտ:
ՍԻԳԱՔԱՅԼ, ա. Սիգողաճեմ:
ՍԻԳՈՂԱՃԵՄ, տե՛ս ՍԻԳԱՔԱՅԼ:
ՍԻԳՈՒԹԻՒՆ, գ. 1. Պերճութիւն, չքեղութիւն, հպարտութիւն, խրոխտումն: 2. Ջեղխութիւն, կնատութիւն, թուլամորթութիւն, փափկասիրութիւն:
ՍԻԿ, գ. Մօր, գայռ, տիղմ, ցեխ:
ՍԻԿԱՐԵԱՆ, ա. Սրիկայ, աւազակ, մարդասպան:
ՍԻՂԻԳՆ, գ. Նաշիհ:
ՍԻՂ ՂՈԲԱՅ, ՍԻՂՈԲԱՅ, տե՛ս ՎԱՆԳ[1]:

ՍԻՆ, ա. Սնոտի, ունայն, ընդունայն, զուր, դատարկ, նանիր:
ՍԻՆԵԱԼ, ա. Ոսին, Թափուր:
ՍԻՆԼՔՈՐ, ա. Անաւագ:
ՍԻՆՁ, տե՛ս ՍՈՍԻՆՁ:
ՍԻՊԷ, գ. (կենդբ.) Սեպեան, սպին:
ՍԻՐ, գ. Անձրև:
ՍԻՐԱԲԱՆ, տե՛ս ԲԱՆԱՍԷՐ:
ՍԻՐԱԲԱՐ, մ. Սիրողաբար, սիրողապէս, սիրելաբար, սիրելապէս:
ՍԻՐԱԼԻ, տե՛ս ՍԻՐԱԼԻՐ:
ՍԻՐԱԼԻՐ, ա. Սիրալի, գորովալիր, խանդակաթ, բարեգութ:
ՍԻՐԱԿԱՄՈՒԹԻՒՆ, գ. Մարդասիրութիւն, բարեխոհութիւն, բարեսիրութիւն:
ՍԻՐԱԿԱՆ, ա. Սիրողական, սիրալիր, քաղցր:
ՍԻՐԱՀԱՐՈՒՍՏ, ա. Սիրալիր, սիրապատար:
ՍԻՐԱՄԱՐԳ, գ. (կենդբ.) Պա(ր)սկական հաւ:
ՍԻՐԱՅԵՂՑ, ա. Սիրալիր, սիրահարուստ:
ՍԻՐԱՇԱՐԺ, ա. Անձրևաբեր:
ՍԻՐԱՊԱՏԱՐ, ա. Սիրալիր, սիրահարուստ, սիրայեղց:
ՍԻՐԱՏԵՆՁԱԿ, տե՛ս ՍԻՐԱՓԱՓԱԳ:
ՍԻՐԱՓԱՓԱԳ, ա. Սիրատենչակ:
ՍԻՐԵԼ, նբ. չբ. Հաճել, ախորժել, բարեկամանալ, յարել, ընտրել, գգուել, գթասիրել:
ՍԻՐԵԼԱԲԱՐ, տե՛ս ՍԻՐԱԲԱՐ:
ՍԻՐԵԼԱԿԱՆ, ա. 1. Բարեկամական, սիրական, հաճոյական: 2. Տափական:
ՍԻՐԵԼԱՊԷՍ, տե՛ս ՍԻՐԱԲԱՐ:
ՍԻՐԵԼԻ, ա. գ. 1. Սիրեցեալ, բարեկամ: 2. Սիրող, սիրիչ:
ՍԻՐԵԼՈՒԹԻՒՆ, գ. Սէր, սիրողութիւն, սիրումն, ընտանութիւն, բարեկամութիւն:
ՍԻՐԸՆԹԱՑ, ա. Համակամ:
ՍԻՐԻՉ, ՍԻՐՈՂ, ա. Սիրելի:
ՍԻՐՈՂԱԲԱՐ, տե՛ս ՍԻՐԱԲԱՐ:
ՍԻՐՈՂԱԿԱՆ, ՍԻՐՈՂԱՅԻՆ, տե՛ս ՍԻՐԱԿԱՆ:
ՍԻՐՈՂԱՊԷՍ, տե՛ս ՍԻՐԱԲԱՐ:
ՍԻՐՈՂՈՒԹԻՒՆ, ՍԻՐՈՒՄՆ, տե՛ս ՍԻՐԵԼՈՒԹԻՒՆ:
ՍԻՐՈՒՆ, ա. 1. Սիրելի, սիրեցեալ: 2. Ընդունելի, հաճոյական: 3. Սիրող, բարեսէր, ուսումնասէր:
ՍԻՐՏ, գ. լայնաբար՝ Յօժարութիւն, ոգի, կամք, միտք, խորհուրդ, ցանկութիւն, տրամադրութիւն, քաջութիւն են:
– ՍՐՏԻ ՄՏՕՔ, Ի ՍՐՏԷ, Ի ԲՈԼՈՐ ՍՐՏԷ, ԲՈԼՈՐՈՎ ՍՐՏԻՒ, մ. Սերտիւ, մտադիւր, սրտագին:
ՍԻՒՆ, գ. Սիւնակ:
ՍԻՒՆԱԿ, տե՛ս ՍԻՒՆ:
ՍԻՒՆԱՁԵՒ, ա. Սիւնանման, սիւնատեսիլ:
ՍԻՒՆԱՆՄԱՆ, տե՛ս ՍԻՒՆԱՁԵՒ:
ՍԻՒՆԱՏԵՍԻԼ, տե՛ս ՍԻՒՆԱՁԵՒ:
ՍԻՒՆՀՈԴՈՍԱԿԱՆ, ա. Ժողովական:
ՍԻՔ, գ. Շունչ, հողմ, քամի, սղոխ:
ՍԼԱՆԱԼ, չբ. Սրանալ, սուրալ, խոյանալ:
ՍԼԱՑՈՒԹԻՒՆ, գ. Սլացումն, սլացք, Թռիչք:
ՍԼԱՑՈՒՄՆ, ՍԼԱՑՔ, տե՛ս ՍԼԱՑՈՒԹԻՒՆ:
ՍԼԱՔ, գ. Սայր (նետի՝ նիզակի են սուր ծայրը):
ՍԽԱԼ, գ. 1. Վրիպումն, սխալանք: 2. ա. Վրիպական, սխալական, սխալոտ, անհաստատ:
ՍԽԱԼԱԿ, ա. Գայթոտ, արբեալ:
ՍԽԱԼԱԿԱՆ, տե՛ս ՍԽԱԼ (2):
ՍԽԱԼԱԿԵԼ (իմ), չբ. Գինեհարել, դանդաչել, գթել:
ՍԽԱԼԱԿՈՒԹԻՒՆ, ՍԽԱԼԱԿՈՒՄՆ, գ. Արբեցութիւն, դանդաչումն:
ՍԽԱԼԱՆՔ, գ. Սխալ, սխալութիւն, սխալումն, վրիպումն, յանցանք:
ՍԽԱԼԱԻՈՐ, տե՛ս ՍԽԱԼԱԿԱՆ:
ՍԽԱԼԵԼ (իմ), չբ. Վրիպել, մոլորել, խո-

տորել, յանցանել, գայթել, գլթել, ի դերև ելանել:
ՍԽԱԼԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Վրիպեցուցանել, մոլորեցուցանել:
ՍԽԱԼՈՏ, տե՛ս ՍԽԱԼԱԿԱՆ:
ՍԽԱԼՈՒԹԻՒՆ, ՍԽԱԼՈՒՄՆ, տե՛ս ՍԽԱԼԱՆՔ:
ՍԽՐԱԳՈՐԾ, ա. Հրաշագործ, սքանչելագործ, զարմանագործ, հիացուցանող:
ՍԽՐԱԼԻ, ա. Սքանչելի, հրաշալի, հիանալի, սխրասարաս:
ՍԽՐԱՆԱԼ, չբ. Սքանչանալ, հրաշանալ, հիանալ, զարմանալ, պակնուլ:
ՍԽՐԱՍԱՐԱՍ, տե՛ս ՍԽՐԱԼԻ:
ՍԽՐԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Հիացուցանել, զարմացուցանել:
ՍԽՐԱՑՈՒՑԻՉ, ա. Հիացուցանող:
ՍԿԱԽԱՌՆ, ա. Տրմախառն, տրմուտ:
– ՍԿԱԽԱՌՆ ԽՈՆԱՒՈՒԹԻՒՆ. Ճահիճք:
ՍԿԱՀ, գ. Կիփառ, խառնարան, խառնելիք:
ՍԿԱՀԱՋԵԻ, տե՛ս ԹԱԿՈՅԿ (2):
ՍԿԱՅ կամ ՀՍԿԱՅ, ա. գ. Քաջ:
ՍԿԱՅԱԳՈՐԾ, ա. Հոյակապ, մեծագործ, ամրակառոյց:
ՍԿԱՅԱԶՕՐ, ա. Քաջայաղթ:
ՍԿԱՆԱԼ, չբ. Տրմանալ:
ՍԿԱՆՋՆԵԼ, տե՛ս ՇԱԿԱՆՋԵԼ:
ՍԿԱՒԱՌԱԿ, գ. Ափսէ, պնակ, տաշտ, դաշխուրան, սկուտեղ, գաւաթ, ճաշակ, կոնք:
ՍԿԵԼ, չբ. 1. Հսկել, տքնել, արթուն կալ՝ լինել: 2. Ուշ ունել:
ՍԿԵՍՈՒՐ, գ. Կեսուր:
ՍԿԵՍՐԱՅՐ, գ. Սկեսրեայ:
ՍԿԵՍՐԵԱՅ, տե՛ս ՍԿԵՍՐԱՅՐ:
ՍԿԶԲՆԱԲԱՆԵԼ, նբ. Սկզբնաբան լինել:
ՍԿԶԲՆԱԲԱՆ ԼԻՆԵԼ, տե՛ս ՍԿԶԲՆԱԲԱՆԵԼ:
ՍԿԶԲՆԱԲԱՐ, մ. Յառաջնապէս:
ՍԿԶԲՆԱԳՈՅՆ, ա. Հնագոյն, կանխագոյն, նախկնագոյն, գլխաւորագոյն:
ՍԿԶԲՆԱԳՈՒՆՈՒԹԻՒՆ, գ. Նախկնութիւն, հնութիւն, յառաջագոյութիւն:
ՍԿԶԲՆԱԹԻՒ, ա. Նախաթիւ:
ՍԿԶԲՆԱԾԻՆ, ա. 1. Նախածին, նախկին, առաջին: 2. Անդրանիկ: 3. Նախածնող, սկզբնապատճառ:
ՍԿԶԲՆԱԿԱՆ, ա. Նախնական, նախկին, առաջին, գլխաւոր, բուն:
– ՍԿԶԲՆԱԿԱՆՆ, գ. Գլուխ, պետ, սկիզբն:
ՍԿԶԲՆԱԿԱՆԱԳՈՅՆ, ա. Գերագոյն, ծայրագոյն:
ՍԿԶԲՆԱԿԱՆԱՊԷՍ, մ. Գլխաւորապէս, իշխանաբար, տիրապէս:
ՍԿԶԲՆԱՀԱՅՐ, գ. 1. Սկզբնահաւ, հաւասկիզբն: 2. նման. Նախաշաւիղ, սկզբնապատճառ:
ՍԿԶԲՆԱՀԱՒ, տե՛ս ՍԿԶԲՆԱՀԱՅՐ:
ՍԿԶԲՆԱՋԻՐ, ա. Նախապարգև, առաջնապարգև, յառաջապարգև:
ՍԿԶԲՆԱՄԱՅՐ, գ. 1. Նախամայր: 2. լայնաբար՝ Նախաշաւիղ:
ՍԿԶԲՆԱՄԱՐԴ, գ. Նախամարդ:
ՍԿԶԲՆԱՄԵԾԱՐ, ա. Նախամեծար, նախապատիւ:
ՍԿԶԲՆԱՆԱԼ, չբ. Սկզբնաւորել, սկսանել:
ՍԿԶԲՆԱՇԱՒԻՂ, տե՛ս ՆԱԽԱՇԱՒԻՂ:
ՄԿԶԲՆԱՋԱՐ, ա. Չարասկիզբն, նախաչար:
ՍԿԶԲՆԱՊԱՏԻՒ, ա. Նախապատիւ, նախամեծար:
ՍԿԶԲՆԱՊԱՏՃԱՌ, գ. Նախածնող:
ՍԿԶԲՆԱՊԵՏԱԳՈՅՆ, ա. մ. Նախկնագոյն, վերագոյն:
ՍԿԶԲՆԱՊԵՏԱՊԷՍ, մ. Կանխագոյն, գլխաւորապէս:
ՍԿԶԲՆԱՊՏՈՒՂՔ, գ. Առաջնապտուղք, երախայրիք:
ՍԿԶԲՆԱՍԵՐ, ա. Սկզբնասերեալ:
ՍԿԶԲՆԱՍԵՐԵԱԼ, տե՛ս ՍԿԶԲՆԱՍԵՐ:
ՍԿԶԲՆԱՍՏԵՂԾ, տե՛ս ՆԱԽԱՍՏԵՂԾ:
ՍԿԶԲՆԱՏԻՊ, ա. գ. Նախատիպ:

ՍԿԶԲՆԱՏՊԱԻՈՐՈՒԹԻՒՆ, ՍԿԶԲՆԱՏՊՈՒԹԻՒՆ, գ. Սկզբնատիպ:
ՍԿԶԲՆԱՐԱՐ, ա. Սկզբնապատճառ, նախաշաւիղ:
ՍԿԶԲՆԱԻՈՐ, ա. Սկզբնական, գլխաւոր, նախկին, առաջին:
ՍԿԶԲՆԱԻՈՐԱԳՈՅՆ, ա. Սկզբնագոյն, սկզբնականագոյն, նախկնագոյն:
ՍԿԶԲՆԱԻՈՐԱԿԱՆ, ա. Սկսող:
ՍԿԶԲՆԱԻՈՐԵԼ, նբ. Սկիզբն առնել, սկսանել, սկզբնել:
ՍԿԶԲՆԵԼ, տե՛ս ՍԿԶԲՆԱԻՈՐԵԼ:
ՍԿԶԲՆԵՂԱԳՈՅՆ, ա. Նախագոյակ, սկզբնաւորագոյն, հնագոյն, նախկին, գլխաւոր:
ՍԿԶԲՆԵՂՈՒԹԻՒՆ, գ. Լինելութիւն, ծնունդ:
ՍԿԶԲՈՒՄՆ, գ. 1. Սկսումն, սկիզբն: 2. (յունարէնի նմանակութեամբ) Իշխանութիւն:
ՍԿԻ, տե՛ս ՍԿԻՀ:
ՍԿԻԶԲՆ, գ. 1. Սկսումն: 2. Սկզբնապատճառ, նախապատճառ: 3. Յառաջաբան:
- ՍԿԻԶԲՆ ԱՌՆԵԼ՝ ԱՌՆՈՒԼ՝ ՈՒՆԵԼ, տե՛ս ՍԿՍԱՆԵԼ (իմ):
ՍԿԻՀ, գ. Սկահ, ըմպանակ, բաժակ, նուիրանոց, ճաշակ:
ՍԿԻՍՄՆ, տե՛ս ՍԿԻԶԲՆ:
ՍԿՈՒՆԴ, գ. Շուն, շնիկ:
ՍԿՈՒՏԵՂ, ՍԿՈՒՏՂ, գ. Պնակ, սկաւառակ,ափսէ, մաղզմայ:
ՍԿՍԱՆԵԼ(իմ), հբ. Ձեռն ի գործ առնել՝ արկանել, սկսնուլ, սկզբնել, սկզբնաւորել:
ՍԿՍԱՆՈՒԼ, տե՛ս ՍԿՍԱՆԵԼ (իմ):
ՍԿՍՄՆԱԳՈՅՆ, տե՛ս ՍԿԶԲՆԱԳՈՅՆ:
ՍԿՍՄՆԱԿԱՆ, տե՛ս ՍԿԶԲՆԱԿԱՆ:
ՍԿՍՄՆԱՏԻՊ, տե՛ս ՍԿԶԲՆԱՏԻՊ:
ՍԿՍՆՈՒԼ, տե՛ս ՍԿՍԱՆԵԼ (իմ):
ՍԿՍՈՂ, ա. Սկզբնաւորական:
ՍԿՍՈՒԱԾ, գ. Սկսումն, սկիզբն:
ՍԿՍՈՒՄՆ, գ. Սկիզբն, սկսուած:
ՍՂԱԲԱՐ, մ. Սղակի, առ սակաւ սակաւ:
ՍՂԱԳՈՅՆ, ա. Դոյզն, սակաւագոյն, համառօտագոյն:
ՍՂԱԿԱՆ, տե՛ս ՍՈՒՂ (1):
ՍՂԱԿԻ, տե՛ս ՍՂԱԲԱՐ:
ՍՂԱՊԷՍ, մ. Դուն ուրեք:
ՍՂԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Նուազեցուցանել, տկարացուցանել, կարճել:
ՍՂՈԽ կամ ՍՈՂՈԽ, գ. Սեք, շունչ, հողմ:
ՍՂՈՑ, տե՛ս ՍՂՈՑԱՁՈՒԿՆ:
ՍՂՈՑԱՁՈՒԿՆ, գ. (կենդբ.) Սղոց, բետոն, պրիոնէ:
ՍՄԲԱԿ, գ. Սմբատակ, կճղակ:
ՍՄԲԱԿԱԿՈԽ ԱՌՆԵԼ՝ ԼԻՆԵԼ. Սմբակակոխել, կոխան առնել՝ լինել:
ՍՄԲԱԿԱԿՈԽԵԼ, տե՛ս ՍՄԲԱԿԱԿՈԽ ԱՌՆԵԼ՝ ԼԻՆԵԼ:
ՍՄԲԱՏԱԿ, տե՛ս ՍՄԲԱԿ:
ՍՄԻՆ ԻՐԻ, ՍՄԻՆ ՎԱՍՆ, Վասն այսորիկ:
ՍՆԱԲԱՆՈՒԹԻՒՆ, գ. Ունայնաբանութիւն, դատարկաբանութիւն:
ՍՆԱԿՈՒՇՏ, գ. Քաչ:
ՍՆԱՄԱՀԱԿ, ՍՆԱՄԱՀԻԿ, ա. Սնավաստակ:
ՍՆԱՄԷՋ, ա. Ոսին:
ՍՆԱՆԱԼ, չբ. Ոսնել, դատարկանալ:
ՍՆԱՆԵԼ (իմ), չբ. 1. Բուծանել, կերակրել, դարմանել: 2. Աճել, մեծանալ: 3. Դաստիարակել, վարժել:
ՍՆԱՊԱՐԾ, ա. 1. Սնափառ, ամբարտաւան, հպարտ: 2. Սնափառական, սնապարծիկ:
ՍՆԱՊԱՐԾԵԼ (իմ), տե՛ս ՍՆԱՓԱՌԵԼ:
ՍՆԱՊԱՐԾԻԿ, տե՛ս ՍՆԱՊԱՐԾ (2):
ՍՆԱՊԱՐԾՈՒԹԻՒՆ, գ. Սնափառութիւն:
ՍՆԱՎԱՍՏԱԿ, ա. Ջրաջան, զրավաստակ, սնոտիաջան, ընդունայնավաստակ:
ՍՆԱՎԱՍՏԱԿՈՒԹԻՒՆ, գ. Ջրարուեստութիւն:
ՍՆԱՓԱՌ, ա. 1. Սնապարծ, զրափառ,

ունայնափառ, փառասէր, ամբարհաւաճ: 2. Սնափառական:
ՍՆԱՓԱՌԱԿԱՆ, տե՛ս ՍՆԱՓԱՌ (2):
ՍՆԱՓԱՌԵԼ, չբ. Սնապարծել, ամբարհաւաճել, բարձրամտել, մեծամտել, գոռոզանալ:
ՍՆԱՓԱՌՈՒԹԻՒՆ, գ. Սնապարծութիւն, գրափառութիւն, նանրափառութիւն, փառասիրութիւն:
ՍՆԳՈՅՐ, գ. Շպար:
ՍՆԳՈՒՐԵԼ (իմ), չբ. Շպարել:
ՍՆԴՄԱՅ, գ. Կապ, կապանք:
ՍՆԴՈՅ, տե՛ս ՍՆԴՈՒՍ:
ՍՆԴՈՒԿ, գ. Արկղ:
ՍՆԴՈՒՍ, գ. Դիպակ, կերպաս, սնդր, զառնաւուխտ:
ՍՆԴՐ (աղաւաղուած բառ), տե՛ս ՍԸՆԴՈՒՍ:
ՍՆՆԴԱԿԱՆ, ա. Սնուցիչ, սնուցանողական:
ՍՆՆԴԱԿԻՑ, ա. 1. Համասուն, դայեկորդի: 2. Ընդաբոյս, բնածին, բնական: 3. Սեղանակից:
ՍՆՈՏԵԼ (իմ), չբ. Ընդունայնանալ:
ՍՆՈՏԻ, ա. 1. Սին, ունայն: 2. Ընդունայն, անհաւաստի, չնչին: 3. մ. Ի սնոտիս, ընդ վայր, ի զուր, վայրապար:
– ՍՆՈՏԻՔ, գ. Ունայնութիւն:
– Ի ՍՆՈՏԻՍ, տե՛ս ՍՆՈՏԻ (3):
ՍՆՈՏԻԱԳՈՐԾ, ա. Մոլար:
ՍՆՈՏԻԱՊԱՏԻՐ, ա. Ստայօդ, խաբէական:
ՍՆՈՏԻԱՋԱՆ, ա. Ջրաջան, սնավաստակ:
ՍՆՈՒԹԻՒՆ, գ. Անպտղութիւն:
ՍՆՈՒՆԴ, գ. 1. Տածումն, բուծումն: 2. Կերակուր (սննդարար նիւթ):
ՍՆՈՒՑԱՆԵԼ, պբ. Դիեցուցանել, պահել, տածել, կերակրել, պարարել, դաստիարակել:
ՍՆՈՒՑԱՆՈՂԱԿԱՆ, ա. Սնուցողական, սնուցող, սնուցիչ:
ՍՆՈՒՑԻՉ, ՍՆՈՒՑՈՂ, տե՛ս ՍՆՈՒՑԱՆՈՂԱԿԱՆ:
ՍՆՈՒՑՈՂԱԿԱՆ, տե՛ս ՍՆՈՒՑԱՆՈՂԱԿԱՆ:
ՍՈԹ, ա. Պինդ, հոծ, կուռ, կարծր, խիտ:
ՍՈԽԱԿ, գ. (կենդբ.) Ծիծառն:
ՍՈՂԱԼ, տե՛ս ՍՈՂԵԼ (իմ):
ՍՈՂԵԼ (իմ), չբ. 1. Սողալ, զեռալ: 2. Սպրդել, սողոսկել, սողմել:
ՍՈՂՄԵԼ (իմ), չբ. Սողել, սողոսկել, սպրդել:
ՍՈՂՆԱԿԱՆ, ա. Սողուն:
ՍՈՂՈԽ, տե՛ս ՍՂՈԽ:
ՍՈՂՈՊՈՒՄՆ, գ. Սողոսկումն, սայթաքումն, գայթումն, անկումն:
ՍՈՂՈՍԿԱՆՔ, տե՛ս ՍՈՂՈՍԿՈՒՄՆ:
ՍՈՂՈՍԿԵԼ[1], նբ. Սպրդել:
ՍՈՂՈՍԿԵԼ[2] (իմ), չբ. 1. Սողել: 2. Սայթաքել, գայթել, անկանել: 3. Սպրդել, միջամուխ լինել:
ՍՈՂՈՍԿՈՒՄՆ, գ. Սողոսկանք:
ՍՈՂՈՍԿՈՒՏ, ա. Սայթաք, գայթոտ, դիւրագայթ, սողուսկ:
ՍՈՂՈՒՆ, գ. 1. Ջեռուն, ճճի: 2. ա. Սողնական: 3. Կաղ:
ՍՈՂՈՒՍԿ, տե՛ս ՍՈՂՈՍԿՈՒՏ:
ՍՈՃԻ, գ. (բսբ.) Շոճ, չոճի, պիտուս, ստոբովենի, ստրոբողոն:
ՍՈՅԶ, գ. 1. Ընկղմումն: 2. Խորք, սոր, ծակ, ծերպ, որջ:
ՍՈՅՆ, դ. Այս:
– ՋՍՈՅՆ ՀԵՏԱՅՆ, մ. Այսուհետև, յայսմ հետէ:
– ՍՈՅՆ ԳՈՒՆԱԿԻ, տե՛ս ՍՈՅՆՊԷՍ:
ՍՈՅՆՊԷՍ, մ. Այսպէս, սոյնպիսաբար, սոյն գունակի:
ՍՈՅՆՊԻՍԱԲԱՐ, տե՛ս ՍՈՅՆՊԷՍ:
ՍՈՅՆ ՕՐԻՆ, մ. Այսօր:
ՍՈՅՆՕՐԻՆԱԿ, մ. ա. Սոյնպէս, այսպիսի:
ՍՈՆՔ, ա. (քեր.) Եռավանկ (բառ):
ՍՈՆՔԱՆԱԼ, չբ. Ստուարանալ, գիրանալ, թանձրանալ, թաւանալ, ուռնուլ, փքանալ:
ՍՈՍԻՆՁ, գ. Սինձ:
ՍՈՍԿ, ա. 1. Միայն, լոկ, սատակ: 2.

Պարզ, անշուք, թեթև, հասարակ: 3. Թափուր, անմասն, ունայն, ընդունայն, անպտուղ: 4. Հետևակ: 5. (քեր.) Սուղ, նուրբ, բարակ: 6. մ. Պարզաբար, սոսկապէս, միայն, ևեթ:
ՍՈՍԿԱԲԱՐ, մ. Պարզաբար:
ՍՈՍԿԱԳՈՅՆ, ա. Պարզագոյն:
ՍՈՍԿԱԼ, չբ. Դողալ, սարսել, սոսափել, սարսափել, զարհուրել, քստմնել:
ՍՈՍԿԱԼԻ, ա. Սոսկալոր, զարհուրելի, սարսափելի, ահալոր, ահագին, քստմնելի:
ՍՈՍԿԱԿԱՆ, ա. 1. Անշուք, նուաստ, գեղջուկ, ռամիկ: 2. Հետևակ:
ՍՈՍԿԱՊԷՍ, մ. Սոսկաբար, սոսկ, լոկ, պարզապէս, վայրապար:
ՍՈՍԿԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Զարհուրեցուցանել:
ՍՈՍԿԱԻՈՐ, տե՛ս ՍՈՍԿԱԼԻ:
ՍՈՍԿՈՒՄՆ, գ. Դողումն, սարսափումն, քստմնումն, ահ, արհաւիրք:
ՍՈՍՈՐԴ, գ. (կզմխս.) Կողկողիթ:
ՍՈՎ, գ. 1. Քաղց: 2. Անսուաղութիւն:
ՍՈՎԱԲԵԿ, ա. Անսուաղ, սովեալ, սովալլուկ:
ՍՈՎԱԼԼՈՒԿ, ա. Սովաբեկ, սովամահ:
ՍՈՎԱԾԱԲԱՐ, մ. Անյագաբար:
ՍՈՎԱԿԱՆ, ա. Քաղցեալ:
ՍՈՎԱՄԱՀ, ա. մ. Սովալլուկ, սովաբեկ, սովեալ, նքողեալ:
- ՍՈՎԱՄԱՀ ԼԻՆԵԼ, տե՛ս ՍՈՎԱՄԱՀԵԼ (իմ):
ՍՈՎԱՄԱՀԵԼ (իմ), չբ. Սովամահ լինել, սովել:
ՍՈՎԱՆԱԼ, տե՛ս ՍՈՎԵԼ (իմ):
ՍՈՎԱՌՈՒԹԻՒՆ, գ. Անսուաղութիւն, անյագութիւն, ընչաքաղցութիւն:
ՍՈՎԱՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Քաղցեցուցանել:
ՍՈՎԵԼ (իմ), չբ. Սովանալ, քաղցնուլ, քաղցենալ, նքողել:
ՍՈՎՈՐ, ա. 1. Ծանօթ: 2. Սովորական, սովորակ, ընդելական, հասարակ: 3. գ. Սովորութիւն:
ՍՈՎՈՐԱԲԱՐ, մ. Սովորակի:
ՍՈՎՈՐԱԿ, տե՛ս ՍՈՎՈՐԱԿԱՆ:
ՍՈՎՈՐԱԿԱՆ, ա. 1. տե՛ս ՍՈՎՈՐ (2): 2. Ծանօթ:
ՍՈՎՈՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ, գ. Սովորութիւն:
ՍՈՎՈՐԱԿԻ, մ. 1. տե՛ս ՍՈՎՈՐԱԲԱՐ: 2. ա. Սովորական, սովոր:
ՍՈՎՈՐԵԼ, չբ. հբ. Բնաւորել, վարժել, ընտանենալ, ուսանել:
ՍՈՎՈՐԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Ունակացուցանել, ընտելացուցանել, կրթել, վարժել, վարժեցուցանել:
ՍՈՎՈՐՈՅԹ, գ. Սովորութիւն:
ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆ, գ. Սովորոյթ, բնութիւն, կարգ, աւանդութիւն, քաղաքավարութիւն:
ՍՈՐ, գ. Ծակ, ծերպ, խոռոչ, սոյզ, բոյն, որջ:
ՍՈՐԱԿԱԼ, գ. Ախոռապետ:
ՍՈՐԱՄՈՒՏ, ա. Ծակամուտ, անձաւամուտ:
ՍՈՐԵԼ[1], չբ. Հոսել, ծորել, կաթել, սորսորել, թորթորել:
- ՍՈՐԵԼ ԱՉԱՑ. Վատել, ծիւրել:
ՍՈՐԵԼ[2], չբ. Ծակամուտ լինել, ծակախիթ լինել:
ՍՈՐԵՑՈՒՑԱՆԵԼ, պբ. Ծորեցուցանել, ծիւրեցուցանել:
ՍՈՐՍՈՐ, տե՛ս ՍՈՐ:
ՍՈՐՍՈՐԵԼ[1], չբ. 1. Սորել, հոսել, թորթորել, հոսհոսել: 2. Ցրուել:
ՍՈՐՍՈՐԵԼ[2], չբ. Հնձել (մանգաղով):
ՍՈՒԳ, գ. Տխրութիւն, կոծ, ողբումն, լալիւն, աշխար:,
-ՍՈՒԳ ԱՌՆՈՒԼ՝ ՈՒՆԵԼ, տե՛ս ՍԳԱԼ:
ՍՈՒԴԱՐ, գ. 1. Վարշամակ, թաշկինակ: 2. Գլխադիր, գլխաշուք:
ՍՈՒԶԱՆԵԼ, ՍՈՒԶԵԼ, նբ. 1. Ընկլուզանել, ընկղմել, խորասուզել: 2. փխբ. Ծածկել, թաքուցանել, թաղել, անհետ առնել:
ՍՈՒԻՆ, գ. Տէգ, նիզակատէգ:

ՍՈՒԻՆԱՒՈՐ, ա. Տիգաւոր, սունաւոր:
ՍՈՒԼԵԼ, նբ. չբ. Շչել, խորդալ, սուղել:
ՍՈՒԼՈՒՄՆ, գ. Շչիւն, չչումն, չռինչ, չաչիւն:
ՍՈՒՂ, ա. 1. Սղական, նուազ, սակաւ, դուզնաքեայ, փոքրիկ: 2. Կարճ, համառօտ, ամփոփ: 3. Նուրբ, բարակ: 4. (քեր.) Աղօտ:
- ՍՈՒՂ ԻՆՁ, ՍՈՒՂ ԻՄՆ, մ. Փոքր ինչ, սակաւ մի, խուն մի, կաթ մի:
ՍՈՒՂԱԿԱՆ, ա. Սուղ, նուրբ:
ՍՈՒՂԵԼ, տե՛ս ՍՈՒԼԵԼ:
ՍՈՒՂ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ՍԱԿԱՒԱ-ՊԵՏՈՒԹԻՒՆ:
ՍՈՒՆԱՒՈՐ, տե՛ս ՍՈՒԻՆԱՒՈՐ:
ՍՈՒՆԻ, տե՛ս ՍՈՒԻՆ:
ՍՈՒՍԵՐ, գ. Սուր, թուր, խարբ:
ՍՈՒՍԵՐԱԿԱՑ, տե՛ս ՍՈՒՍԵՐԱԿԻՐ:
ՍՈՒՍԵՐԱԿԻՐ, ա. Սուսերաւոր, սուսերակաց, զինակիր:
ՍՈՒՍԵՐԱԿՈՒՌ, ա. Սուսերաւոր:
ՍՈՒՍԵՐԱՁԻԳ, ա. Սուսերամերկ, սուսերաձիգ:
ՍՈՒՍԵՐԱՄԵՐԿ, ա. Սուսերաձիգ, սուսերաւոր:
ՍՈՒՍԵՐԱՒՈՐ, ա. Սուսերակիր, սուսերաձիգ, սուսերամերկ:
ՍՈՒՏ, ա. 1. Կեղծ, մոլար, անիրաւ, խարդախ, նենգաւոր, խաբեբայ, անհաւատարիմ, սնոտի: 2. գ. Ստութիւն: 3. մ. Ստութեամբ, ի զուր, ստաբար:
- ՍՈՒՏ ԱՌՆԵԼ. Ի սուտ հանել, ստացուցանել:
- Ի ՍՈՒՏ ՀԱՆԵԼ, տե՛ս ՍՈՒՏ ԱՌՆԵԼ:
ՍՈՒՏԱԿ[1], ա. Ստախօս:
ՍՈՒՏԱԿ[2], գ. (հնք.) 1. Կարկեհան, կայծ: 2. Մեղեսիկ:
ՍՈՒՏԱԿԱՍՊԱՍ, ա. Քծնի, շողոքորթ, կակղաբան, մարդելոյզ, մարդահաճոյ, կեղծաւոր, հրապուրիչ, պատրող:
- ՍՈՒՏԱԿԱՍՊԱՍ ԼԻՆԵԼ. Կեղծաւորել:
ՍՈՒՏԱԿԱՍՊԱՍՈՒ, տե՛ս ՍՈՒՏԱԿԱ-ՍՊԱՍ:
ՍՈՒՏԱԿԱՍՊԱՍՈՒԹԻՒՆ, գ. Քծնութիւն, շողոքորթութիւն, մարդելուզութիւն, մարդահաճութիւն, կեղծաւորութիւն:
ՍՈՒՏԱԿՆ, տե՛ս ՍՈՒՏԱԿ[2]:
ՍՈՒՏԱՆՈՒՆ, ա. Մոլարանուն, ստանուն:
ՍՈՒՏԱՊԱՏԻՐ, տե՛ս ՍՏԱՊԱՏԻՐ:
ՍՈՒՏԵՐԴՄՆՈՒԹԻՒՆ, տե՛ս ՍՏԵՐԴԸՄ-ՆՈՒԹԻՒՆ:
ՍՈՒՏԽՕՍՈՒԹԻՒՆ, տե՛ս ՍՏԱԽՕ-ՍՈՒԹԻՒՆ:
ՍՈՒՏՄՈՒՏ, ա. Սափասուտ, ստապաճոյճ:
ՍՈՒՐ[1], գ. 1. Թուր, դաշոյն, նրան: 2. Դանակ, կտրոց, գմելին: 3. Սրածութիւն, ժանտախտ:
- Ի ՍՈՒՐ ՍՈՒՍԵՐԻ. Սրով սուսերի:
- ՍՐՈՎ ՍՈՒՍԵՐԻ, տե՛ս Ի ՍՈՒՐ ՍՈՒ-ՍԵՐԻ:
- ԸՆԴ ՍՈՒՐ ՀԱՆԵԼ. Ընդաթուր հարկանել:
ՍՈՒՐ[2], ա. 1. Սայրասուր, հատու: 2. Բարակ, նուրբ: 3. Արագ, արագընթաց, արագալուր, արագատես, արագամիտ:
ՍՈՒՐԱԼ, չբ. Սրանալ, սլանալ, վազս առնուլ, յարձակել, դիմել:
ՍՈՒՐԱԿՆ, տե՛ս ՍՐԱԿՆ:
ՍՈՒՐԱԿՈՒԽ, տե՛ս ՍՐԱԿՈՒԽ:
ՍՈՒՐԲ, ա. 1. Մաքուր, անարատ, յստակ: 2. Նուիրական, աստուածային, սրբազան: 3. Վեհ, վսամ, արգոյ, ընտրեալ: 4. Ողջախոհ, պարկեշտ, նազելի, արդար, անմեղ: 5. մ. Սրբարար, սրբութեամբ:
ՍՈՒՐՀԱԼ, տե՛ս ՍՈՒՐԱԼ:
ՍՈՒՐՀԱՆԴԱԿ, գ. ա. Պնդադեսպան, կարապետ:
ՍՈՓԵՍՏ, ՍՈՓԵՍՏԷՍ, ՍՈՓԵՍՏՈՍ, ա. Իմաստակ, ուսումնասէր, բանագէտ, հռետոր, գիտնաւոր:
ՍՊԱՀ, տե՛ս ՍՊԱՅ:
ՍՊԱՅ, գ. 1. Գունդ, զօր, բանակ: 2. Այրուձի, հեծելազօր, հեծելագունդ: 3. Զօրական:
ՍՊԱՅԱԶՕՐ, գ. Գունդ, զօր:

ՍՊԱՅԱԿՈՅՏ, ա. Ազատագունդ, բազմախումբ:
ՍՊԱՅԱՊԵՏ, գ. Սպարապետ, զօրապետ:
ՍՊԱՆԱՆԵԼ, նբ. Զենուլ, խողխողել, գլխատել, փողոտել, մեռուցանել, սատակել, զոհել:
ՍՊԱՆԴ, գ. Սպանումն, զենումն, կոտորած:
ՍՊԱՆԴԱԳՈՐԾԵԼ, նբ. Զենուլ (զոհի անասուններ մորթել):
ՍՊԱՆԴԱՆՈՑ, գ. Մսավաճառանոց, մակեղոն:
ՍՊԱՆԴԱՐԱՆ, գ. Զոհարան, զենարան:
ՍՊԱՆԻՉ, ՍՊԱՆՈՂ, ա. Մարդասպան:
ՍՊԱՆՈՂԱԿԱՆ, ա. Սպանող, մահաբեր, սատակչական:
ՍՊԱՆՈՂՈՒԹԻՒՆ, գ. Սպանութիւն, մարդասպանութիւն, արիւնհեղութիւն:
ՍՊԱՆՈՒԹԻՒՆ, գ. Մարդասպանութիւն, սպանողութիւն:
ՍՊԱՆՈՒՄՆ, գ. Սպանութիւն, կոտորումն, զենումն, սպանդ:
ՍՊԱՌ, գ. Սպառումն, սպառուած, լրումն, եզր, վերջ, աւարտ, վախճան, կատարած:
ՍՊԱՌԱԶԷՆ, ա. գ. 1. Վառեալ: 2. Սպառազինութիւն: 3. Սպառազինական:
ՍՊԱՌԱԶԻՆԱԿԱՆ, ա. 1. տե՛ս ՍՊԱՌԱԶԷՆ (3): 2. Վառեալ, զինուորական: 3. Ասպարաւոր:
ՍՊԱՌԱԶԻՆԵԼ, նբ. չբ. Զինել, վառել:
ՍՊԱՌԱԶԻՆՈՒԹԻՒՆ, գ. Բազմազինութիւն, վառուած:
ՍՊԱՌԵԼ, նբ. 1. Ծախել, վատնել, մաշել: 2. Սատակել:
ՍՊԱՌԻՉ, ա. Ծախիչ:
ՍՊԱՌՆԱԼ, նբ. չբ. Ահ արկանել (խօսքով), պատուհասել, սաստել, խրոխտալ:
ՍՊԱՌՆԱԼԻՑ, ա. Սպառնական, ահարկու, խրոխտ:
ՍՊԱՌՆԱԼԻՔ, գ. Սպառնումն, սպառնութիւն, խրոխտումն, սաստ, սաստկութիւն, ահարկութիւն:
ՍՊԱՌՆԱԿԱՆ, ա. Սպառնալից:
ՍՊԱՌՆՈՒԹԻՒՆ, ՍՊԱՌՆՈՒՄՆ, տե՛ս ՍՊԱՌՆԱԼԻՔ:
ՍՊԱՌՈՒԱԾ, ՍՊԱՌՈՒՄՆ, տե՛ս ՍՊԱՌ:
ՍՊԱՌՍՊՈՒՌ, Ի ՍՊԱՌՍՊՈՒՌ, ՍՊԱՌ Ի ՍՊՈՒՌ, Ի ՍՊԱՌ Ի ՍՊՈՒՌ, մ. ա. Ամբողջապէս, բոլորովին, գլխովին, ամենևին:
ՍՊԱՍ, գ. 1. Պաշտօն, սպասաւորութիւն, ծառայութիւն: 2. Կահ, կարասի, անօթ, նուիրանոց, բաժակ, հանդերձանք: 3. Զարդ, զարդարանք: 4. Սեղան, կերակուր:
– ՍՊԱՍ ՈՒՆԵԼ՝ ՏԱՆԵԼ, Ի ՍՊԱՍՈՒ ԿԱԼ. 1. Սպասաւորել, ծառայել, պաշտել: 2. Հոգալ, փոյթ առնել, խնամ տանել:
ՍՊԱՍԱԼԱՐ, գ. ա. Զօրապետ, զօրագլուխ:
ՍՊԱՍԱԿԱԼ, ա. Սպասարար, սպասաւոր:
ՍՊԱՍԱՀԱՐԿԵԼ (իմ), չբ. Սպասաւորել, ծառայել, արբանեկել:
ՍՊԱՍԱՀԱՐԿՈՒԹԻՒՆ, գ. Արբանեկութիւն, սպասաւորութիւն, սպաս, ծառայութիւն, պաշտօն:
ՍՊԱՍԱՏՈՒՆ, տե՛ս ՍԱՐԿԱՒԱԳԱՆՈՑ (2):
ՍՊԱՍԱՐԱՐ, ա. Սպասակալ, պաշտօնեայ, կամակատար:
ՍՊԱՍԱՒՈՐ, գ. 1. Արբանեակ, ծառայ: 2. Գործակալ, մատակարար, պաշտօնեայ (արքունի կամ եկեղեցական):
ՍՊԱՍԱՒՈՐԱԲԱՐ, մ. Սպասաւորապէս:
ՍՊԱՍԱՒՈՐԱԿ, ա. գ. 1. Սպասաւոր, արբանեակ, զինակիր: 2. Սպասաւորական:
ՍՊԱՍԱՒՈՐԱԿԱՆ, ա. Սպասաւորակ, հարկաւոր, հարկաւորական:
ՍՊԱՍԱՒՈՐԱԿԻՑ, տե՛ս ՊԱՇՏՕՆԱԿԻՑ:
ՍՊԱՍԱՒՈՐԱՊԷՍ, տե՛ս ՍՊԱՍԱՒՈՐԱԲԱՐ:
ՍՊԱՍԱՒՈՐԵԼ, նբ. չբ. 1. Սպաս տանել, սպասահարկել, պաշտել, ծառայել, արբանեկել: 2. Հոգալ, մատակարարել,

